ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ ● 1966

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 ԴԵԿՏԵՄԲԵՐ · 1966
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ - ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

# Բովանդակություն

# Содержание









Գ. ԱՍԱՏՐՅԱՆ

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀՈՒՄԱՆԻԶՄԸ

Մարքսիզմի պատմական ասպարեզ գալուց անցել է ավելի քան մեկ դար: Պատմական այդ ժամանակամիջոցում ծնվեցին հասարակության զարգացման պրոցեսի գիտական բացատրության հավակնություն ունեցող բուրժուական ու ռեֆորմիստական բազմաթիվ տեսություններ: Չդիմանալով իրականության դատին, ժամանակի քննությանը՝ նրանք սնանկացան ու դեն շպրտվեցին:

Հակառակ դրան, այդ ժամանակաշրջանը հանդիսացավ մարքսիզմի հաղթարշավի, հին աշխարհի դեմ նրա գրոհի նախապատրաստման ու բուն գրոհի, կոմունիզմի համաշխարհային-պատմական հաղթանակների ժամանակաշրջան: Մարքսիզմի գաղափարների բարերար ազդեցության տակ իրենց ազատությունը նվաճեցին երկրագնդի շուրջ մեկ միլիարդ մարդ: Այդ ուսմունքի հաղթական դրոշի տակ են այսօր պատերազմի ու ռեակցիայի, կապիտալի վարձկան ուժերի դեմ իրենց ազատագրության, մարդկային վեհ իդեալների իրականացման համար պայքարում հարյուր միլիոնավոր աշխատավորներ աշխարհի բոլոր կողմերում:

Մարքսիզմի տարած համաշխարհային-պատմական հաղթանակների ճշմարիտ աղբյուրը նրա խոր մարդասիրական ոգին է: Դա է այն բանի գլխավոր պատճառը, որ բուրժուազիայի գաղափարախոսները, մարքսիզմի ամենակատաղի թշնամիները, կոմունիզմի դեմ պայքարելիս, հարվածի սուր ծայրն ուղղում են մարքսիստական ուսմունքի հենց այդ կողմի դեմ: Սակայն ի վիճակի չլինելով մարքսիզմի վեհ ու մարդասիրությամբ տոգորված գաղափարներին հակադրելու որևէ դրական բան՝ նրանք շատ հաճախ ընտրում են մարքսիզմի մերկ բացասման, նրա «հերքման» ճանապարհը, ջանք են թափում ներքին հակասություններ գտնել նրա մեջ, այն արժեքազրկելու մասսաների աչքում:

Ժամանակակից ռևիզիոնիստները արհեստականորեն իրարից անջատում ու միմյանց են հակադրում մարքսիստական կուռ ու միասնական աշխարհայացքի տարբեր կողմերը, այդ ուսմունքն իր զարգացման ու պատմական էվոլյուցիայի տարբեր էտապներում: Նրանք պնդում են, թե իսկական հումանիստ Մարքսը երիտասարդ Մարքսն է, երբ նա դեռևս գտնվում էր Ֆոյերբախի փիլիսոփայության և մասնավորապես նրա հումանիզմի ուժեղ ազդեցության տակ: Այն բանից հետո, գտնում են նրանք, երբ Մարքսը հայտնագոր-

ծեց պատմության մատերիալիստական ըմբռնումը, հանգեց դասակարգային պայքարի, սոցիալիստական հեղափոխության ու պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարին՝ հրաժարվեց իր դավանած հումանիզմից և դավաճանեց նրան, դադարեց համամարդկային հումանիզմի գաղափարախոսը լինելուց, դարձավ բռնության քարոզիչ, հեղափոխական:

Ասվածից պարզ է, որ նման տիպի «տեսաբանների» համար դասակարգային պայքարի, սոցիալիստական հեղափոխության ու պրոլետարիատի դիկտատուրայի հասկացությունները ոչ միայն չեն կապվում հումանիզմի հետ, այլև ուղղակիորեն հակադրվում են իրար՝ որպես միմյանց խորթ ու բացառող էություններ:

Մարքսիզմի գաղափարական հակառակորդների մի մասն էլ գիտակցելով նրա դեմ գաղափարական հաջող պայքար մղելու իր անկարողությունը, նրա խոր մարդասիրական բնությունը ժխտելու ակնհայտ կեղծությունը՝ քննադատության կրակն ուղղում է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման կենդանի պրակտիկայի դեմ, կոմունիստներին մեղադրում տեսությունից կատարած շեղումների, տեսության ու պրակտիկայի միջև խզում թույլ տալու մեջ: Եթե մարքսիստական տեսությունն այսպես թե այնպես մարդասիրական է, ապա կոմունիստական հասարակության կառուցման պրակտիկան, կոմունիստների կողմից կիրառվող միջոցները և հատկապես բռնության պաշտպանությունը նրանց կողմից հակամարդասիրական է ու մերժման արժանի: Սրան է հանգում ժամանակակից պայմաններում կոմունիզմի դեմ նրա գաղափարական հակառակորդների կողմից ներկայացվող մյուս ամենատարածված մեղադրանքը: Թեև կոմունիզմի հասցեին այս մեղադրանքը նոր չէ, սակայն այն պատճառով է դա արմատացել բուրժուական գիտակցության մեջ, այն պատճառով է նախապաշարմունքի ուժ ստացել, որ շատ հաճախ կոմունիզմի դեմ այդ մեղադրանքը ներկայացնում են ոչ միայն կապիտալիզմի մոլի պաշտպանները (դրանում անբնական ոչինչ չկա), այլև նույնիսկ այնպիսի մարդիկ, որոնք որոշակի համակրանք են տածում մարքսիստական ուսմունքի ու կոմունիզմի նկատմամբ:

Այս տեսակետից հատկանշական է հետևյալ փաստը: 1958 թվականին «Հնդկաստանի ազգային կոնգրես» կառավարող կուսակցության օրգան «էկոնոմիկ ռևյու» ամսագրում լույս տեսած «Հիմնական մոտեցում» հոդվածում [1] այդ կուսակցության այն ժամանակվա լիդեր, հանգուցյալ Ներուն չթաքցնելով իր բացահայտ համակրանքը կոմունիստական գաղափարախոսության նկատմամբ և չժխտելով նոր հասարակարգի կառուցման ասպարեզում Սովետական Միությունում ձեռք բերված հսկայական նվաճումները, կոմունիզմին մեղադրում է այն բանում, որ վերջինս իբր մարդու մեջ անտեսում է հիմնականը, խախտում նրա վարքագծի նորմերը, արժեքազրկում նրան: Իսկ կոմունիզմի չարաբաստիկ զուգակցումը բռնության հետ, գրում է Ներուն, խրախուսում է մարդու մեջ ինչ-որ վնասակար տենդենցի զարգացումը: Ներուին շփոթության մեջ է գցում, ամենից առաջ, բռնության ընդունումը մարքսիզմի կողմից, այն, որ «կոմունիզմին ներհատուկ գտնվեց բռնությանը դիմելու անհրաժեշտությունը» («Проблемы мира и социализма», № 4, 1958,

[1] Հոդվածը թարգմանաբար տպագրվել է «Проблемы мира и социализма» ամսագրի 1958 թվականի 4-րդ համարում:



էջ 40), որի հետևանքով իբր «նրա կողմից աշխարհի համար հռչակված գաղափարը դարձավ միանգամայն արատավոր. միջոցներն աղավաղեցին նպատակը» (նույն տեղը):

Ելնելով վերոհիշյալից և գիտակցելով կոմունիստական հումանիզմի ու հեղափոխական բռնության փոխհարաբերության հարցի հրատապությունը՝ հարկ ենք համարում համառոտակի կանգ առնել բռնության սոցիալական էության և նոր հասարակարգի կառուցման պրակտիկայում նրա դերի ու կիրառման սահմանների հարցի վրա:

Հակառակ բռնության իդեալիստական ու մետաֆիզիկական կոնցեպցիաների, որոնք հասարակության մի մասի կողմից մյուսի նկատմամբ կիրառվող բռնությունը կտրելով տնտեսական հիմքից, այն օժտում են միստիկական ուժով և դարձնում պատմության միակ շարժիչ սկզբունքը, մարքսիզմը ամենևին չժխտելով բռնության դերը պատմության մեջ, տալիս է նրա սոցիալական էության ու դերի հետևողական գիտական բացատրությունը:

Մարքսիզմի տեսակետից բռնությունը ոչ միայն տնտեսական դրության պատճառը չէ, այլև ինքը, վերջին հաշվով, տնտեսական պոտենցիա է, որի արմատները խոր թաղված են սոցիալ-տնտեսական դրության, տնտեսական պայմանների մեջ, որոնց նա պարտական է ոչ միայն իր գոյությամբ, այլև ծագմամբ:

Հայտնի է, թե մարքսիզմի հիմնադիրները ինչպիսի սկզբունքային պայքար էին մղում պատմության մեջ բռնության դերի աղավաղումների, նրա ֆետիշացման ամեն տեսակ փորձերի դեմ: Էնգելսն անխնա քննադատում էր մետաֆիզիկ Դյուրինգին այն բանի համար, որ նա «անմիջական քաղաքական բռնությունը» ամենուրեք համարում էր պատմության շարժիչ սկզբունքը՝ տնտեսական փաստերին, տնտեսական դրությանը, տնտեսական մոմենտին հատկացնելով երկրորդական տեղ՝ «տնտեսական վիճակի վճռական պատճառը համարելով քաղաքական կարգը» (Անտի-Դյուրինգ, 1952, էջ 202):

Եթե Դյուրինգի համար բռնությունը տնտեսական դրությունից կտրված այն բացարձակ ու միահեծան ուժն է, որը մեկին դարձնում է մյուսի ստրուկը, ապա Էնգելսի համար այն մի ածանցյալ, կրավորական էություն է, որն ամուր կերպով հենվում է տնտեսական դրության վրա և իր ուժը քաղում նրանից: Ռոբինզոնը սուսերը ձեռքին ստրկացնում է Ուրբաթին, հավաստում է Դյուրինգը, ցանկանալով ընդգծել բռնության դերը ստրկության առաջացման գործում: Սակայն նա մոռանում է, որ սուսերն ինքը իբրև բռնության գործադրման, մարդկանց հնազանդեցման միջոց, տնտեսական զարգացման որոշակի աստիճանի արդյունք է, և որ, հետևաբար, բռնության բուն հնարավորությունը պայմանավորված է տնտեսական զարգացմամբ:

Սակայն բռնության պայմանավորված լինելը տնտեսական դրությամբ դրանով չի սահմանափակվում: Հասարակության մի մասի կողմից մյուսի նկատմամբ բռնության կիրառման, մարդկանց մի մասի կողմից մյուսի ստրկացման համար անհրաժեշտ են զուտ տնտեսական բնույթի ուրիշ երկու նախադրյալներ ևս: Ստրկական աշխատանքի շահագործումից օգուտ քաղելու և, հետևաբար, ստրկության բուն գոյության համար անհրաժեշտ են նախ գործիքներ ու նյութեր ստրուկի աշխատանքի և երկրորդ՝ կենսամիջոցներ ստրուկի ապրուստի համար: Դա նշանակում է, որ մարդկանց հնազանդեցնելու մի-

ջոցներից բացի ստրկության գոյությունն ենթադրում է հասարակության նյութական արտադրաուժերի զարգացման այնպիսի աստիճան, որը մարդու աշխատանքն այնքան արդյունավետ դարձնի, որ նա արտադրի ավելի շատ կենսամիջոցներ, քան անհրաժեշտ է իր գոյության պահպանման համար, անհրաժեշտ է, այսպես կոչված, հավելյալ արդյունքի առկայություն։ Բռնությունը լոկ կամքի գործողություն չէ, նրա գոյությունը ենթադրում է միանգամայն իրական տնտեսական նախադրյալներ։

Բռնության ու տնտեսական դրության կապը միակողմանի ու սոսկ կրավորական չէ։ Իրականում դրանք գտնվում են ներքին փոխադարձ շփումների, դիալեկտիկական սերտ կապի մեջ։ Թեև բռնությունը տնտեսական վիճակի արդյունք և դրանով պայմանավորված ուժ լինելով հանդերձ, զարգացման որոշ աստիճանում ձեռք է բերում որոշակի ինքնուրույնություն, մտնում իր իրավունքների մեջ և, ինչպես Էնգելսն է արտահայտվում, ծառայի դրությունից անցնում իշխողի դրության՝ այնուամենայնիվ նա պատմության մեջ արգասավոր ու ստեղծագործական դեր է կատարում միայն այն ժամանակ և այն չափով, երբ և ինչ չափով նա իր գործողությունների մեջ ելնում է տնտեսական զարգացման, հասարակության նյութական արտադրության պահանջներից և ուղղվում է դրանց բավարարմանը։ Այս դեպքում մենք գործ ունենք բռնության այն տեսակի հետ, որը հայտնի է հեղափոխական բռնություն անունով, որը, իհարկե, հանդիսանում է նորի, առաջավորի պատմական ասպարեզ գալու հուժկու գործոնը և, Մարքսի պատկերավոր արտահայտությամբ, նորի ու առաջավորի ծննդյան գործում խաղում է մանկաբարձուհու արգասավոր դեր։ Նման բռնությունն այն զենքն է, որով պատմական շարժումը հարթում է իր ուղին և փշրում բոլոր մեռած ու քարացած հասարակական ձևերը։

Իսկ երբ բռնությունը խզում է իր կապերը տնտեսական դրության հետ, հաշվի չի առնում նրա պահանջները և շարժվում է տնտեսական զարգացման, հասարակության նյութական արտադրապահանջներին հակառակ ուղղությամբ, ապա դրանով իսկ նա ոտք է դնում ինքնաոչնչացման ճանապարհը։ Պատմական առաջընթացի ակտիվ ու գործուն լծակ լինելուց այն վեր է ածվում հետադիմական ուժի, որը ձգտում է զարգացման պրոցեսը շեղել իր բնապատմական հունից, այն տանել հակապատմական ու հակաբնական ճանապարհով։ Եվ քանի որ այն ուղղված է պատմական զարգացման իմաննենտ օրենքների, նրա իրական ընթացքի ու ներքին տրամաբանության, իրականության ծավալման բնահուն ընթացքի դեմ, ուստի, այդ ուղղությամբ կիրառվող ամեն մի բռնի ակտ, նման ամեն մի բռնություն, չնայած իր հնարավոր անցողիկ հաջողություններին ու հաղթանակներին, վերջին հաշվով, կանգնում է պատմության դատաստանի առաջ, պարտություն կրում տնտեսական հիմքի ճնշման տակ ու դեն շպրտվում նրա կողմից։

Այսպիսով, անհրաժեշտ է տարբերել սոցիալական բռնության երկու տիպ՝ 1) պահպանողական, հետադիմական բռնություն և 2) առաջադիմական, հեղափոխական բռնություն։ Մարքսիզմը կտրականապես մերժում է բռնության հետադիմական ձևերը և ամեն կերպ պաշտպանում ու խրախուսում հեղափոխական բռնությունը։

Սոցիալիստական հեղափոխությունը, թեև իր մեջ պարունակում է բռնության մոմենտ, հանդիսանում է ամենամարդասիրական ակտը, քանի որ միայն նրա միջոցով են լուծվում մարդկային ամենաարմատական պրոբլեմները, մի-



այն նրա միջոցով են աշխատավորներն ազատագրվում կապիտալիզմի ու մասնավոր սեփականության սարսափներից, միայն հեղափոխությունն է նրանց դարձնում իրենց սեփական ճակատագրի ու մարդկային արժանապատվության տերը։ Պրոլետարիատի հեղափոխական բռնությունը և նրա բարձրագույն արտահայտությունը հանդիսացող սոցիալիստական հեղափոխությունն աշխատավորների իսկական ազատության ձգտումների արտահայտությունն է, իրենց աշխատանքով ստեղծված բարիքներն իրենց ձեռքը վերցնելու՝ նրանց օրինական իրավունքի իրականացման միջոց։ Մարդկության հումանիստական իդեալներն ու սոցիալիստական հեղափոխությունը ոչ միայն միմյանց չեն հակասում, այլև վերջինս այն միակ գործուն միջոցն է, որն աշխատավորներին բերում է իրական ազատագրություն, ամուր հիմքեր ու երաշխիքներ է ստեղծում մարդկության դարավոր իղձերի իրականացման, իսկական մարդասիրության սկզբունքների հաղթանակի համար։

Մարքսիզմի թշնամիները սիրում են կոմունիստներին ներկայացնել որպես պայքարի բռնի մեթոդների, բռնության սիրահարներ առհասարակ։ Իրոք մարքսիզմն ընդունում է կապիտալիստական կարգը հեղափոխության միջոցով սոցիալիստականի վերափոխելու անխուսափելիությունը, մի հանգամանք, որը հեղափոխական մարքսիստներին տարբերում է ամեն գույնի ու երանգի ռեֆորմիստներից ու օպորտունիստներից։ Սակայն մարդասիրական իդեալների իրականացումը կապելով պրոլետարական հեղափոխության հետ և վերջինս համարելով աշխատավորների ազատագրության միակ իրական միջոցը՝ մարքսիզմը երբեք չի ժխտում հեղափոխության խաղաղ զարգացման հնարավորությունը։ «Սոցիալիզմին անցնելու համար դասակարգային պայքարի սրության առավել կամ նվազ աստիճանը, այդ անցման ժամանակ բռնություն գործադրելը կամ չգործադրելը կախված են ոչ այնքան պրոլետարիատից, որքան աշխատավորների ճնշող մեծամասնության կամքին շահագործողների դիմադրության աստիճանից, հենց իր՝ շահագործողների դասակարգի կողմից բռնություն գործադրելուց» (ՍՄԿԿ XX համագումարի բանաձևը, 1956, էջ 14)։ Ավելին, բռնությունն ու քաղաքացիական պատերազմը հին հասարակության տապալման ու նորին անցնելու ամենից ավելի ցանկալի ձևը չեն։ Սոցիալիստական հեղափոխության խաղաղ զարգացումը ոչ միայն չի հակասում մարքսիզմի ոգուն, այլև բխում է նրա իդեալից։

Ի հակադրություն ձախ աղանդավորականների, որոնք բացարձակացնում ու մինչև երկինք են բարձրացնում հեղափոխական բռնության մի տեսակը՝ պայքարի բռնի ձևերի տակ հասկանալով միայն նրա զինված ձևերը, իսկ հեղափոխական բռնության տակ միայն զինված պայքարը՝ իսկական կոմունիստները ելնում են այն բանից, որ հեղափոխական բռնությունն ունի ոչ թե մեկ, այլ բազմազան ձևեր, որոնց կիրառումը կախված է կոնկրետ իրադրությունից, դասակարգային ուժերի հարաբերակցությունից, տիրապետող դասակարգերի դիմադրության աստիճանից և մի շարք ուրիշ հանգամանքներից։ «Հարկադրանքի ձևը,— գրում է Լենինը,— որոշվում է տվյալ հեղափոխական դասակարգի զարգացման աստիճանով, ապա այնպիսի հատուկ հանգամանքներով, ինչպես օրինակ, երկարատև ռեակցիոն պատերազմի ժառանգությամբ, այնուհետև բուրժուազիայի ու մանր բուրժուազիայի դիմադրության ձևերով» (Երկեր, հ. 27, էջ 322)։ Սոցիալիստական հեղափոխության գլխավոր խնդրի իրականացումը՝ բուրժուազիայի քաղաքական տիրապետության ոչնչացումն

ու իշխանության գրավումը բանվոր դասակարգի կողմից, որոշակի պայմաններում կարող է կատարվել առանց զենքի կիրառման, առանց աշխատավորների զինված ելույթի։ Եթե առաջներում այդպիսի հեղափոխությունը կարող էր լինել միայն երջանիկ բացառություն, ապա ժամանակակից պայմաններում, սոցիալիստական հզոր լագերի առկայության դեպքում, երբ բռնության ծայրահեղ ձևերի կրողները՝ հետադիմական դասակարգերն ամբողջությամբ վերցրած նշանակալիորեն թուլացել են, իսկ առաջադիմական ուժերն աճել, ստեղծվում են բարենպաստ պայմաններ սոցիալիստական հեղափոխության խաղաղ զարգացման համար։

Սակայն ռոմանտիկ ու անիրականալի երազ կլիներ կարծել, թե իբր սոցիալական հակամարտություններով լի ու բռնության վրա խարսխված հասարակարգից՝ կապիտալիզմից, միշտ և բոլոր պայմաններում հնարավոր կլինի աշխատավորներին ազատագրել առանց բռնության, առանց սոցիալական ուժի կիրառման։ Լավ է ասել ականավոր հումանիստ Ռոմեն Ռոլանը, որ «Եթե դուք նույնիսկ ցանկանաք ժխտել դասակարգային պայքարի հասկացությունը, տիրապետող դասակարգը այդ գաղափարը ուժով ձեր վզին կփաթաթի» (Р. Ролан, Соб. соч., т. XI, Гихл, *1957, էջ 490)։* Մինչև այժմ տեղի ունեցած սոցիալիստական հեղափոխությունների փորձը ցույց է տվել, որ շահագործողներն առանց քաղաքացիական պատերազմի, առանց զինված ելույթի կամավոր կերպով չեն հանձնում իշխանությունը, դիմում են աշխատավորների նկատմամբ բռնության ամենաբարբարոսական ու ամենավայրենի միջոցների, երբ ստեղծվում է նրանց տիրապետությունը տապալելու շատ թե քիչ իրական սպառնալիք։ Նման դեպքերում բանվոր դասակարգին ոչինչ չի մնում, քան ուժին ուժով դիմագրավելու, շահագործողների կողմից կիրառվող բռնությանը բռնություն հակադրելու, նրանց դիմադրությունը զենքի ուժով կոտրելու հեռանկարից։

Հայտնի է, որ Լենինը 1917 թվականի ապրիլին, այն ժամանակվա Ռուսաստանում ստեղծված կոնկրետ պայմաններում, միանգամայն հնարավոր էր համարում սոցիալիստական հեղափոխության խաղաղ զարգացումը, խաղաղ ճանապարհով անցումը նոր հասարակարգին։ Բուն Հոկտեմբերյան հեղափոխությունը պատմության մեջ մտավ որպես երբևէ տեղի ունեցած բոլոր մեծ հեղափոխություններից ամենից անարյունը։ Ի տարբերություն 18—19-րդ դարերի բուրժուական հեղափոխությունների, որտեղ բուրժուազիան ամենուրեք իշխանության գլուխ անցավ մասսայական արյունահեղությունների, քաղաքացիական մեծ պատերազմների միջոցով միայն, սոցիալիստական հեղափոխությունը Ռուսաստանում հաղթանակեց հիմնականում խաղաղ ճանապարհով, անհամեմատ քիչ զոհերով։ Այս տեսակետից միանգամայն ուշագրավ է հետևյալ փաստը։ Լենինը տեռորիզմի վերաբերյալ Կաուցկու զառանցությունները մերկացնելու, բանվոր դասակարգի գործի համար դրանց ամբողջ վնասակարությունը ցույց տալու համար բերում է ամերիկյան «Նոր հանրապետություն» ամսագրի խմբագրության հետևյալ վկայությունը. Ֆինլանդիայում, գրում է բուրժուական ամսագիրը, որտեղ այն ժամանակ ապրում էր մոտ 3 միլիոն մարդ, սպիտակ տեռորիստները մի քանի օրվա ընթացքում մահապատժի ենթարկեցին նախկին սոցիալիստական հանրապետության 16700 քաղաքացիների և 70 հազարին էլ բանտերն ու համակենտրոնացման ճամբարները քշեցին։ Այնինչ, շարունակում է ամսագիրը, 1917 թվականի նոյեմ-



բերի 1-ից հետո ընկած մեկ տարվա ժամանակամիջոցում Ռուսաստանում հեղափոխական իշխանությունների կողմից մահվան դատապարտվեցին 3800 մարդուց ոչ ավելի։ Բուրժուական ամսագիրը իր դատողություններն ավարտում է այն ճշմարտության հավաստումով, որ ֆիննական կառավարությունը շատ ավելի տեռորիստական էր, քան ռուսականը (տե՛ս Երկեր, հ. 30, էջ 15—16)։

Հայտնի է նաև այն, որ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո մեր երկրում մշակվեց խաղաղ սոցիալիստական շինարարության նշանավոր պլանը։ Սակայն ռուսական ու միջազգային բուրժուազիան հակահեղափոխություն ու զինված ինտերվենցիա կազմակերպեցին նորաստեղծ սոցիալիստական հանրապետության դեմ, ստիպեցին բանվորներին ու գյուղացիներին զենք վերցնել ու քաղաքացիական պատերազմի մարտերում պաշտպանել հեղափոխության նվաճումները։ Եվրոպայի մանր բուրժուազիան, գրում էր Լենինը 1919 թվականի վերջերին, մեղադրում է մեզ տեռորի, բռնության գործադրման, ինտելիգենցիային ու քաղքենուն կոպիտ կերպով ճնշելու մեջ։ «Իսկ երբ համաշխարհային նավատորմն իրենց ձեռքում ունեցող, մերից հարյուր անգամ ավելի մեծ ռազմական ուժեր իրենց ձեռքում ունեցող տերությունները մեզ վրա են հարձակվում և ստիպում են բոլոր փոքր պետություններին պատերազմել մեր դեմ,— այդ տեռոր չէ՞ր։ Դա իսկական տեռոր էր» (նույն տեղը, էջ 216), որին բոլշևիկները ստիպված էին պատասխանել ոչ այլ կերպ, քան միայն բռնության ու տեռորի միջոցով։ Դա նշանակում է, որ «տեռորիզմի մեղադրանքը, որքան որ դա արդարացի է, ընկնում է ոչ թե մեր, այլ բուրժուազիայի վրա։ Նա՛ մեր վզին փաթաթեց տեռորը։ Եվ մենք առաջին քայլերը կանենք, որ ամենանվազագույն մինիմումով սահմանափակենք այն, հենց որ վերջ տանք տեռորիզմի հիմնական աղբյուրին, համաշխարհային իմպերիալիզմի արշավանքին, ռազմական դավադրություններին և համաշխարհային իմպերիալիզմի ռազմական ճնշմանը մեր երկրի վրա» (նույն տեղը, էջ 217)։

Թեև կապիտալիզմի գաղափարախոսները սիրում են բարբաջել այն մասին, որ բռնությունը անբարոյականություն է և քաղաքակիրթ հասարակությունում այն չպետք է տեղ ունենա՝ սակայն բռնության այդ դատապարտումը նրանց կողմից կրում է բացահայտորեն կեղծ ու երկերեսանի բնույթ։ Լավ է նկատել ականավոր մարքսիստ Ֆ. Մերինգը, որ այն ժամանակ, երբ բուրժուազիայի գաղափարախոսները անարգանքի սյունին են գամում բռնի հեղաշրջումը՝ նրա մեջ տեսնելով հանդուգն կասկած տիրապետող դասակարգի բարի կամքի մեջ, նրա դատարաններն ու ոստիկանությունը դատավճիռ են կայացնում իրենց դասակարգին ազատագրելու խաղաղ ագիտացիա անող պրոլետարներին՝ իբրև արյունարբու հեղափոխականների (см. Меринг Ф., К. Маркс и Ф. Энгельс—создатели научного коммунизма, М., *1960, էջ 192)։* Շահագործող դասակարգերի ու նրանց գաղափարախոսների կողմից բռնությունը դատապարտվում է միայն այն ժամանակ և այն չափով, երբ և ինչ չափով այն աշխատավորների կողմից կիրառվում է շահագործողների դեմ։ Նրանք մերժում ու դատապարտում են բռնության միայն մի, նրա ամենից ավելի առաջադիմական ձևը՝ հեղափոխական բռնությունը և պաշտպանում ու գործնականում կիրառում են աշխատավորների , ամբողջ ազգերի ու ժողո-

վուրդների նկատմամբ բռնության ամենակոպիտ ու ամենահետադիմական ձևերը։

Աշխատավորների դեմ բռնության ամենադաժան միջոցներ կիրառողների նկատմամբ բռնությունը ո՛չ միայն չի հակասում պրոլետարական հումանիզմին, այլև ելնում է նրա պահանջներից։ Չի կարելի պաշտպանել իսկական մարդասիրության սկզբունքները՝ հիմքից մերժելով աշխատավորների ազատագրական շարժումը ճնշողների, հակահեղափոխականների, ագրեսիայի ու ռեակցիայի ուժերի նկատմամբ բռնության կիրառման անհրաժեշտությունը։ Սոցիալիստական հումանիզմը դասակարգային հումանիզմ է և իր սուր ծայրով ուղղված է շահագործողների, կապիտալի տիրապետության դեմ։ Այն նշանակելով անսահման սեր աշխատավորների հանդեպ, միաժամանակ ենթադրում է խոր ատելություն շահագործողների, բոլոր նրանց նկատմամբ, ովքեր մարդկային կյանքը լցնում են զրկանքներով ու տառապանքներով, այն դարձնում ծանր ու անտանելի։

Ամենավճռական միջոցներով պաշտպանելով հեղափոխության նվաճումները թշնամիների ոտնձգություններից՝ կոմունիստները միաժամանակ հանդես են գալիս ամեն տեսակ ծայրահեղությունների, թշնամու նկատմամբ չարդարացված դաժանություններ կիրառելու դեմ։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո Լենինը գրում էր, որ թշնամիները մեզ մեղադրում են տեռոր կիրառելու մեջ, «սակայն այն տեռորը, որ գործադրում էին ֆրանսիական հեղափոխականները, որոնք գիլյոտինով գլխատում էին անզեն մարդկանց, մենք չենք կիրառում, և հուսով եմ, չենք էլ կիրառի» (Երկեր, հ. 26, էջ 353)։ Հայտնի է, որ մեր երկրում սովետական իշխանության գոյության առաջին օրերին հեղափոխական իշխանությունների կողմից ձերբակալված ամենակատաղի ռեակցիոներներն ու հակահեղափոխականներն անգամ ազատ էին արձակվում այն բանից հետո, երբ խոստանում էին չպայքարել սովետական իշխանության դեմ։ «Երբ մենք բանտարկում էինք,— գրում է այդ մասին Լենինը,— ասում էինք, որ մենք ձեզ կարձակենք, եթե դուք ստորագրություն տաք, որ սաբոտաժ չեք անի» (Նույն տեղը, էջ 353—354)։ Եվ միայն 1918 թվականի երկրորդ կեսին սովետական պետությունը դիմեց կարմիր տեռորին, որպես հեղափոխության նվաճումները հակահեղափոխության ոտնձգություններից պաշտպանելու հարկադրական միջոցի, հակահեղափոխություն, որն ամբողջ երկրով մեկ կազմակերպում էր հակասովետական ելույթներ ու դավադրություններ, ամենադաժան տեռորի ենթարկում ժողովրդի գործին նվիրված մարդկանց, քայքայում նորաստեղծ սովետական պետության հիմքերը։ Այդ պայմաններում բոլշևիկները, հեղափոխական իշխանությունները դիմեցին տեռորին ոչ թե պայքարի այդ ձևի նկատմամբ ունեցած ինչ-որ հատուկ համակրանքի մղումով, ոչ թե այն պատճառով, որ նրանց տակտիկայի, պայքարի նրանց ձևերի մեջ կար ինչ-որ բան, որը թեկուզ հեռավոր ձևով հիշեցներ տեռորիզմը, այլ միայն այն պատճառով, որ հեղափոխության նվաճումների ու աշխատավորների շահերի պաշտպանությունը հրամայաբար պահանջում էին հակահեղափոխական ուժերի կողմից կիրառվող մասսայական տեռորին տեռոր հակադրելու։

Սոցիալիստական հեղափոխության գլխավոր բովանդակությունը ո՛չ թե բռնությունն է որպես այդպիսին, այլ բոլոր աշխատավորներին, ամբողջ մարդկությանն ամեն տեսակ ճնշումից ու շահագործումից ազատելը, սոցիա-



լական հակամարտություններից ազատ հասարակության կառուցումը։ Շահագործողների նկատմամբ բռնության կիրառումը ընդունվում ու արդարացվում է միայն այն ժամանակ և այնքանով, երբ և որքանով նա պաշտպանում է հեղափոխության նվաճումները և օգնում սոցիալական չարիքներից աշխատավորների ազատագրության և կոմունիզմի ուղիով հասարակության առաջընթացի գործին։ «Մենք պետք է նրանց (շահագործողներին—Գ. Ա.) ճնշենք,— այդ կապակցությամբ գրում է Լենինը,— որպեսզի մարդկությանն ազատագրենք վարձու ստրկությունից» (Երկեր, հ. 25, էջ 600)։ Հեղափոխական մարքսիզմի այդ գլխավոր սկզբունքի ճանաչման և գործնականում նրա կիրառման մեջ է այն սկզբունքային տարբերությունը, որ գոյություն ունի ռեալ, դեպի գործողությունն ուղղված հումանիզմի և այն մարդկանց կեղծ հումանիզմի միջև, ովքեր պատրաստ են հռչակելու գեղեցիկ ու հրապուրիչ կոչեր, սակայն դատապարտում են դրանց իրականացման նպատակին ուղղված ամեն մի հեղափոխական ակտ, աշխատավորների ամեն մի վճռական գործողություն։ Այդ պատճառով էլ նա, ով սկզբունքորեն հրաժարվում է հեղափոխական բռնությունից, որպես հնի, իր դարն ապրածի տապալման ու նորի իրացման, կոմունիզմի համար պայքարի գործուն միջոցից, ըստ էության հանդես է գալիս կոմունիզմի բուն նպատակի, մարքսիստական հումանիզմի ամենաանկապտելի սկզբունքների դեմ։ Ուրեմն, խոսքը բոլորովին էլ այն մասին չէ, պե՞տք է արդյոք հրաժարվել դասակարգային պայքարից ու հեղափոխությունից, թե՞ ոչ։ Խոսքն այն մասին է, թե **ինչպե՞ս, ինչպիսի՞ մեթոդներով** պետք է մղել այդ պայքարը, բռնության **ինչպիսի՞ ձևեր** պետք է կիրառել այս կամ այն կոնկրետ պայմաններում, այս կամ այն իրադրության մեջ։

Ի հակադրություն անարխիստական ու ձախսեկտանտական տարրերի, որոնք անտեսում են սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ ու սուբյեկտիվ նախադրյալների առկայությունը, իրենց հույսերը կապում են ավանտյուրաների ու դավադրությունների հետ. հեղափոխական մարքսիստները, իսկական կոմունիստները գտնում են, որ հեղափոխական բռնությունը պետք է հենվի ժողովրդի մասսայական գործողությունների վրա, որ հին հասարակարգի տապալումը և նորի հաղթանակը կարող է իրականացվել միայն աշխատավորների համատեղ ջանքերով։

Կոմունիզմի թշնամիները առանձին սիրով են խոսում այն մասին, որ անցումը սոցիալիզմին բոլորովին էլ չի նշանակում բռնության, որպես սոցիալական ուժի, վերացում։ Սակայն, իրականում այն բռնությունը, որ ստիպված են կիրառելու սոցիալիստական պետությունները, սկզբունքորեն տարբերվում է բուրժուական պետությունների կողմից կիրառվող բռնությունից։ Սոցիալիստական պետությունների կողմից ինչպես երկրի ներսում, այնպես էլ արտաքին ասպարեզում կիրառվող բռնությունը սկզբունքորեն նոր տիպի, միանգամայն նոր որակի ու սոցիալական միանգամայն նոր բովանդակություն ունեցող բռնություն է. այն ուղղված է մի բուռ փոքրամասնության, օտարերկրյա լրտեսների ու դիվերսանտների, սոցիալիստական երկրների վրա կապիտալիստական պետությունների հարձակման փորձերի դեմ։ Բռնությունը խորապես սոցիալական երևույթ է և նրա մասին խոսելիս անհրաժեշտ է աչքի առաջ ունենալ առնվազն հետևյալը՝ 1) հասարակության որ դասակարգերի ու խմբերի, սոցիալական ի՞նչ ուժերի կողմից է այն կիրառվում, 2) ո՞ւմ դեմ է կիրառվում և 3) հասարակական ի՞նչ նպատակներ է հետապնդում։ Ուրեմն,

խոսքը բոլորովին էլ այս կամ այն պետությունում բռնության առկայության կամ բացակայության մասին չէ, քանի որ այն առկա է բոլոր պետություններում։ Խոսքն այդ պետություններում կիրառվող բռնության էության, նրա դասակարգային բովանդակության ու խաղացած սոցիալական դերի մասին է։

Ի տարբերություն կապիտալիստական պետությունների կողմից կիրառվող բռնության, որը սոցիալական խոր հակամարտությունների վրա հիմնված այդ հասարակարգի պատմական էվոլյուցիային զուգընթաց ավելի ու ավելի է դառնում նրա գոյության պահպանման միակ միջոցը, բռնությունը սոցիալիզմի պայմաններում հետզհետե կորցնում է իր դերը՝ աստիճանաբար տեղի տալով համոզման ու խաղաղ դաստիարակության մեթոդներին, մեթոդներ, որոնք կոմունիստների կողմից դիտվում են իբրև մասսաների, աշխատավորների հետ իրենց հարաբերություններում հիմնական մեթոդ։ Բռնությունը սոցիալիզմի պայմաններում կիրառվում է ժողովրդի ճնշող մեծամասնության կողմից հօգուտ այդ մեծամասնության, հօգուտ բոլոր աշխատավորների, հանուն այն բանի, որ ապագայում՝ դեպի կոմունիզմ հասարակության անցման հետ զուգընթաց անհրաժեշտ պայմաններ ստեղծվեն բռնության, որպես սոցիալական ուժի, լիակատար վերացման համար։ Ահա թե ինչու Լենինը գրում էր, որ «ամբողջ զարգացումն ընթանում է դեպի հասարակության մեկ մասի նկատմամբ մյուսի բռնի տիրապետության ոչնչացումը (ընդգծումները մերն են—Գ. Ա.)» և որ «մեր իդեալի մեջ բռնությունը մարդկանց նկատմամբ տեղ չունի» (Երկեր, հ. 23, էջ 79—80)։

Բուրժուական գաղափարախոսների շուրթերից հաճախ կարելի է լսել այն կշտամբանքը կոմունիստների հասցեին, թե վերջիններս անցնելով իշխանության գլուխ, իրենց դասակարգային թշնամիներին չեն տալիս նույնիսկ այն ազատությունները, որ իշխանության գլուխ կանգնած բուրժուազիան տալիս է կոմունիստներին՝ բուրժուական դեմոկրատիայի շրջանակներում։

Սակայն մի՞թե իրոք մարդասիրական հակումներով է առաջնորդվում բուրժուազիան, երբ որոշ, թեկուզ և խիստ սահմանափակ իրավունքներ ու ազատություններ է տալիս աշխատավորներին ու նրանց կոմունիստական ավանգարդին։ Բնավ ոչ։ Հայտնի է, որ դրանք աշխատավորների կողմից նվաճվում ու պաշտպանվում են ամենահամառ պայքարով միայն։ Եվ մի՞թե այն փաստը, որ երբ կապիտալիստական այս կամ այն երկրում ստեղծվում է բուրժուազիայի իշխանությունը տապալելու շատ թե քիչ իրական սպառնալիք, ապա վերջինս կանգ չի առնում ո՛չ մի միջոցի առաջ, ամենադաժան ձևով ոչնչացնում է աշխատավորների ամենատարրական դեմոկրատական ազատությունները, հարձակվում դեմոկրատական ու առաջադիմական կազմակերպությունների վրա, դիմում կառավարման բացահայտ ֆաշիստական մեթոդների—այն բանի ամենապերճախոս վկայությունը չի, որ աշխատավորների ազատությունը կապիտալիզմի պայմաններում դատարկ ֆրազ է, ժողովրդական մասսաներին խաբելու ու նրանց դասակարգային գիտակցությունը բթացնելու միջոց։

Միանգամայն այլ է վիճակը սոցիալիզմի պայմաններում։ Հաղթանակած երկրի բանվոր դասակարգին բռնությունը պետք է իր դասակարգային թշնամիների դիմադրությունը ճնշելու, իշխանությունը ետ գրավելու նրանց փորձերը կանխելու համար։ Դա անհրաժեշտ է, որովհետև մինչև այժմ սոցիալիստական հեղափոխությունները հաղթանակել են այնպիսի պայմաններում, երբ



աշխատավորների իշխանությանը սպառնացել է հակահեղափոխությունը, զինված պայքարը այն դասակարգերի, որոնք չեն ուզում ենթարկվել ժողովրդի կամքին։ Չլինեին այդ սպառնալիքները, բանվոր դասակարգը հարկ չէր ունենա կիրառելու որոշ խավերի դեմոկրատական իրավունքների սահմանափակում։ Հարցի ամբողջ էությունը կայանում է հենց նրանում, որ եթե բուրժուազիան բռնություն է գործադրում հասարակության ճնշող մեծամասնության դեմ՝ հանուն իր նեղ էգոիստական շահերի, ապա պրոլետարիատի բռնությունը հասարակության ճնշող մեծամասնության, բոլոր աշխատավորների կամքի արտահայտությունն է՝ ընդդեմ շահագործող փոքրամասնության, հանուն աշխատավորական լայն մասսաների շահերի։

Թշնամական գաղափարախոսության կողմից կոմունիստներին ներկայացվող ամենատարածված մեղադրանքներից մեկն էլ այն պնդումն է, թե իբր վերջիններս ղեկավարվում են «նպատակն արդարացնում է միջոցները» նշանաբանով, այն սկզբունքով, որ առաջադրված նպատակին հասնելու համար չպետք է խտրություն դնել միջոցների միջև, կարելի է և պետք է դիմել ամեն մի միջոցի, որքան էլ ստոր ու անմարդկային լինի այն։

Հակառակ կապիտալիզմի գաղափարախոսների այդ զրպարտանքին, կոմունիստական գաղափարների իրականացման մեթոդների նրանց կամայական մեկնաբանությանը՝ կոմունիստները ելնում են այն բանից, որ կոմունիստական հասարակության կառուցման խորապես մարդասիրական նպատակին չի կարելի հասնել հակամարդասիրական միջոցների օգնությամբ և հիմքից մերժում են նման միջոցները։ Նրանք ելնում են այն բանից, որ այն «նպատակը, որի համար պահանջվում են ոչ ճիշտ միջոցներ, ճիշտ նպատակ չէ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 1, էջ 65)։ «Նպատակն արդարացնում է միջոցները» սկզբունքը ճիզվիտական սկզբունք է և չի առնչվում մարքսիզմի հետ։

Պատմությունը ցույց է տալիս, որ պայքարի ավանտյուրիստական ու վարկաբեկված մեթոդներին դիմում են իրենց դարն ապրած, պատմական հեռանկարը կորցրած ու պատմության օբյեկտիվ ընթացքի դեմ գնացող դասակարգերն ու սոցիալական խմբերը։ Պայքարի ճիզվիտական մեթոդները չեն կարող դառնալ կոմունիստական նպատակների իրականացման միջոց, ոչ մի չափով չեն կարող փոխարինել պայքարի կոմունիստական մեթոդներին։ Կոմունիստական նպատակների հումանիզմն անհրաժեշտաբար ենթադրում է այդ նպատակներին հասնել՝ պատմական տվյալ իրադրության համար ամենից ավելի մարդասիրական միջոցների օգտագործմամբ։ Հակամարդասիրական միջոցներով պաշտպանվող ամենամարդասիրական նպատակներն անգամ կարող են արժեզրկվել և վեր ածվել իրենց հակադրությանը։ Չի կարելի հասարակական կյանքում արմատավորել իսկական մարդասիրության սկզբունքները հակամարդասիրական մեթոդների օգնությամբ, դաժանությունների միջոցով։ Անհեթեթություն է մտածել, որ կարելի է աշխարհի երեսին իսկական երջանկություն ստեղծել մարդկանց, ամբողջ ազգերի ու ժողովուրդների մասսայական ոչնչացման գնով։

Բանվոր դասակարգի մեծ նպատակը՝ կոմունիզմը, մարդկության կողմից երբևէ ստեղծված բոլոր գաղափարներից ամենավեհն է ու ամենամարդասիրականը, ուստի և այն անթույլատրելի է համարում անազնիվ ու հակամարդասիրական մեթոդների օգտագործումը։

Մ. ՄԻՆԱՍՅԱՆ

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱՅՆՈՒԹՅԱՆ ԴԵՐԻ ՇՈՒՐՋ

*Սովետական մարդկանց աշխատանքային ակտիվության աճի, կարևորագույն նախադրյալներից է կոմունիստական գիտակցականության բարձրացումը։ Նախաձեռնություն և գիտակցական ստեղծագործություն, կոմունիստական շինարարության պրոբլեմների գիտական իմացություն կարող է հանդես բերել այն մարդը, որի մոտ կա նորի զգացում, որը կարողանում է վերլուծել, համադրել երևույթները, տեսնել դրանց ընթացքը, կանխատեսել հետևանքները։ Այդպիսի բարձր հատկանիշներ մարդուն կարող է տալ կոմունիստական բարձր գաղափարայնությունը։ «Ինչպես փիլիսոփայությունն է պրոլետարիատի մեջ գտնում իր նյութական զենքը,— գրում է Մարքսը,— այնպես էլ պրոլետարիատն է փիլիսոփայության մեջ գտնում իր հոգևոր զենքը...* (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 1, *էջ* 428)։

*Կոմունիստական շինարարության ներկա ժամանակաշրջանում, երբ զգալիորեն բարդացել են նոր հասարակարգի կառուցման սոցիալ-տնտեսական խնդիրները, կոմունիզմի նյութական նախադրյալների հետ միասին վճռական նշանակություն է ստանում հասարակության հոգևոր կյանքի բուռն ծաղկումը, աշխատավորների կոմունիստական գիտակցականության աճը։ Այն դարձել է մշտապես գործող ազդակ կոմունիզմի համար մղվող պայքարում։*

*Աշխատավորների կոմունիստական գիտակցականության բարձրացման համար մեզ մոտ ստեղծված են անհրաժեշտ նախապայմաններ։ Կոմունիստական կուսակցությունը, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն, բացահայտելով ու դատապարտելով անհատի պաշտամունքի վնասակար հետևանքները, լայն հնարավորություններ ընձեռեցին գաղափարական աշխատանքում առողջ ստեղծագործական մթնոլորտ ստեղծելու համար։*

*Սովետական մարդկանց կոմունիստական աշխարհհայացքի ձևավորումը օրգանապես կապվում է կոմունիզմի կառուցման ընդհանուր պրոցեսի հետ։ Որքան բարձր զարգացման են հասնում հասարակական կյանքի նյութական*



*պայմանները, այնքան ավելի մեծ նշանակություն է ստանում սուբյեկտիվ գործոնը, նրա հասարակական-քաղաքական մակարդակը, կոմունիստական գաղափարայնությունը։ Սովետական մարդկանց բարձր գաղափարայնությունը հանգեցնում է ողջ հասարակության գաղափարական միասնության հետագա ամրապնդմանը։*

*Աշխատավորների կոմունիստական գիտակցականության բարձրացման նյութական հիմքը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն է։ Հասարակության կյանքի նյութական պայմանների բարելավումը, աշխատավորների կրթական մակարդակի բարձրացումը լավագույն պայմաններ են ստեղծում մարդկանց մտածողության, աշխարհհայեցողության սահմանների ընդլայնման համար։ Մեր օրերի մարդն ամեն կերպ ձգտում է սեփական մտորումներով իմաստավորել հասարակական կյանքի երևույթները, հասարակության զարգացման պրոցեսները, քննադատաբար վերաբերվել այդ երևույթներին և պրոցեսներին։*

*Կյանքը ցույց է տվել, որ որքան խոր են հասարակական վերափոխումները, այնքան ավելի բարձր ու բարդ խնդիրներ են ծագում գաղափարական աշխատանքի ոլորտում։ Այստեղից էլ այդ աշխատանքի ավելի խոր մտածված, գիտական հիմունքներով կազմակերպելու անհրաժեշտությունը։*

*Կոմունիստական աշխարհհայացքի, կոմունիստական գաղափարայնության ձևավորումը խիստ բարդ և բազմակողմանի պրոցես է։ Պետք է մշտապես նկատի ունենալ, որ այստեղ բավարար չեն միայն գաղափարական ներազդեցության միջոցները, որ մարդու աշխարհհայացքի ձևավորման վրա ամենօրյա ազդեցություն են գործում կյանքը, նրա դրական և բացասական կողմերը։ Այս դեպքում գործ ունենք մի շատ բարդ պրոցեսի հետ, որը գաղափարական բնագավառի աշխատողներից պահանջում է առավել հմտություն։*

*Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը նշանակում էր, որ պատմական ասպարեզ է ելնում մի հասարակարգ ոչ միայն իր նոր էկոնոմիկայով և քաղաքականությամբ, այլև իր նոր գաղափարախոսությամբ, հոգեբանությամբ, բարոյականությամբ, նոր հոգևոր կյանքով։ Հեղափոխության հերոսամարտերում դրվեցին նոր մարդու ձևավորման հիմքերը, մարդ, որն այսօր մեր ժամանակակիցն է և շարունակում է հեղափոխության մեծ գործը։ Կոմունիզմ կառուցող մարդն ունի պայծառ ապագա, պարզ նպատակ և հավատ, որը նրան թևավորում, աշխատանքային սխրանքների է մղում։ Կապիտալիստական աշխարհի միլիոնավոր աշխատավորներ, ընդհակառակը, չունեն հասարական մեծ նպատակ, հավատ կապիտալիստական կարգերի ապագայի նկատմամբ։ Այնտեղ հատկանշական է «հեռանկարի ճգնաժամը»։ Նույնիսկ կապիտալիզմի այնպիսի պաշտպանը, ինչպիսին է ՍՍՀՄ-ում ԱՄՆ-ի նախկին դեսպան Ջորջ Քենան, խոսելով ԱՄՆ-ում տիրող վիճակի մասին, ստիպված է խոստովանել հետևյալը. «Եթե դուք ինձ հարցնեք, թե ընդունա՞կ է արդյոք այն երկիրը, որը գտնվում է այնպիսի վիճակում, ինչպիսին այժմ է, երբ բացակայում է ազգային նպատակի բարձր զարգացած գիտակցությունը..., եթե դուք հարցնեք այդ երկիրը հեռանկարում լավ շանսեր ունի՞ մրցելու նպատակասլաց, լուրջ և կարգապահ հասարակարգի հետ, ինչպիսին Սովետական Միությունն է, պետք է ասեմ, որ այդ հարցի պատասխանը բացասական կլինի» (Ջոն Լյուիս,* «Социализм и личность», ИЛ., М., *1963, էջ 50)։ Բանն այնտեղ է*

հասել, որ 1964 թվականի սկզբներին ամերիկյան կոնգրեսում այդ մասին ստիպված էր բարձրաձայն հայտարարել նաև Ամերիկայի պրեզիդենտ Ջոնսոնը։ «Շատ ամերիկացիներ,— ասում է նա,— ապրում են ունենալով քիչ հույսեր՝ ոմանք աղքատության, ոմանք իրենց մաշկի գույնի և շատ-շատերը՝ այդ երկու պատճառներով («Известия», 12 հունվարի, 1964 թ.)։

1960 թվականի սկզբներին «Լայֆ» ամսագիրը բանավեճ էր բացել «Ամերիկայի ազգային նպատակը» թեմայով։ Բանավեճի բոլոր մասնակիցները գալիս էին այն եզրակացության, որ Ամերիկայի Միացյալ Նահանգներն այդպիսի նպատակ չունեն, երկիրը ղեկավարող մարդիկ չունեն հասարակական մասշտաբի նպատակներ։ Շատերը գրում էին, որ իրենք չգիտեն, թե ուր են գնում, եթե ընդհանրապես որևէ տեղ գնում են։ Եվ այդպես էլ, չնայած բոլոր փորձերին, մոնոպոլիստների գաղափարախոսները չկարողացան գտնել ազգային նպատակը, որն իր կողմը գրավեր ժողովրդին։

Կապիտալիստական աշխարհում հասարակական նպատակի բացակայությունն առանձնապես բացասական ազդեցություն է թողնում երիտասարդության վրա։ Այդ հասարակարգը շատ երիտասարդների զրկել է մեծ նպատակից, հասարակական իդեալներից, նրանք հասարակության մեջ, իրենց շրջապատում գեղեցիկ մղումներ չեն գտնում։ Վսեմ գաղափարների բացակայությունը հաճախ պատճառ է դառնում այն բանի, որ շատերը ստեղծված փակուղուց դուրս գալու «ելքը» գտնում են արհեստական հուզումների և մղումների մեջ։ Անգլիայում, վերջին տարիներին, լայն տարածում էր ստացել թմրադեղերի (նարկոտիկների) գաղտնի վաճառքը։ 1964 թվականի մարտի կեսերին «Դեյլի մեյլի» թղթակից Ռոնա Ջերչիլը գրում էր, որ մի քանի շաբաթվա ընթացքում Լոնդոնում և նրա շրջակայքում 20 հազար վնասակար հաբեր են վաճառվել այն երիտասարդներին, որոնք «փնտրում են հոգեբանական գրգիռ և խթան»։ Այդ հաբերը, շարունակում է նա, կարող են առաջացնել նյարդային դեպրեսիա և զգայախաբություն (հալյուցինացիա)։ Այս երևույթը Անգլիայում սարսափի մեջ է գցել շատ առաջադեմ մարդկանց, քանի որ խոսքը վերաբերում է ո՛չ թե առանձին, այլ հազարավոր երիտասարդների։ Թղթակիցն առաջարկում է խիստ միջոցների դիմել նարկոտիկների վաճառքը արգելելու համար։ Սակայն, նա չի փորձում գտնել իսկական ելքը, տեսնել, որ կապիտալիստական կարգերի ախտերն են, որ շատերի մոտ ծուլության, անհուսության, կասկածամտության պատճառ են դարձել։

Արդի բուրժուական սոցիոլոգիան ամեն կերպ ճգնում է ապացուցել, թե իբր բարոյական ճգնաժամ է ապրում ժամանակակից դարաշրջանը, մարդկային անհատը, խորտակվում են առաջադիմության գաղափարները։ Այս իմաստով հատկանշական է արևմտագերմանական հայտնի փիլիսոփա, էկզիստենցիալիստ Յասպերսի քարոզը։ Նա գտնում է, որ ռեալ, երկրային կյանքը չունի ոչ մի արժեք ու միտք, այն պատրանք է, ռեալությունն աշխարհում ունի անհետացող կեցություն։ Նրա փիլիսոփայության եզրակացությունը անորոշություն է, նա չգիտե, թե ուր է գնում մարդը։ Աշխարհը անհետանում է։

Փիլիսոփաների Մեքսիկայի համաշխարհային XIII կոնգրեսում «Դարաշրջանի քննադատությունը» թեմայի քննարկման մասնակից բուրժուական փիլիսոփաները կապիտալիստական հասարակության արդի ճգնաժամը ներկայացնում էին որպես մարդկության ճգնաժամ ընդհանրապես, մահացող



դասակարգերի իդեալների փլուզումը դիտում որպես մարդկության լավագույն երազների կործանում։ Բուրժուական հայտնի փիլիսոփա Ֆրանսիսկո Լարոյոն փորձում է ժամանակակից էպոխան բնութագրել որպես ճգնաժամի էպոխա, որն իբր առաջ է եկել գիտության ու տեխնիկայի զարգացումից։ Տեխնիկայի դարաշրջանը,— գրում է նա,— իր հետ բերեց մեր ժամանակաշրջանին հատուկ հատկանիշը՝ ճգնաժամը, կամ մեծ ազդեցություն գործեց այդ հատկանիշի վրա։ Համաշխարհային մասշտաբով հանդես է եկել անվստահության զգացումի աճ։

Բուրժուական փիլիսոփաների տեսակետները այս հարցում շեշտված միակողմանի են։ Մեր դարաշրջանը պետք է քննադատել միայն նկատի ունենալով արդի բուրժուական հասարակության արատները, առաջին հերթին, սոցիալական խոցերը։ Բայց այդ հասարակությունը չէ, որ այսօրվա մարդկության անունից պետք է հանդես գա։ Մենք բոլոր հիմքերն ունենք խոսելու հեղափոխական խոր վերափոխումների դարաշրջանի վեհության մասին, որի գիտական բնութագիրը տրված է ՍՄԿԿ ծրագրում։ «Արդի դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, երկու հակադիր հասարակական սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական և ազգային-ազատագրական հեղափոխությունների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, նորանոր ժողովուրդների՝ սոցիալիզմի ուղին անցնելու, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։ Արդի դարաշրջանի կենտրոնում կանգնած են միջազգային բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը» («ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը», Հայպետհրատ, 1962, էջ 425)։

Եթե բուրժուական աշխարհի միլիոնավոր մարդիկ կորցրել են հավատը հասարակության լուսավոր ապագայի նկատմամբ, ապա սովետական մարդն ունենալով միանգամայն պարզորոշ հասարակական նպատակ, վսեմ ապագա, միաժամանակ ունի այն գիտակցությունը, որ սովետական ժողովուրդը, սովետական ամեն մի մարդ կերտում է այդ ապագան։ Սովետական մարդու մեջ այդ հավատը ստեղծվում, ամրապնդվում և հզոր ուժի է վերածվում մարքսիստական-լենինյան գաղափարախոսությամբ։ «...Տվյալ երևույթի բացարձակ անհրաժեշտության գիտակցումը,— գրում է Պլեխանովն իր Պատմության մեջ անհատի դերի հարցի շուրջը գրքում,— կարող է միայն ուժեղացնել այն մարդու եռանդը, ով համակրում է այդ երևույթին և ինքն իրեն համարում նրա առաջացնող ուժերից մեկը» (Գ. Վ. Պլեխանով, Փիլիսոփայական ընտիր երկեր, հ. II, Հայպետհրատ, 1962, էջ 320)։

Մեր մարդկանց գիտակցության մեջ ավելի ու ավելի է ամրապնդվում այն միտքը, որ ամեն մեկն իր բաժինն ունի նոր հասարակարգի ստեղծման գործում, մեկի աշխատանքն ամրապնդվում է մյուսով, որ յուրաքանչյուրի աշխատանքն ընդհանուրի մասնիկն է։

Սոցիալիզմի բոլոր նվաճումներից, կոմունիստական կուսակցության մեծ գործերից ամենամեծը սովետական մարդն է, որին կոմունիստական գաղափարայնությունը հզոր ուժ, աննախընթաց եռանդ է տալիս առաջադրված հասարակական խնդիրները լուծելու համար։ Կոնկրետ իրադրության կոնկրետ վերլուծությունը մարքսիզմ-լենինիզմի գլխավոր պահանջն է, տեսության և պրակտիկայի կապի հիմնական պայմանը։ Պատմական իրադրությունը, հա-

սարակության զարգացման օրենքները և պայմանները չիմանալը կամ վատ իմանալը մարդուն զրկում է կողմնորոշվելու հնարավորությունից, նրա գործողությունները դարձնում անվստահ, կախված ամեն տեսակի պատահականություններից։ Պատմական անհրաժեշտության ճանաչումն ու իմացությունը որոշակի, հաստատ, վճռական և ազատ են դարձնում սովետական մարդու գործողությունները։ Նա հնարավորություն է ստանում աշխատել գործիմացությամբ, գիտակցաբար, ազատ, կարողանում է գիտակցել իր գործունեության հասարակական-քաղաքական նշանակությունը, ճանաչել հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները։ Միայն մարքսիզմ-լենինիզմի, գիտական աշխարհայացքի խոր յուրացումն է հնարավորություն ընձեռում դառնալու նոր կյանքի գիտակից կերտող։

Կոմունիստական գաղափարայնությունը աշխատավորների գիտակցության մեջ, ամենից առաջ, հաստատվում է հասարակական կյանքի զարգացման ընթացքով, պատմական զարգացման օբյեկտիվ պրոցեսով։ Սակայն այստեղ վճռական նշանակություն ունի նաև կոմունիստական կուսակցության նպատակասլաց գործունեությունը։ Ինչպես մեր կուսակցությունը, այնպես էլ նրա մարտական ջոկատներից մեկը՝ Հայաստանի կոմունիստական կուսակցությունն անդուլ պայքար են մղում աշխատավորներին մարքսիզմ-լենինիզմի աշխարհայացքով զինելու համար։ Հանրապետության կուսակցական կազմակերպություններն իրենց գաղափարական գործունեության մեջ մշտապես ելնում են կուսակցության այն ծրագրային պահանջից, որ ժամանակակից էտապում անհրաժեշտ է բոլոր աշխատավորներին դաստիարակել բարձր գաղափարայնության, գաղափարական խոր համոզվածության, կոմունիզմին նվիրվածության, աշխատանքի և հանրային տնտեսության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, լիովին հաղթահարել բուրժուական հայացքների և բարքերի մնացուկները, բազմակողմանի, ներդաշնակ զարգացնել անհատին, ստեղծել հոգևոր կուլտուրայի իսկական հարստություն։ Մեր կյանքի բազմաթիվ փաստերի վերլուծությունը բերում է այն եզրակացության, որ որոշ մարդկանց մոտ կոմունիստական համոզմունքների, գաղափարայնության բացակայությունն է այնպիսի բացասական երևույթների հիմնական պատճառը, ինչպիսիք են չարաշահումները, անբարոյական և հակահասարակական երևույթները, անպատասխանատվությունն ու անկարգապահությունը, զրպարտությունը, բանսարկությունը, մարդու նկատմամբ անհոգի վերաբերմունքը, անտարբերությունն ու պասսիվությունը և այլն։

Գաղափարական մարդը մարտիկ է և ոչ անկիրք դիտող, չարին ու բարուն անտարբեր ունկնդրող։ Նա քաջ ճանաչելով շրջապատի մարդկանց, թափանցելով երևույթների էության մեջ, միաժամանակ ունի բարձր ինքնագիտակցություն, լավ է ճանաչում իրեն, գիտե իր հնարավորությունները։ Գաղափարական աշխատանքի աննպատակասլաց, ոչ կոնկրետ լինելու հետևանքներից է և այն, որ ոչ քիչ թվով մարդիկ գերագնահատելով իրենց հնարավորություններն ու ունակությունները, իրենց առջև դնում են այնպիսի նպատակներ, որոնց կարող են հասնել միայն անազնիվ ճանապարհով։ Այդպիսիները, վերջին հաշվով, չարիք են դառնում շրջապատի, հասարակության համար։ Մինչդեռ գաղափարական մարդուն հատուկ են խիղճն ու ազնվությունը, խոր հարգանքը սեփական անձի նկատմամբ, ինքնատիրապետումը, ինքնազսպումը, կարգապահությունը։ Տեղին է հիշել, որ որոշ մարդիկ, անկարգապահների



շրջանում աշխատանքն ուժեղացնելու փոխարեն, ցանկանում են ամուր կարգապահության հասնել՝ վերադառնալով անհատի պաշտամունքին։ Դա մեր հասարակարգի առաջընթացը չհասկանալու, ինչպես նաև գաղափարական աշխատանքը թերագնահատելու հետևանք է։

ՍՄԿԿ XXIII համագումարը կուսակցության գաղափարական աշխատանքի հիմնական խնդիրները համարեց «...հասարակության բոլոր անդամների մեջ գիտական աշխարհայացքի, կոմունիստական բարոյականության ձևավորումը, բազմակողմանիորեն զարգացած անհատի դաստիարակությունը...»։ Չէ՞ որ մեր հասարակարգի մեծ առաջընթացի, նրա սոցիալական և քաղաքական զարգացման համար հատկանշական է ոչ թե տարերայնությունը, այլ անընդհատ աճող գիտակցականությունն ու կազմակերպվածությունը։ Եվ այսօր սովետական ժողովրդի պատմական ստեղծագործության գլխավոր խթաններից մեկը նրա բարձր գաղափարայնությունն ու կոմունիստական գիտակցականությունն է։ Գաղափարական մարդու համար միշտ առաջին պլանի վրա են կուսակցության, պետության, ժողովրդի շահերը, կոմունիստական շինարարության շահերը։ Նա հասարակական երևույթներին, իր գործունեությանը մոտենում է բոլշևիկյան դիրքերից, այդ գործունեությունը գնահատում որպես կոմունիստական հասարակարգի կառուցման ընդհանուր աշխատանքի անխզելի մաս։ Սովետական բազմաթիվ մարդկանց հայրենասիրական նախաձեռնությունների նշանակությունն ու արժեքավորությունն այն է, որ նրանց այդ քայլին է մղում ոչ թե նեղ նյութական շահագրգռությունը, այլ գաղափարը, կոմունիստական կարգերին նվիրված լինելը։ Կոմունիզմը ո՛չ միայն նյութական բարիքների առատություն է, այլև մարդու հոգեկան հարստությունների առատություն, գաղափարական կայունություն, խոր համոզվածություն։

Տեսնելով, թե գաղափարական համոզվածությունն ինչպիսի մեծ դեր է կատարում կոմունիստական հասարակարգի կառուցման գործում, բուրժուազիայի շատ գաղափարախոսներ մարքսիզմ-լենինիզմի դեմ մղած իրենց պայքարի կարևոր զենքերից են համարում գաղափարական անկայունության և անհետևողականության քարոզը։ Նրանք երիտասարդությանը մղում են գաղափարազրկության և ապոլիտիկության՝ նպատակ ունենալով նրան կտրել ժամանակի սոցիալ-քաղաքական հրատապ պրոբլեմներից։ Բուրժուազիայի գաղափարական ծառաները գաղափարական կայունությունը համարում են մտքի նեղվածություն, սահմանափակություն, արխաիկություն և գտնում են, որ ազատ մարդուն միշտ հատուկ են կասկածները, մտքի տատանումները, հրաժարումը գաղափարական որոշակի սկզբունքներից։ Ամերիկյան հայտնի պատմաբան և փիլիսոփա, հանգուցյալ պրեզիդենտ Քենեդիի հատուկ օգնական Արթուր Շլեզինգեր-կրտսերը, օրինակ, գտնում է, որ ունենալ իդեոլոգիա, նշանակում է ստրկանալ, որ միմյանց հետ չեն կարող համատեղվել իդեոլոգիան և դեմոկրատիան։ «...Իդեոլոգիան նման է թմրադեղի՝ նրա վնասը փորձով ապացուցված է, սակայն ձգտումը դեպի այն չի վերանում»։ Այս նկրտումների սնանկությունը փաստարկվում է սովետական մարդկանց այն խիզախումներով, որ նրանք կատարում են լուսավորված մարքսիստական գաղափարախոսությամբ, կոմունիստական գաղափարի թելադրանքով։

Կոմունիզմի նյութական և հոգևոր նախադրյալների ստեղծումը փոխադարձաբար կապված են միմյանց հետ։ Երկրի արտադրողական ուժերի զարգացումը և ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը նպաստում են մարդ-

կանց գիտակցության փոփոխմանը, իսկ աշխատավորների կոմունիստական գիտակցականության աճն արագացնում է տնտեսական խնդիրների լուծումը։ Ընդգծելով գիտակցության այդ ակտիվ վերափոխող դերը, Լենինը սովետական պետության ստեղծման առաջին օրերին սովորեցնում էր, որ կոմունիստական գաղափարները պետք է օրգանապես կապվեն կոմունիստական գործերին։ Նա գրում էր. «Մարդու գիտակցությունը ոչ միայն արտացոլում է օբյեկտիվ աշխարհը, այլև կերտում այն» (Երկեր, հ. 38, էջ 260)։ Ելնելով այս հիմնական դրույթից, Հայաստանի կուսակցական կազմակերպությունները աշխատավորական կոլեկտիվներում տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքներում մեծ ուշադրություն են նվիրում այն կյանքի, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ սերտորեն կապելու հարցին։ Ուշադրության կենտրոնում է աշխատավորների մեջ այնպիսի հատկանիշների դաստիարակումը, ինչպիսիք են նվիրվածությունը կոմունիզմին, հասարակության առջև իր պարտքի գիտակցումը, կոլեկտիվիզմը, ինտերնացիոնալիզմը, սոցիալիստական հայրենասիրությունն ու հումանիզմը։

Երևանի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ գաղափարական գործունեության կենտրոնական հարցերից մեկը դարձել է մեր մարդկանց նախաձեռնության և ինքնագործունեության ոգով դաստիարակելը, ինքնուրույն մտածելու և որոշումներ ընդունելու կարողության ներարկումը։ Նախաձեռնությունը ձևավորվում է մարքսիստական-լենինյան հաստատակամության և նպատակասլացության հետ միասին։ Հետևողական աշխատանք է կատարվում նախաձեռնությունը բոլորի մոտ բնավորության գիծ դարձնելու համար։

Գաղափարական աշխատանքում առանձնակի տեղ է տրվում մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների հաղթահարմանը։ Դրա անհրաժեշտությունը բխում է այն բանից, որ չնայած մեր հասարակարգի հզորությանը, նրա ակնառու նվաճումներին, մեր մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների պահպանումը խանգարում, արգելակում է հասարակարգի առաջընթացը։ Հարկավոր է միաժամանակ նշել, որ այժմ, երբ մեր հասարակարգում իրականացված են տնտեսական և դասակարգային կառուցվածքի արմատական փոփոխություններ, օբյեկտիվ բազա է ստեղծված մարդկանց գիտակցությունն անցյալի մնացուկներից, սովորույթներից և հայացքներից մաքրելու համար։

Սակայն, չպետք է մոռանալ, որ այսօր բուրժուական գաղափարախոսությունն օգտագործում է բոլոր հնարավոր միջոցները սովետական մարդկանց իր ազդեցությանը ենթարկելու համար։ Այդ բանը ստիպված խոստովանում են հենց իրենք, բուրժուազիայի ջատագովները։ Ամերիկյան կապիտալիստ Արթուր Մեյերհոֆը 1965 թվականին Նյու-Յորքում հրատարակած իր Համոզման ստրատեգիան գրքում նշում է, որ ամերիկացիներն արտասահմանում իրենց գաղափարները պետք է վաճառեն այնպիսի հմտությամբ, ինչպես իրենց ապրանքները։ Հարկավոր է ռեկլամի ենթարկել ո՛չ միայն ապրանքը, այլև գաղափարը։ Նկատի առնելով այս, հարկավոր է նշել, որ մեզանում դեռևս բավարար ուշադրություն չի դարձվում այն բանին, որ ոչ քիչ դեպքերում բուրժուական գաղափարախոսությունը փորձում է մեր հասարակության անդամների, առանձնապես երիտասարդության վրա ազդեցություն գործել ո՛չ միայն մամուլի, ռադիոյի և պրոպագանդայի այլ միջոցներով, այլև կենցա-



**ՀԱՎԵԼՎԱԾ**

**«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ**

# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ԴՊՐՈՑ

ԴԵԿՏԵՄԲԵՐ
1966

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ
## (1933—1941 ՀՈՒՆԻՍ)

### ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ: ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՎԱՐՏՈՒՄԸ

*1933 թվականի հունվարի 30-ին ՍՍՀՄ Կենտգործկոմի սեսիան հաստատեց ընթացիկ տարվա պետական բյուջեն։ Կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ երկրորդ հնգամյա պլանի կենսագործմանը։ Իսկ Գերմանիայում այդ նույն օրը իշխանության գլուխ անցավ Հիտլերը։ Միջազգային դրությունը բարդ էր և հակասական։ Թեև Սովետական Միությունն առաջվա նման ապրում էր կապիտալիստական շրջապատման մեջ, բայց առաջին հնգամյակի տարիներին այնպիսի մի ուժ էր դարձել, որին, միջազգային պրոբլեմները լուծելիս, արդեն չէր կարելի շրջանցել։ 1933 թվականի նոյեմբերին ԱՄՆ-ի նոր պրեզիդենտ Ֆ. Ռուզվելտի կառավարությունը դիվանագիտական հարաբերություններ հաստատեց ՍՍՀՄ-ի հետ։*

*16 տարի շարունակ ամերիկյան իմպերիալիզմը համառաբար չէր ցանկանում հաշվի նստել այն փաստի հետ, որ մեր երկրում հաղթանակել է սոցիալիստական հեղափոխությունը։ Բայց կյանքը նրան ստիպեց անել այդ։ Սակայն, ԱՄՆ-ում և մյուս կապիտալիստական պետություններում, ինչպես և առաջ, ուժեղ էին այն շրջանները, որոնք իմպերիալիզմի դժվարություններից դուրս գալու միջոցը տեսնում էին ֆաշիստական դիկտատուրա հաստատելու և երկրորդ համաշխարհային պատերազմ նախապատրաստելու մեջ։*

*Աշխարհի առաջադիմական ուժերը ֆաշիզմի դեմ մոբիլիզացնելու գործում հսկայական դեր խաղաց կոմինտերնի VII կոնգրեսը, որը տեղի ունեցավ Մոսկվայում 1935 թվականի հուլիս-օգոստոսին։ Կոնգրես էին եկել 65 երկրների կոմունիստներ։ Կոնգրեսում քննադատվեցին այն սխալ հայացքները, թե, իբր, կոմունիստները շահագրգռված են պատերազմներով, քանի որ դրանք նպաստում են հեղափոխական իրադրություն ստեղծելուն։ Արտահայտելով կուսակցության տեսակետը, Վ. Գ. Կնորինն իր ելույթում ընդգծեց՝ «Թեև պատերազմը կապիտալիստական երկրներում, վերջին հաշվով, առաջ է բերում*

հեղափոխական ճգնաժամ, այն աշխատավոր մասսաների գլխին կթափի անհամար տառապանքներ, մահ, սով, տանջանքներ, կխորտակի բոլոր երկրների արտադրաուժերը, կկործանի բանվորական կազմակերպությունները։ Պատերազմը վտանգի տակ է դնում միլիոնավոր պրոլետարների, դեմոկրատիայի մնացորդների կյանքը, որոնք, համենայն դեպս, մի շարք երկրներում, որոշ հնարավորություններ են ընձեռում աշխատավորներին կապիտալիզմի պայմաններում իրենց շահերը պաշտպանելու։ Պատերազմը սպառնում է մանր և թույլ ժողովուրդների անկախությանը, այն մեծագույն դժբախտություն է բոլոր ժողովուրդների համար։ Ուստի, կոմունիստները, որոնք պաշտպանում են ժողովուրդների շահերը, խաղաղության պաշտպաններն են և պետք է խափանեն պատերազմը»։

Դ. Զ. Մանուիլսկու զեկուցման մեջ ընդգծվում էր, որ Սովետական Միության և միջազգային հեղափոխական շարժման հզորության աճմամբ աշխարհում ուժերի հարաբերակցությունը փոխվել է։ Այդ թույլ տվեց դնելու ագրեսորների մեկուսացման հարցը։ Զեկուցման եզրակացությունը այսպես էր ձևակերպված. «Կոմունիստները պետք է հաղթահարեն այն ֆատալիստական դիրքորոշումները, թե անհնարին է դիմակայել պատերազմին, թե աննպատակ է պայքարը պատերազմի նախապատրաստման դեմ»։ ՀամԿ(բ)Կ-ի այդ գաղափարները միահամուռ ընդունվեց կոնգրեսի կողմից։

Մեծ նշանակություն ունեցան նաև կոնգրեսի հետևությունները միասնական բանվորական և լայն ժողովրդական ճակատի անհրաժեշտության վերաբերյալ։ Կոնգրեսը կոչ արեց կոմունիստներին յուրաքանչյուր երկրում այնպիսի պլատֆորմ մշակել, որը անկախ կուսակցական պատկանելությունից կարողանար միավորել բանվորներին։ Դրա համար պայմաններ կային։ Իրադարձությունների թելադրանքով սոցիալ-դեմոկրատական մասսաներն ավելի ու ավելի ակտիվորեն էին ներգրավվում ֆաշիզմի դեմ մղվող պայքարում, ֆաշիզմ, որը ջախջախում էր բոլոր բանվորական կազմակերպությունները։

Կոնգրեսում ամփոփվեց ազգային-ազատագրական շարժումների համաշխարհային սոցիալիստական հեղափոխության ռեզերվի փորձը։ Առաջ կոմունիստների մեջ լայնորեն տարածված էր այն կարծիքը, թե համարյա բոլոր գաղութային երկրներում բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից սոցիալիստական հեղափոխության վերաճելու էտապը արագ կանցնի։ Հակագաղութային պայքարում նվազեցվում էր ազգային գործոնի նշանակությունը թերագնահատվում Լենինի այն միտքը, թե ճնշված ժողովուրդների համազգային խնդիրները օբյեկտիվորեն առաջանում են գաղութարարների քաղաքականությունից։ VII կոնգրեսում հաղթահարվեցին այդ թերությունները. կոնգրեսականները եկան այն եզրակացության, որ ճնշված երկրների մեծ մասում ժողովրդական հեղափոխության առաջին քայլը լինելու է հակաիմպերիալիստական ազգային-ազատագրական լայն շարժումը։ Դրա համար էլ կոնգրեսում ընդգծվեց՝ «Բոլոր երկրների պրոլետարներ և ճնշված ժողովուրդներ, միացե՛ք» լենինյան լոզունգի նշանակությունը։

Կոնգրեսում անհրաժեշտ համարվեց պայքարը մարքսիզմ-լենինիզմի անաղարտության համար, որովհետև նոր հարցերի ստեղծագործական իմաստավորման ճանապարհին գլխավոր խոչընդոտը ռևիզիոնիզմն ու դոգմատիզմն էր։ Կոնգրեսում տված զեկուցման մեջ Գեորգի Դիմիտրովը մասնակիցների ուշա-






դրությունը սևեռեց դոգմատիզմի և աղանդավորության վտանգի վրա։ Նա ընդգծեց, որ աղանդավորությունն արդեն դրսևորվում է ո՛չ այնպիսի պրիմիտիվ ձևերով, ինչպես Կոմինտերնի գոյության առաջին տարիներին էր, այն այժմ ոչ թե «մանկական հիվանդություն» է, այլ արմատակալած արատ։ Աղանդավորությանը բնորոշ են դոկտրինյորական սահմանափակվածությունը, մասսաների իրական կյանքից կտրվածությունը, բանվորական շարժման ամենաբարդ հարցերը շաբլոնային սխեմաների հիման վրա լուծելու հասարակ դարձած մեթոդները, ամենագետ լինելու հավակնությունը, մասսաներից, բանվորական շարժման դասերից սովորել չցանկանալը։ «Ինքնագոհ աղանդավորության» համար, ասում էր Դիմիտրովը, ծովը մի բաժակ ջուր է։ Այդ աղանդավորությունը, «բոլշևիկյան թեզիսների ձևական ճանաչումով քողարկված, արգելակում էր բոլշևիկյան մասսայական քաղաքականության ծավալմանը»։ Այս խոսքերը այսօր էլ ակտուալ են։

Կոմինտերնի այդ վերջին կոնգրեսում մշակված ստրատեգիան և տակտիկան կոմունիստներին թույլ տվեցին երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրեին և տարիներին գլխավորելու հակաֆաշիստական շարժումը և մի շարք երկրներում դառնալու խոշորագույն քաղաքական ուժ։

1936 թվականի փետրվարին Իսպանիայում անցկացված ընտրություններում հաղթեց ժողովրդական ճակատը։ Ամռանը գեներալ Ֆրանկոն ֆաշիստական խռովություն բարձրացրեց հանրապետական կառավարության դեմ։ Գերմանիայի և Իտալիայի ֆաշիստական կառավարությունները անհապաղ օգնության հասան Ֆրանկոյին։ Սկսվեց գերմանա-իտալական համատեղ ինտերվենցիան Իսպանիայում։ Իսպանական ժողովուրդը, հենվելով մյուս երկրների ինտերնացիոնալիստների աջակցության վրա, հերոսաբար դիմադրում էր։ 1936—1937 թվականներին Իսպանիայում գտնվող ինտերնացիոնալ բրիգադների կազմում մարտնչում էին 54 երկրների մոտ 35 հազար հեղափոխականներ։ Սովետական Միությունը միջազգային ասպարեզում պաշտպանում էր հանրապետականների շահերը. նրանց օգնում էր զենքով, պարենով, դեղորայքով, հագուստով. հոգատարությամբ ընդունեց հանրապետականների էվակուացված երեխաներին և դարձավ նրանց երկրորդ հայրենիքը։ Իսպանիա մեկնեցին սովետական կամավորներ, գլխավորապես տանկիստներ, օդաչուներ, ռազմագետներ։ Նրանց թվում էին՝ Ռ. Յա. Մալինովսկին, Կ. Ա. Մերեցկովը, Ն. Ն. Վորոնովը, Ն. Գ. Կուզնեցովը, Գ. Մ. Շտերնը և ուրիշներ։

Պատերազմի օջախը տարածվեց նաև Հեռավոր Արևելքում։ 1937 թվականին Ճապոնիան նորից ռազմական գործողություններ սկսեց Չինաստանի դեմ։

Ֆաշիզմի հարձակման դեմ մղվող պայքարի և պատերազմի սպառնալիքի պայմաններում սովետական մարդիկ անդադրում աշխատում էին երկրի վերափոխման վրա։ Երկրորդ հնգամյակի սկզբում կուսակցությունը ուշադրությունը կենտրոնացրեց ձեռնարկությունների կազմակերպական տնտեսական ամրապնդման, տնտեսական աշխատանքի խորացման, արտադրության որակական ցուցանիշների բարելավման պրոբլեմներին։ Նոր շինարարության բուռն ոգևորությունը, որ բնորոշ էր առաջին հնգամյակի համար, պետք է լրացվեր նոր տեխնիկա և արտադրություններ յուրացնելու խանդավառությամբ։

1933—1934 թվականների սկզբին լուրջ փոփոխություններ տեղի ունեցան տնտեսության ղեկավարման կուսակցական և պետական մեթոդների մեջ։ Դրանք կուտակվել էին աստիճանաբար, սկսած 20-ական թվականների երկրորդ կեսից, երբ կուսակցությունն իրականացրեց ժողովրդական տնտեսության ծավալուն սոցիալիստական վերակառուցման շրջադարձը։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում սոցիալիզմի հաղթանակը պայմաններ ստեղծեց տնտեսական զարգացումը լայնորեն պլանավորելու համար։ Նէպի առաջին տարիներին պետությունը տնտեսությունը ղեկավարում էր գերազանցապես էկոնոմիկայի կարգավորման կողմնակի մեթոդների՝ ապրանքների նկատմամբ որոշակի գներ սահմանելու, տարբեր տնտեսություններին վարկեր տրամադրելու և այլ մեթոդներով։ Բայց արդեն 30-ական թվականների սկզբին զգալիորեն ընդլայնվեցին տնտեսական կյանքի պլանային կարգավորման հնարավորությունները։ Առաջին հնգամյա պլանի ճշգրտման և երկրորդի մշակման կապակցությամբ, արտադրության մեծաթիվ ցուցանիշների գծով, ձեռնարկություններն սկսեցին հաստատուն պլանային առաջադրանքներ ստանալ։ Դա պահանջեց վերակառուցել առանձին ձեռնարկությունների ու պետության միջև գոյություն ունեցող տնտեսական հարաբերությունները։

Հացամթերման դժվարությունների պայմաններում պետությունը սահմանափակեց հացի մասնավոր առևտուրը։ 1932 թվականին մտցվեց շուկայական առևտրի նոր տեսակ՝ կոլտնտեսային առևտուր։ Սակայն, կոլտնտեսություններն առևտուր անելու իրավունք ստանում էին պետական մթերման պլանները կատարելուց հետո միայն։ 30-ական թվականներին գյուղատնտեսական արտադրության ծավալի կրճատման պատճառով կոլտնտեսությունների համար դժվարին խնդիր էր դարձել մթերման պլանների կատարումը։ Հասկանալի է, որ այդ պայմաններում կոլտնտեսային առևտուրը չէր կարող զգալիորեն զարգանալ։

1933 թվականի հունվարին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի պլենումի և ԿՎՀ-ի որոշմամբ ՄՏԿ-ներում և սովխոզներում ստեղծվեցին քաղաքական բաժիններ, ուր կենտրոնացվեց գյուղատնտեսական արտադրության հիմնական տեղամասերի ոչ միայն կուսակցական, այլև վարչական-տնտեսական ղեկավարությունը։

1933 թվականի փետրվարին կայացած հարվածային-կոլտնտեսականների Համամիութենական I համագումարում այս միջոցառումը հավանության արժանացավ։ Համագումարում ցույց տրվեց, որ կոլեկտիվ տնտեսությունը դարձել է գյուղացիության կյանքի կարևորագույն մասը, որ սովետական գյուղի ճակատագիրը արդեն անբաժանելիորեն կապված է կոլտնտեսությունների զարգացման հետ։ Հարվածային-կոլտնտեսականների I համագումարը գյուղացիության անունից հայտարարեց՝ «Մենք գործով ստուգել ենք և՛ սովետական իշխանությունը, և՛ բոլշևիկների կուսակցությունը։ Մերն է այդ իշխանությունը։ Մերն է այդ կուսակցությունը։ Այդ ամենը մերն է, կենսական, հարազատ, որի համար պատրաստ ենք ում հետ էլ ասես, երբ էլ ասես մարտնչել մինչև լիակատար հաղթանակ»։

Կուսակցությունը համագումարում առաջ քաշեց «Բոլոր կոլտնտեսությունները դարձնել բոլշևիկյան, իսկ կոլտնտեսականներին՝ ունևոր» լոզունգը։



Դրա համար նախ անհրաժեշտ էր բարձրացնել արտադրության մակարդակը, ամրապնդել գյուղատնտեսության ղեկավարումը։ Գյուղի առաջավորների օգնությամբ հենց դրանով էլ զբաղվում էին ՄՏԿ-ների ու սովխոզների քաղբաժինները։ Կուսակցությունը քաղբաժիններում աշխատանքի ուղարկեց կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մեծ փորձ ունեցող ավելի քան 25 հազար կոմունիստի։

Գյուղի կոմունիստները տեղափոխվում էին արտադրության առաջատար տեղամասերը։ Գյուղսովետներին առընթեր կուսակցական բջիջների փոխարեն հենց կոլտնտեսություններում, ՄՏԿ-ներում, սովխոզներում ավելի շատ բջիջներ էին կազմակերպվում։ Այսպիսով, գյուղում, ինչպես և քաղաքում, կուսակցության ստորին ցանցը կառուցվում էր ըստ արտադրական հատկանիշի։

Քաղբաժինները զգալի դեր խաղացին գյուղական ակտիվ-ստեղծելու ու դաստիարակելու, աշխատանքի կազմակերպումը բարելավելու, կարգապահությունն ամրապնդելու ուղղությամբ։ Նրանք շատ բան արին գյուղատնտեսության համար որակյալ կադրեր ընտրելու գործում, կոլտնտեսություններին օգնում էին ազատվել անազնիվ, դասակարգայնորեն խորթ և աշխատանքի համար ոչ պիտանի մարդկանցից։ Սակայն զտման ընթացքում թույլ էին տրվում նաև լուրջ սխալներ՝ վարչարարություն, կոլտնտեսություններից շարքային կոլտնտեսականների մասսայական վտարումներ, կոլտնտեսային դեմոկրատիայի խախտումներ։ 1934 թվականի նոյեմբերին կուսակցության Կենտկոմի պլենումը, ելնելով այն բանից, որ ՄՏԿ-ների քաղբաժինները լուծել են իրենց խնդիրները, վերացրեց դրանք, ձուլելով կուսակցության շրջկոմների հետ։ Սովխոզներում քաղբաժինները գործեցին մինչև 1940 թվականը։

Քաղբաժինների փորձը փոխադրվեց նաև ժողովրդական տնտեսության այլ ճյուղերը։ 1933 թվականի մարտին քաղբաժիններ ստեղծվեցին երկաթուղային, 1934 թվականի գարնանը՝ ջրային տրանսպորտում։ Այստեղ դրանք գործեցին ավելի քան երկու տասնամյակ։ Գնահատելով ժողովրդական տնտեսությունում ստեղծված քաղբաժինների ողջ փորձը, 1934 թվականից կուսակցությունը իր կանոնադրությունում իրավունք է վերապահում Կենտկոմին սոցիալիստական շինարարության վճռական տեղամասերում, ստեղծելու այդպիսի օրգաններ և առանձնացնելու Կենտկոմի կուսկազմակերպիչներ։

Այդ դրույթն առաջին անգամ կանոնադրության մեջ մտցվեց ՀամԿ(բ)Կ XVII համագումարում, որը տեղի ունեցավ 1934 թվականի հունվարի 26-ից փետրվարի 10-ը։ Համագումարում քննարկվեց Կենտկոմի (զեկուցող Ստալին), Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի (Վլադիմիրսկի), ԿՎՀ—ԲԳՏ-ի (Ռուձուտակ), կոմինտերնի գործկոմում ՀամԿ(բ)Կ պատվիրակության (Մանուիլսկի) հաշվետվությունները, երկրորդ հնգամյա պլանի (Մոլոտով, Կույբիշև), կուսակցական և սովետական շինարարության կազմակերպական հարցերի մասին (Կագանովիչ) զեկուցումները։

XVII համագումարում ամփոփվեց ոչ միայն նախորդ համագումարից հետո ընկած երեք ու կես տարիների, այլև Լենինի մահին հաջորդած տասնամյակի կուսակցության պատմական հաղթանակների արդյունքները։ Պատահական չէր, որ համագումարը բացվեց նույն օրն ու ժամին և այն դահլիճում, ուր 1924 թվականին տեղի էր ունեցել սովետների Համամիութենական II համագումարի նիստը, և կուսակցության ու սովետական պետության ղեկավարնե-

րը երդում էին ավել կատարել Վլադիմիր Իլյիչի պատգամները. «Լենինը մեզանից հեռացավ սրանից 10 տարի առաջ, բայց լենինիզմը, նրա դրոշը մեր ուղեցույց աստղն է եղել»,— ասաց Գ. Կ. Օրջոնիկիձեն Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ ունեցած ելույթում։

Համագումարում մատնանշվեց, որ կուսակցությունը, կատարելով Լենինի մշակած ծրագիրը, ապահովել է սոցիալիզմի հիմքի ստեղծումը, ագրարային երկրի վերածումը ինդուստրիալ երկրի, փոշիացած մանրապրանքային արտադրությունից գյուղացիության հիմնական զանգվածների փոխադրումը խոշոր կոլեկտիվ տնտեսության, կուլտուրական հեղափոխության ծավալումը, պաշտպանական հզորության ամրապնդումը։ Ահա թե ինչու կուսակցության XVII համագումարը պատմության մեջ մտավ որպես հաղթողների համագումար։

Դրա հետ մեկտեղ, համագումարում, պատգամավորների ունեցած մի շարք ելույթներում, որոշակիորեն արտահայտվում էր այն միտքը, որ անթույլատրելի են ինքնահանգստացումն ու գոռոզամտությունը։

— Հաջողությունններն իսկապես վիթխարի են մեզ մոտ... մարդ ուզում է ապրել ու ապրել...—ասում էր Ս. Մ. Կիրովը։— Բայց կա մի վտանգ՝ կարելի է այնպես տարվել ամեն տեսակի օրհներգությամբ, որ մոռանաս թե ինչ է կատարվում շուրջդ։ Իսկ առանց ինքնաքննադատության ոչ մի կերպ չի կարելի հեռու մնալ գլխապտույտից։

Համագումարում ընդգծվեց, որ սոցիալիզմը կառուցվում է օբյեկտիվ յուրջ դժվարությունների պայմաններում։ «Գնալով պատերազմը դառնում է անխուսափելի»,—ավում էր Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։ Այդ պայմաններում, առաջվա նման, հարկ եղավ, պաշտպանությանը զգալի միջոցներ հատկացնել։

**1933** թվականի հունվարին սկսվեց կուսակցական զտումը։ Զտման հետևանքով մեկ տարվա ընթացքում կուսակցության անդամների թիվը պակասեց մոտավորապես 23 տոկոսով, սակայն զտման ընթացքում թույլ տրվեցին աղավաղումներ, աշխատանքում եղած թերությունները բացահայտող կոմունիստները, որպես թշնամական ելույթներ ունեցողների վտարվեցին կուսակցությունից։

XVII համագումարում, ինչպես և նախորդ էտապներում, կուսակցությունը (այդ ժամանակ նրանում հաշվվում էր մոտ 1875 հազար անդամ և ավելի քան 935 հազար թեկնածու) նոր խնդիրներին համապատասխանորեն միջոցներ ձեռնարկեց իր շարքերը կազմակերպորեն վերակառուցելու, որն արտահայտվեց կանոնադրության նոր խմբագրության մեջ։ Կանոնադրության մեջ մտցվեց կոմունիստական կուսակցության հակիրճ բնորոշումը, առաջին անգամ մի հատված առանձնացվեց կուսակցական կարգապահության և ներկուսակցական դեմոկրատիայի մասին։ Կուսակցական բջիջների աճի և դրանց դերի բարձրացման նպատակով վերջիններս վերակառուցեցին և դարձան սկզբնական կուսակցական կազմակերպություններ։ Ըստ նախկինում ընդունված որոշումների, համագումարում, ՀամԿ(բ)Կ համակրողների խմբեր ստեղծելու վերաբերյալ կանոնադրության մեջ մի հատուկ կետ ևս մտցվեց։ Այդ խմբերը կազմված էին կուսակցության անդամ չհանդիսացող, բայց գաղափարապես ու կազմակերպորեն նրան հարող մարդկանցից։



Համագումարում բանաձև ընդունվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1933—1937 թվականների երկրորդ հնգամյա պլանի մասին։ Երկրորդ հնգամյա պլանը համակենտրոնացնում էր երկրի նյութական միջոցները, կուսակցության կամքը և մասսաների եռանդը՝ լուծելու հիմնական տնտեսական խնդիրը՝ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերակառուցման ավարտումը։ Համագումարին տված իր զեկուցման մեջ Կույբիշևը այդ առաջադրանքն անվանեց «երկրորդ հնգամյա պլանի նյութական հիմք»։ Այդ խնդրի լուծումը մեծ չափով կախված էր ծանր արդյունաբերությունից, որն առաջատար դեր էր խաղում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ։ Ծանր արդյունաբերությունը, որն արտադրում էր արտադրության միջոցներ (վառելիք, մետաղ, հաստոցներ և այլն), ապահովում էր էկոնոմիկայի բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինումը։ Այսպիսով, այն վերափոխիչ դեր էր խաղում ժողովրդական տնտեսության մեջ։ Պլանով նախատեսվում էր ծանր արդյունաբերության արտադրության ծավալը մեծացնել մոտ 2 անգամ։

Առաջին հնգամյակում արտադրության միջոցների մեծ մասը մնում էր հենց ծանր արդյունաբերության մեջ, ծախսվում նրա ընդլայնման վրա։ Այդպես ստեղծվեց հզոր ինդուստրիալ բազան, որը միաժամանակ տնտեսության մյուս ճյուղերի լայն վերակառուցման անհրաժեշտ պայմանն էր։ Դրա հիման վրա, երկրորդ հնգամյակի պլանում նախատեսվում էր ժողովրդական տնտեսության մեջ մի շարք անհամամասնությունների, մասնավորապես ծանր ու թեթև արդյունաբերության զարգացման տեմպերի, մոտեցում։ Սպառման առարկաների աճման տեմպը ենթադրվում էր ավելացնել ո՛չ միայն առաջին հնգամյակի, այլև ծանր արդյունաբերության զարգացման համեմատությամբ՝ ըստ երկրորդ հնգամյա պլանի։ Նկատի էր առնվում նաև այն, որ գյուղատնտեսության լայն մեքենայացումը գյուղում կապահովի աշխատանքի արտադրողականության ավելի բարձր տեմպ։

Երկրորդ հնգամյա պլանի կատարման վճռական պայմանը նոր տեխնիկայի յուրացումն էր, որը լայնորեն ներդրվում էր ժողովրդական տնտեսության մեջ։ Խոսքը, այսպիսով, վերաբերում էր արտադրության կուլտուրայի բարձրացմանը։ Կուսակցությունը այդ կապակցությամբ դրեց չորս հիմնական խնդիր՝ արտադրության քանակական աճ, արտադրանքի որակի բարձրացում, դրա ինքնարժեքի իջեցում և արտադրության աշխատողների կուլտուրական տեխնիկական մակարդակի բարձրացում։

Արդյունաբերության տեղաբաշխումը երկրորդ հնգամյակի ընթացքում ավելի շատ փոխվեց, քան առաջինում։ Երկրի արևելյան շրջաններում՝ Ուրալում, Սիբիրում, Հեռավոր Արևելքում, Բաշկիրիայում, Ղազախստանում և Միջին Ասիայում, նոր ձեռնարկությունների ինտենսիվ շինարարություն էր ծավալվում։ Այդպես կուսակցությունը միաժամանակ լուծեց ողջ ժողովրդական տնտեսության կոմպլեքսային զարգացման, պաշտպանության համար անհրաժեշտ արևելյան արդյունաբերական բազայի ստեղծման, կենտրոնի և ծայրամասերի միջև ճեղքվածքի վերացման ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական և կուլտուրական զարգացման մակարդակների անհավասարության հաղթահարման միմյանցից բխող խնդիրները։

Կուսակցության նախատեսած տնտեսական և կուլտուրական շինարարության լայն ծրագիրը, աշխատավորության քաղաքական և աշխատանքային

ակտիվության վերելք ստեղծեց։ Երկրորդ հնգամյակի տարիներին առաջացավ արտադրության նորարարների մասսայական շարժում, որը նրա նախաձեռնողի, Դոնեցկի հանքափոր Ալեքսեյ Ստախանովի անունով կոչվեց ստախանովյան։

Այդ տարիներին կառուցվեց և լրիվին վերակառուցվեց 4500 նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություն։ Այդ նշանակում է, որ ամեն օր շարք էր մտնում երկու-երեք գործարան ու ֆաբրիկա։ Այդ թվում այնպիսի հսկաներ, ինչպիսիք Ուրալի և Կրամատորսկի ծանր մեքենաշինական, Լուգանսկի շոգեքարշաշինական և այլ գործարաններ։

Երկրորդ հնգամյակն ապահովեց կարևորագույն արտադրությունների տեխնիկական վերակառուցման ավարտումը։ 1937 թվականին ողջ արդյունաբերության արտադրանքի ավելի քան 80 տոկոսը ստացվում էր նոր ձեռնարկություններից, որոնք կառուցվել կամ վերակառուցվել էին առաջին և երկրորդ հնգամյակներին։

1937 թվականին կոլտնտեսությունները միավորում էին գյուղացիական տնտեսությունների 93 տոկոսը։ Այդպիսով, ՍՍՀՄ-ում գյուղատնտեսության կոլեկտիվացումն ավարտվել էր։

Երկրորդ հնգամյա պլանով նախատեսված ժողովրդական տնտեսության զարգացման մի շարք անհամամասնությունների կրճատման խնդիրները չհաջողվեց լուծել հատկապես ծանր և թեթև արդյունաբերության աճման տեմպերի մերձեցման ոլորտում։ Սրվող միջազգային իրադրության հետևանքով անհրաժեշտ դարձավ կապիտալ ներդրումները մեծացնել ծանր և պաշտպանական արդյունաբերության ոլորտներում (առաջին հնգամյակում պաշտպանության վրա կատարված ծախքերը կազմում էին պետական բյուջեի ծախսերի 5,4 տոկոսը, երկրորդում՝ 12,6)։ Չէր հաղթահարվել նաև գյուղատնտեսության ետ մնալը։ Վերոհիշյալ հնգամյակում հացահատիկի համախառն բերքը մեկ տարում միջին հաշվով ավելի ցածր էր, քան առաջինում և ավելի պակաս, քան 1913 թվականին։ Պլանը թերակատարվեց նաև անասնապահության զարգացման բնագավառում։

Սոցիալիստական կուլտուրայի զարգացման ասպարեզում այդ կարևոր էտապ էր։ Հնգամյակում լուծվեցին սոցիալիստական կուլտուրական հեղափոխության խնդիրները՝ վերացվեց մասսայական անգրագիտությունը, ստեղծվեց ժողովրդական ինտելիգենցիա, գիտության, արվեստի, կուլտուրայի նվաճումները դարձան ժողովրդի սեփականությունը։

Տնտեսական և կուլտուրական հսկայական վերափոխություններն անհրաժեշտաբար պահանջում էին է՛լ ավելի զարգացնել նաև սովետական քաղաքական կարգը։

### ՍՍՀՄ ՆՈՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ԸՆԴՈՒՆՄԱՆ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

1935 թվականի փետրվարի 1-ին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի պլենումում կուսակցության անունից որոշում ընդունվեց սովետների առաջիկա համամիութենական համագումարում առաջարկություն մտցնել ՍՍՀՄ սահմանադրությունը հետևյալ ուղղություններով փոփոխելու մասին.

«ա) ընտրական սիստեմի է՛լ ավելի դեմոկրատացում՝ ոչ լրիվին հավասար ընտրությունները հավասար, բազմաստիճանը՝ ուղղակի, բացը՝ գաղտնի ընտրություններով փոխարինելու իմաստով.



բ) սահմանադրության սոցիալ-տնտեսական հիմունքների ճշտում՝ սահմանադրությունը ՍՍՀՄ-ում դասակարգային ուժերի հարաբերակցությանը (նոր սոցիալիստական ինդուստրիայի ստեղծումը, կուլակության ջախջախումը, կոլտնտեսային կարգի հաղթանակը, սոցիալիստական սեփականության՝ որպես սովետական հասարակության հիմքի, հաստատումը և այլն) համապատասխան դարձնելու իմաստով»։

Կուսակցությունը հսկայական աշխատանք տարավ նոր սահմանադրության նախագիծը պատրաստելու ուղղությամբ։ 1936 թվականի հունիսին այն հրապարակվեց համաժողովրդական քննարկման համար, որը տևեց հինգ ու կես ամիս։ Իսկ նոյեմբերին սովետների VIII արտակարգ համագումարը ընդունեց սահմանադրությունը։ Այդ փաստաթուղթը մարդկության պատմության մեջ առաջին անգամ օրենսդրությամբ ամրապնդեց սոցիալիստական կարգի հաղթանակը։ Սահմանադրության տեքստում ասվում էր, որ ՍՍՀՄ քաղաքական հիմքը աշխատավորների դեպուտատների սովետներն են, որոնք աճել ու ամրապնդվել են կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը տապալելու և պրոլետարիատի դիկտատուրա նվաճելու շնորհիվ։

Սահմանադրությունն արձանագրեց, որ ՍՍՀՄ տնտեսական հիմքը կազմում են տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը, որ հաստատվեց տնտեսության կապիտալիստական սիստեմի լիկվիդացմամբ, արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության վերացմամբ, մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացմամբ։

Սահմանադրության մեջ ամրապնդվեցին ՍՍՀՄ հասարակական ու տնտեսական կառուցվածքի սոցիալիստական հիմունքները, քաղաքացիների հիմնական իրավունքներն ու պարտականությունները։ Զգալի չափով ընդլայնվեցին սովետական ընտրական սիստեմի շրջանակները։ Առաջ (ըստ 1924 թվականի սահմանադրության) մեզ մոտ ընտրությունները բնակչության բոլոր խավերի համար լրիվին հավասար չէին։ Դրանք կատարվում էին բաց քվեարկությամբ և բազմաստիճան էին։ Այդ սահմանափակումները մտցվեցին այն ժամանակ, երբ երկրում դեռևս մնում էին շահագործողական դասակարգերը և արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը (հատկապես գյուղում)։ Այն ժամանակաշրջանում որոշ անհավասարություն գոյություն ուներ բանվորների ու գյուղացիների ընտրական իրավունքներում։ Քաղաքային բնակչությունը, օրինակ, սովետների համամիութենական համագումարի մեկ պատգամավոր ընտրում էր 25 հազար բնակչից, իսկ գյուղականը՝ 125 հազարից։ Այդ ամենը թույլ էր տալիս սոցիալիզմի համար մղվող պայքարի բարդ իրադրության մեջ ապահովել բանվոր դասակարգի ղեկավար դերը։

Քաղաքում ու գյուղում լրիվին սոցիալիստական հարաբերություններ հաստատվելուց հետո այդ սահմանափակումները, հասկանալի է, այլևս հարկավոր չէին։ 1936 թվականի սահմանադրությամբ դրանք վերացվեցին։

Սահմանադրությունն օրենսդրությամբ ամրապնդեց կոմունիստական կուսակցության ղեկավար դերը հասարակության կյանքում։ Սահմանադրության մեջ գրված է, որ կուսակցությունը «աշխատավորների ինչպես հասարակական, այնպես էլ պետական կազմակերպությունների ղեկավար միջուկն է»։

1936 թվականի սահմանադրության գործադրության կապակցությամբ

կուսակցության առջև նոր կազմակերպական խնդիրներ ծագեցին: Ընտրական սիստեմի դեմոկրատացումը հասարակական-քաղաքական կյանքում այնպիսի նշանակալի իրադարձություն էր, որը պահանջում էր վերակառուցել ու բարելավել կուսակցական կազմակերպությունների գործունեությունը: ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1937 թվականի փետրվար-մարտյան պլենումը քննարկեց Ա. Ա. Ժդանովի զեկուցումը՝ նոր սահմանադրության հիման վրա 1937 թվականի դեկտեմբերին կայանալիք ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրություններին կուսակցական կազմակերպությունների նախապատրաստվելու մասին:

Պլենումում ընդգծվեց, որ դեմոկրատացման պրոցեսը կուսակցության ներսում պետք է սկսվի հենց դեմոկրատիայի զարգացմամբ: Որոշվեց վերացնել կոոպտացիայի պրակտիկան (առանց ընտրությունների նոր անդամներ մտցնելը կուսակցական կոմիտեների կազմում), արգելվեց ցուցակով քվեարկությունը կուսակցական ղեկավար մարմիններ ընտրելիս, սահմանվեց, որ այդ ընտրությունները պետք է անցկացվեն գաղտնի քվեարկությամբ: Պլենումում դատապարտվեց դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների՝ անցյալում գոյություն ունեցող խեղաթյուրումները (ՀամԿ(բ)Կ կանոնադրությամբ սահմանված կուսակցական օրգանների ընտրությունների ժամկետների խախտումը, սիստեմատիկորեն հաշվետվություններ չներկայացնելը, ընդհանուր ժողովները կոնֆերանսներով փոխարինելը և այլն):

Պլենումի որոշումների հիման վրա կուսակցությունը լայն գործունեություն ծավալեց: Ամենուրեք, սկսած սկզբնական կազմակերպություններից և վերջացրած երկրամասային, մարզային կոմիտեներով ու միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների կենտկոմներով, անցկացվեցին կուսակցական օրգանների հաշվետվություններ ու ընտրություններ:

Սակայն, դեմոկրատացման կուրսը արգելակվում էր այդ ժամանակներում ստեղծված Ստալինի անձի պաշտամունքով, որի հետևանքով խախտվում էին կուսակցական կյանքի նորմերն ու ղեկավարման սկզբունքները, թույլ էր տրվում իշխանության չարաշահումներ: Դրանք առանձնապես ուժեղացան 1934 թվականի դեկտեմբերի 1-ին Քաղբյուրոյի անդամ, կուսակցության Կենտկոմի և Լենինգրադի մարզկոմի քարտուղար Ս. Մ. Կիրովի չարանենգ սպանությունից հետո:

Այդ ժամանակ Ստալինն առաջադրեց այն թեզը, թե սոցիալիզմի հաջողություններին համեմատ սրվում է դասակարգային պայքարը: Այդ թեզը նա 1937 թվականին կուսակցության Կենտկոմի փետրվար-մարտյան պլենումին տված զեկուցման առանցքը դարձրեց: Մինչդեռ, այդ ժամանակ ՍՍՀՄ-ում շահագործողական դասակարգերը վերացված էին: Այդպիսի պայմաններում այն տեսակետը, թե Սովետական Միությունում՝ հաղթանակած սոցիալիզմի երկրում, գնալով ավելի է սրվում դասակարգային պայքարը, սխալ էր: Այդ թեզը հակասում էր սովետական կարգի էությանը և նույն պլենումում ընդունված «Կուսակցական կազմակերպությունների կողմից նոր ընտրական սիստեմի հիման վրա ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրություններին նախապատրաստվելու և կուսակցական-քաղաքական աշխատանքին համապատասխան վերակառուցվելու մասին» որոշմանը:

ՍՍՀՄ Գերագույն սովետի 1937 թվականի ընտրություններին, ինչպես նաև միութենական ու ինքնավար հանրապետությունների Գերագույն սովետների,



աշխատավորների դեպուտատների տեղական սովետների՝ հետագա տարիներին կատարվող ընտրություններին կուսակցությունն ընթացել է անկուսակցականների հետ բլոկ կազմած: Այդ բլոկն արտահայտում է ՍՍՀՄ հասարակական-քաղաքական կարգի էությունը: Ընտրությունները ցուցադրեցին սովետական մարդկանց բարձր գիտակցականությունը, նրանց համախմբվածությունը կուսակցության շուրջը:

ՍՍՀՄ Գերագույն սովետը, բառի լիակատար իմաստով, ժողովրդի շահերի ու կամքի արտահայտիչն է: Իսկ ժողովուրդն ո՞ւմ էր ուղարկում իշխանության բարձրագույն օրգան: 1120 դեպուտատներից 41,5 տոկոսը բանվորներ էին, 29-ը՝ գյուղացիներ և 29,5-ը՝ սովետական ինտելիգենցիայի ներկայացուցիչներ:

20—30-ական թվականների սկզբին աշխարհում քիչ մարդիկ կային, որ հավատում էին, թե հետամնաց, բոբիկ, սոված, մշտապես իմպերիալիստների նշանակետի տակ գտնվող Ռուսաստանը կկարողանա դիմանալ և դառնալ այնպիսի մի առաջավոր երկիր, որ փարոս հանդիսանա ողջ առաջադեմ մարդկության համար: Բայց մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացումն առաջացրեց հասարակական զարգացման չտեսնված արագ տեմպեր: Մեր հերոսական ժողովուրդը լենինյան կուսակցության ղեկավարությամբ անհամար դժվարություններ հաղթահարեց և կարճ ժամանակում իր հայրենիքը դարձրեց հզոր տերություն: Աշխարհում առաջին անգամ ստեղծվեց սոցիալիստական հասարակություն: Երկրի ներսում տնտեսական մրցության մեջ սոցիալիզմը հաղթեց մնացած բոլոր կացութաձևերին՝ կապիտալիստականին, մանրապրանքայինին և այլն:

Սոցիալիզմը էկոնոմիկային տվեց պլանայնություն՝ մեր կարգի մեծ առավելությունը: Այդ տեսակետից հսկայական նշանակություն ունեցավ ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման հնգամյա պլանների կենսագործումը: Առաջին հնգամյակի ընթացքում ստեղծվեցին նոր կարգի տնտեսական հիմքեր: Այստեղ վճռական դեր խաղացին երկրի ինդուստրացման հաջողությունները և գյուղատնտեսության վերափոխումը: Գյուղում վերջնականապես արմատախիլ արվեց կապիտալիզմը: Երկրորդ հնգամյակում է՛լ ավելի ամրապնդվեցին ու զարգացան սովետական էկոնոմիկան ու հասարակարգը, սոցիալիզմը հիմնականում կառուցվեց:

Արմատապես փոխվեց ո՛չ միայն ժողովրդական տնտեսությունը, այլև բնակչության դասակարգային կազմը: Դեռևս 1928 թվականին Սովետական Միությունում յուրաքանչյուր 100 մարդուց 4—5-ը պատկանում էին բուրժուազիային (հիմնականում կուլակությանը): 30-ական թվականներին շահագործողական դասակարգերն ամբողջովին վերացվել էին: 1937 թվականին 100 մարդուն ընկնում էր միայն 6 մենատնտես, մինչդեռ, դրանից ոչ շատ առաջ, 1928 թվականին համամասնությունը հակառակն էր. այն ժամանակ բնակչության 100 մարդուն ընկնում էր 3 կոլտնտեսական և արհեստագործական կոոպերացիայի անդամ: Բնակչության կազմում բանվորներն ու ծառայողները 1937 թվականին 36 տոկոսից ավելի էին՝ 2 անգամ ավելի, քան 1928 թվականին:

Այդ վերափոխությունների էությունը միայն շահագործողական դասակարգերի ու մասնավոր սեփականության վերացումը չէր: Փոխվել էին նաև

աշխատավորական դասակարգերը։ Մինչև հեղափոխությունը բանվոր դասակարգը զրկված էր արտադրության միջոցներից և, փաստորեն, իրավազուրկ պրոլետար էր։ Իսկ Սովետական Միությունում բանվոր դասակարգը դարձավ երկրի լիիրավ տերը։

Փոխվեց նաև գյուղացիությունը։ Պատմության գիրկն անցան մասնավոր գյուղացիական տնտեսությունները, որտեղ յուրաքանչյուրը միայնակ փորում էր հողը, իսկ նրանց հետ միասին անցավ այն ժամանակը, երբ կուլակները շահագործում էին աշխատավոր գյուղացիներին։ Գյուղացիությունն իր կյանքը կապեց կոլտնտեսությունների հետ։ 1935 թվականին կայացավ հարվածային-կոլտնտեսականների II համագումարը, որն ընդունեց գյուղատնտեսական արտելի նոր կանոնադրությունը՝ կոլտնտեսային կյանքի հիմնական օրենքը։

Փոխվել է նաև ինտելիգենցիան։ Նախկինում նա ծառայում էր շահագործողներին, որոնք նրա գիտելիքներն ու աշխատանքը օգտագործում էին բանվորներին և գյուղացիներին ավելի շատ շահագործելու համար։ Ըստ որում, ինտելիգենցիան զգալի չափով համալրվում էր շահագործող դասակարգերից։ Սովետական երկրում, ուր այդ դասակարգերը այլևս չկան, ինտելիգենտները աճել են ժողովրդից և ծառայում են ժողովրդին։

Խիստ կարճ ժամկետում մեր հայրենիքը ագրարային երկրից դարձավ մեծ ինդուստրիալ տերություն, մանր մենատնտեսային արտադրությունից՝ խոշորագույն մեքենայացված գյուղատնտեսության երկիր, այնպիսի մի երկրից, որի ժողովրդի մեծամասնությունը անգրագետ էր, դարձավ գրեթե համատարած գրագիտության և ամենաառաջավոր, ամենամասսայական կուլտուրա ունեցող երկիր։ Այն պետությունը, որին ծվատում էին դասակարգային և ազգային սուր հակասությունները, դարձավ բացառիկ ամրակուռ։

Լենինյան կուսակցության կամքով, ժողովրդի հերոսական ջանքերով ՍՍՀՄ-ում ստեղծվեց սոցիալիստական հասարակություն, որն ազատ է մարդու կողմից մարդու շահագործումից և ազգային ճնշումից։ Սոցիալիզմը ծնեց հասարակական զարգացման նոր շարժիչ ուժեր՝ բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի գաղափարական-քաղաքական միասնություն, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամություն, սովետական հայրենասիրություն։ Նախորդ պատմությունը չգիտեր այդպիսի հասարակություն։ Ահա թե ինչու սովետների երկիրը դարձավ բանվորական պատվիրակությունների ուխտագնացության վայր։ Յուրաքանչյուր տարի Հոկտեմբերյան հեղափոխության տարեդարձի և Մայիսի 1-ի տոնակատարություններին կապիտալիստական երկրների աշխատավորները ՍՍՀՄ էին ուղարկում իրենց ներկայացուցիչներին։ Վերջիններս ծանոթանում էին սովետական ժողովրդի կյանքին, սոցիալիզմի կառուցման փորձին։

Ընդունելով 1938 թվականի մայիսմեկյան տոնակատարություններին ժամանած արտասահմանյան բանվորական պատվիրակներին, Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Ի. Կալինինը անկեղծորեն ասաց՝ «Մեզ մոտ մեղրածոր ափերով կաթնատու գետեր չեն հոսում։ Այդ բանը չկա։ Մեր պետությունը աշխատանքային պետություն է։ Այդ պետությունը իր աշխատանքն սկսեց թշվառ գոյությունից, եթե պատկերավոր արտահայտվենք՝ Ռոբինզոնի խրճիթից։ Դե, մոտեցե՛ք, դիտեցե՛ք... Միգուցե այստեղ սխալները շատ են։ Ես դա հնարավոր եմ համարում։ Միգուցե մենք երբեմն այն չենք



անում, ինչ պետք է. ես դա հնարավոր եմ համարում։ Բայց ես միայն մի բան եմ ուզում ասել ձեզ՝ ստեղծվում է պրոլետարական աշխարհ...»։

Ընթանալով անհայտ ճանապարհներով, հաղթահարելով հսկայական դժվարություններ ու զրկանքներ, սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ առաջինն իրականացրեց նոր հասարակության վերաբերյալ մարդկանց դարավոր երազանքը։

### ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

1938 թվականին երկիրը թևակոխեց երրորդ հնգամյակը։ Ամեն մի օրը նոր հաջողություններ էր բերում տնտեսության ու կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Սակայն ՍՍՀՄ սահմաններում իրադրությունն ավելի ու ավելի սպառնալից էր դառնում։ Սնուցելով ու խրախուսելով գերմանական ֆաշիզմը, Անգլիայի ու Ֆրանսիայի իմպերիալիստները ձգտում էին նրա ագրեսիան ուղղել Սովետական Միության դեմ։ Նրանք չառարկեցին, երբ Հիտլերը 1938 թվականի մարտին զավթեց Ավստրիան։ Նույն թվականի սեպտեմբերին Մյունխենի կոնֆերանսում Անգլիան, Ֆրանսիան, Գերմանիան և Իտալիան պայմանավորվեցին Չեխոսլովակիային պատկանող Սուդեթի մարզը Գերմանիային հանձնելու մասին։ Մյունխենյան դավաճանությունը աշխարհն ընդհուպ մոտեցրեց նոր համաշխարհային պատերազմին։

Դրությունը սրվեց նաև ՍՍՀՄ հեռավոր-արևելյան սահմաններում։ 1938 թվականի հուլիս-օգոստոսին Կարմիր բանակը ստիպված եղավ հակահարված տալ Խասան լճի շրջանում սովետական տերիտորիայի մի մասը զավթելու ճապոնական միլիտարիստների փորձերին։

Արևմտյան տերությունների մյունխենյան քաղաքականությունը սանձազերծեց ագրեսորի ձեռքերը, խանգարեց խաղաղասեր պետությունների բլոկի ստեղծմանը, բացառեց զավթիչներին կոլեկտիվ հակահարված տալու հնարավորությունը։ Պատերազմը, որ սկսել էին իմպերիալիստական ագրեսիվ պետությունները (Իտալիան՝ Հաբեշստանի դեմ, Գերմանիան և Իտալիան՝ Իսպանիայի դեմ, Ճապոնիան՝ Չինաստանի դեմ), 1939 թվականի գարնան սկզբին ընդգրկել էր 500 միլիոն բնակչություն ունեցող երկրներ։

ՍՍՀՄ միջազգային ու ներքին դրության վերլուծությունը տվեց ՀամԿ(բ)Կ XVIII համագումարը, որը կայացավ Մոսկվայում, 1939 թվականի մարտի 10—21-ը։ Համագումարում ներկայացված էին կուսակցության 1 588 852 կուսանդամ և 888 814 թեկնածու։ Համագումարում քննարկվեց Կենտրոնական կոմիտեի՝ զեկուցող Ստալին, Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի՝ Վլադիմիրսկի, կոմինտերնի գործկոմում ՀամԿ(բ)Կ պատվիրակության՝ Մանուիլսկի, հաշվետվությունները. կուսակցության կանոնադրությունը փոփոխելու Ժդանովի, երրորդ հնգամյա պլանի մասին՝ Մոլոտովի զեկուցումները։

Կենտկոմի հաշվետվության մեջ նշվում էր, որ մյունխենյան քաղաքականությունն անխուսափելիորեն կվերջանա լուրջ ձախողումով։ Հետագա իրադարձությունները ցույց տվեցին, թե որքան ժամանակին ու ճիշտ էր այդպիսի նախազգուշացումը։ Արտաքին հարաբերությունների բնագավառում համագումարը կուսակցության առաջ դրեց հետևյալ խնդիրները՝ այսուհետև ևս վարել խաղաղասիրական և բոլոր երկրների հետ գործարար կապերի ամրապնդման քաղաքականություն. զգուշություն պահպանել, որպեսզի պատերազմի պրո-

վոկատորները մեր երկիրը կոնֆլիկտի մեջ չքաշեն. ամեն կերպ ամրապնդել Կարմիր բանակի և նավատորմի մարտական հզորությունը. ամրացնել միջազգային կապերն ու բարեկամությունը բոլոր երկրների աշխատավորների հետ։

Համագումարում քննարկվեցին մարքս-լենինյան տեսության մի քանի հարցեր։ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ դատապարտվեցին սովետական պետության անէացման վերաբերյալ վնասակար, սխալ հայացքները։ Շահագործողական դասակարգերի վերացման և ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի հետևանքով փոխվում են պետության ֆունկցիաները։ Բայց այն ամենևին էլ չի անէանում։ Իմպերիալիստական թշնամական շրջապատման աճեղ վտանգի դեմ հանդիման անհրաժեշտ էր ամեն կերպ ամրապնդել Սովետական Սոցիալիստական պետությունը և նրա զինված ուժերը։

Հաշվետու զեկուցման մեջ խոսվում էր սովետական ինտելիգենցիայի նկատմամբ ունենալիք վերաբերմունքի մասին։ Քանի որ որոշ տեղերում դեռևս անվստահություն էր զգացվում ինտելիգենցիայի նկատմամբ, կուսակցական կազմակերպությունների առջև խնդիր դրվեց վճռականորեն վերջ տալ դրան։ Նոր ինտելիգենցիան, որ աճել էր ժողովրդից, սերտորեն կապված էր բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության հետ, արժանի էր կուսակցության և պետության լիակատար վստահությանը։

XVIII համագումարը ընդունեց ՀամԿ(բ)Կ կանոնադրությունը նոր խմբագրությամբ։ Սովետական հասարակության դասակարգային կառուցվածքում տեղի ունեցած արմատական փոփոխությունների պատճառով հասունացել էր կուսակցության մեջ ընդունելության պայմանները փոխելու անհրաժեշտությունը։ Վերացվեց բոլոր ընդունվողներին՝ ըստ նրանց սոցիալական դրության, կատեգորիաների բաժանելը և մտցվեց բոլորի համար ընդունելության միասնական պայմաններ ու միանման թեկնածուական ստաժ։ Կանոնադրության մեջ կետ մտցվեց կուսակցության անդամի իրավունքների մասին։ Այնտեղ ասված էր, որ յուրաքանչյուր կոմունիստ իրավունք ունի մասնակցելու կուսակցության քաղաքականության գործնական հարցերի ազատ ու գործարար քննարկմանը կուսակցական ժողովներում ու կուսակցական մամուլում, քննադատելու կուսակցության ամեն մի աշխատողի, ընտրելու և ընտրվելու կուսակցական օրգաններում, պահանջելու անձնական մասնակցություն այն բոլոր դեպքերում, երբ որոշում է կայացվում նրա գործունեության ու վարքագծի մասին, ամեն մի հարցով և ամեն մի հայտարարությամբ դիմելու կուսակցության ուզած ատյանին, ընդհուպ Կենտրոնական կոմիտեին։

XVIII համագումարի ընդունած կանոնադրությունը արտացոլում էր ներկուսակցական դեմոկրատիան է՛լ ավելի զարգացնելու անհրաժեշտությունը։ Նա վերացրեց նախկինում լայնորեն կիրառվող մասսայական զտումները։ Համագումարը արտադրական տիպի ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններին իրավունք վերապահեց վերահսկելու ադմինիստրացիայի գործունեությանը։ Դա նպաստում էր երկրի կյանքում կուսակցության ղեկավար դերի ամրապնդմանը։ Կանոնադրության մեջ մտցվեց նաև «Կուսակցությունը և կոմերիտմիությունը» հատվածը, որ նվիրված էր կոմերիտմիության նկատմամբ կուսակցության ղեկավարության խնդիրներին։

XVIII համագումարը մեծ ուշադրություն նվիրեց կուսակցական կադրերի մարքս-լենինյան դաստիարակության հարցերին, կուսակցական կազմակերպությունների գաղափարական աշխատանքին։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմում, ազգային կոմկուսների կենտկոմներում, երկրկոմներում և մարզկոմներում ստեղծվեցին պրոպագանդայի և ագիտացիայի միասնական բաժիններ, ինչպես նաև դասախոսական խմբեր, զանազան դպրոցների ու կուրսերի միջոցով ընդլայնվեց կուսակցական կադրերի պատրաստման ու վերապատրաստման սիստեմը։ Զգալիորեն ավելացավ մարքս-լենինյան գրականության թողարկումը։ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի՝ 1939—1940 թվականներին հրատարակված երկերի ընդհանուր տպաքանակը 54 միլիոն էր։ Այդ ամենը նպաստում էր կոմունիստների գաղափարական-տնտեսական պատրաստմանը, սովետական ժողովրդի քաղաքական դաստիարակությանը։

ՀամԿ(բ)Կ XVIII համագումարում և կուսակցության հետագա ողջ աշխատանքում կարևոր տեղ գրավեց երրորդ հնգամյա պլանը (1938—1942 թվականներ)։ Քննարկելով սոցիալիզմի կառուցման տնտեսական պրոբլեմները, կուսակցությունը պրակտիկ գործունեության հիմքում, որպես հեռանկար, դրեց իր ժամանակին Լենինի ձևակերպած խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ հասնել ու անցնել առավելագույն զարգացած կապիտալիստական երկրներին։ Երրորդ հնգամյակը պետք է կարևոր քայլ դառնար այդ խնդրի կատարման ճանապարհին։

Հնգամյա պլանի վերաբերյալ համագումարի դիրեկտիվներով ամրապնդվում էր կուսակցության գլխավոր գիծը՝ ծանր արդյունաբերության առավելագույն զարգացման հարցը։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը պետք է աճեր համարյա 2 անգամ, իսկ մեքենաշինությունը, քիմիական արդյունաբերությունը, էլեկտրակայանների կարողությունը՝ ավելի քան 2 անգամ։ Պլանի կատարման համար ավելի շատ միջոցներ էր թողարկվում, քան առաջին և երկրորդ հնգամյակներում միասին վերցրած։

Եթե առաջին հնգամյակը նոր շինարարության հնգամյակ էր, երկրորդը՝ առավելապես նոր արտադրություններ ու նոր տեխնիկա յուրացնելու հնգամյակ, ապա երրորդը՝ բնութագրվում էր ո՛չ միայն այդ երկու գծերով, այլև նրանով, որ զգալիորեն լայնացրեց շինարարական աշխատանքների և նոր տեխնիկայի յուրացման մասշտաբները։ Հնգամյակի երեք ու կես տարվա ընթացքում կառուցվեց և վերակառուցվեց 3 հազար արդյունաբերական ձեռնարկություն։

Կուսակցությունը մեծ ուշադրություն նվիրեց հնգամյակի կատարման կազմակերպական աշխատանքին։ 1938—1940 թվականներին տեղի ունեցան վառելիքի, մետալուրգիական և արդյունաբերական այլ բնագավառների աշխատողների խորհրդակցություններ։ Մի շարք առաջատար տեղամասերում (պաշտպանական արդյունաբերությունում, խոշորագույն ածխահանքերում) ստեղծվեց ՀամԿ(բ)Կ Կենտկոմի կուսկազմակերպիչների պաշտոն։

Սովետական ժողովուրդը խանդավառությամբ պայքարում էր հնգամյա պլանը կենսագործելու համար։ Արտադրության նորարարների շարժումը նոր աստիճանի բարձրացավ։ Կոմունիստները հանդես էին գալիս որպես պրոֆեսիաների համատեղման, բազմահաստոցային սպասարկման և այլ մասսայական ձեռներեցության նախաձեռնողներ։ Կուսակցությունը ստեղծագործության էր մղում նոր մարդկանց, պաշտպանում ու տարածում էր նորարարնե-





2—2839

րի փորձը։ Լայն արձագանք գտավ, օրինակ, արագացված հորատման մեթոդը, որ առաջարկել էր Կրիվոյ Ռոգի հանքափոր Ա. Ի. Սեմիվոլոսը։ Նա մեկի փոխարեն սպասարկում էր 18 հանքախորշ, նորման կատարելով 1200 տոկոսով։ Տոմսկի երկաթուղու մեքենավար Ն. Ա. Լունինի նախաձեռնությամբ սկսվեց տրանսպորտում պրոֆեսիաները համատեղելու շարժում և այլն։

Մինչև 1941 թվականի կեսերը արդյունաբերության համախառն արտադրանքը կազմում էր հնգամյակի վերջին տարվա համար պլանավորվածի 80 տոկոսը, իսկ արտադրության միջոցների արտադրությանը՝ 90 տոկոսը։ Բոլոր ճյուղերում չէր, որ պլանը կատարվում էր հավասարաչափ։ Կուսակցության ստեղծագործական աշխատանքն անցնում էր բարդ պայմաններում։ Հարկ էր լինում, մասնավորապես, հաղթահարել այնպիսի օբյեկտիվ դժվարություններ, որոնք կապված էին պաշտպանության համար զգալի միջոցներ տրամադրելու անհրաժեշտության հետ։ Եթե երկրորդ հնգամյակում պաշտպանության վրա կատարված ուղղակի ծախսերը կազմում էին ՍՍՀՄ պետական բյուջեի ծախսերի մասի 13 տոկոսից էլ պակաս, ապա երրորդ հնգամյակի երեք տարիներին դրանց բաժինը հասավ մինչև 26,4 տոկոսի։

### ՊԱՏԵՐԱԶՄԸ ՆԱԽԱԴՌԱՆՆ Է

Միջազգային դրությունը 1939 թվականին շարունակում էր վատանալ։ Անգլիան և Ֆրանսիան առաջվա նման թույլ էին տալիս իտալա-գերմանական ագրեսիան Եվրոպայում։ Չեխոսլովակիան զավթելուց հետո սկսվեց հիտլերականների ճընշումը Լեհաստանի վրա։ Քանի որ ֆաշիստների լկտի ոտնձգություններն անհանգստացնում էին ժողովրդական մասսաներին, Անգլիայի և Ֆրանսիայի կառավարությունները հարկադրված էին դիվանագիտական մանևրների դիմել։ Նրանք առաջվա նման հույս ունեին համոզելու Հիտլերին Արևմուտքի վրա հարձակվելու աննպատակահարմարությունը և դրա համար փորձեցին նրան վախեցնել անգլո-ֆրանս-սովետական համաձայնություն կնքելու հնարավորությամբ։ Այդպիսին էր իրադրությունը, երբ սկսվեցին Անգլիայի, Ֆրանսիայի և ՍՍՀՄ-ի բանակցությունները գերմանական ագրեսիային հականերգործելու եղանակների մասին։

Բանակցությունների ընթացքում Սովետական Միությունը կանգնած էր իսկական խաղաղասիրական և հետևողական հակաֆաշիստական դիրքի վրա։ ՍՍՀՄ կառավարությունը հաստատակամորեն ուղիներ էր փնտրում Անգլիայի և Ֆրանսիայի հետ պայմանագիր կնքելու համար։ Բայց ռազմական միսիաների բանակցությունները ցույց տվեցին, որ Արևմուտքի երկրները շահագրգռված չեն այնպիսի համաձայնություն կնքելու, որն իսկապես խոչընդոտ լիներ հիտլերյան ագրեսիայի համար, և Սովետական Միության հետ ռազմական համագործակցություն չեն փնտրում։

1939 թվականի ամռանը Արևելքում ակտիվացան ճապոնական իմպերիալիստները։ Նրանք ռազմական գործողություններ սկսեցին Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության դեմ, որի հետ Սովետական Միությունը կապված էր փոխօգնության պայմանագրով։ Խալխին-գոլ գետի շրջանում տեղի ունեցած մարտերին մասնակցեցին Կարմիր բանակի միավորումները։ Օգոստոսին մարտական գործողություններն ամենաբարձր լարվածության հասան։ Միայն սեպտեմբերի սկզբին ՄԺՀ տերիտորիան ազատագրվեց ճապոնական հափշտակիչներից։



Այսպիսով, 1939 թվականի օգոստոսին Սովետական Միությունը երկու ճակատում, պատերազմի սպառնալիքի առաջ էր կանգնած, ըստ որում, առանց դաշնակիցների, մեկուսացված պայմաններում։ Անհրաժեշտ էր վիժեցնել միջազգային ռեակցիայի պլանները, ռեակցիա, որը ձգտում էր ոչնչացնել աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը։ Ուստի, երբ հիտլերյան Գերմանիան առաջարկեց չհարձակվելու պակտ կնքել ՍՍՀՄ-ի հետ, սովետական կառավարությունը պատասխանեց համաձայնությամբ։ Պակտը կնքվեց 1939 թվականի օգոստոսի 23-ին Մոսկվայում։

Կոմունիստական կուսակցության ղեկավարությունը և սովետական կառավարությունը պատրանքներով չէին տարվում Հիտլերի իսկական մտադրությունների վերաբերյալ։ Նրանք գիտեին, որ Գերմանիան, վերջին հաշվով, չի հրաժարվի Սովետական Միության դեմ պատերազմելուց։ Սակայն այն կոնկրետ իրադրության մեջ, որ առաջացել էր 1939 թվականին, անհրաժեշտ էր ստորագրել պայմանագիրը, քանի որ ժամանակ էր շահվում պաշտպանության նախապատրաստվելու համար և վերացվում էր պատերազմի վտանգը երկու ճակատում։

1939 թվականի սեպտեմբերի 1-ին հիտլերյան Գերմանիան հարձակվեց Լեհաստանի վրա։ Անգլիայի և Ֆրանսիայի կառավարությունները հարկադրված էին պատերազմ հայտարարել Գերմանիային։ Սկսվեց երկրորդ համաշխարհային պատերազմը։

Արևմտյան տերությունների մյունխենյան քաղաքականությունը կրախի ենթարկվեց։ Պատերազմ սկսվեց իմպերիալիստական տերությունների միջև։

Խաղաղասիրական ուժերով չհաջողվեց կանխել երկրորդ համաշխարհային պատերազմը։ Սովետների երկիրը, ամենախոշոր խաղաղասեր տերությունը, միայնակ էր, գտնվում էր կապիտալիստական շրջապատման մեջ։

Լեհաստանի պարտության պատճառով Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի վրա կախվեց ֆաշիստական ստրկացման սպառնալիք։ Սովետական Միությունը չէր կարող անտարբեր մնալ այդ մարզերի բնակչության ճակատագրի հանդեպ, մարզեր, որոնք դեռևս 1920 թվականին հափշտակվել էին բուրժուա-կալվածատիրական Լեհաստանի կողմից։

1939 թվականի սեպտեմբերի 17-ին Կարմիր բանակը սահմանն անցավ, որպեսզի պաշտպանության տակ առնի ուկրաինացիների ու բելոռուսների կյանքն ու գույքը։ Կարճ ժամանակում նա կատարեց այդ խնդիրը։ Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ժողովրդական ժողովները, ՍՍՀՄ Գերագույն սովետը միջնորդություն հարուցեցին արևմտյան մարզերն Ուկրաինական և Բելոռուսական հանրապետությունների կազմին միացնելու մասին։ Այդպես տեղի ունեցավ ուկրաինական և բելոռուսական ժողովուրդների միավորումը միասնական սովետական սոցիալիստական պետությունում։

1939 թվականի վերջին Անգլիայի և Ֆրանսիայի իմպերիալիստներին հաջողվեց ֆիննական ռեակցիոներներին պատերազմի հրահրել ՍՍՀՄ-ի դեմ։ Սովետական զորքերի հարձակումը վիժեցրեց իմպերիալիստների դիտավորությունները։ Սկսվեցին խաղաղ բանակցություններ, իսկ այնուհետև՝ 1940 թվականի մարտին ստորագրվեց հաշտության պայմանագիր, որի համաձայն ՍՍՀՄ և Ֆինլանդիայի սահմանագիծը, որ առաջ ձգվում էր Լենինգրադին անմիջականորեն մոտիկ տարածության վրա, ետ քաշվեց դեպի հյուսիս-արևմուտք։

Ժողովրդական մասսաների ճնշման տակ Էստոնիայի, Լատվիայի և Լիտվայի կառավարությունները ստիպված էին փոխադարձ օգնության պայմանագրեր կնքել Սովետական Միության հետ։ Այդ պետությունների ռեակցիոն ուժերը մնացին մեկուսացված, իսկ հեղափոխական ուժերը զարգանալու հնարավորություն ստացան։ Ստեղծվեց հեղափոխական իրադրություն։ 1940 թվականի հունիսին Լիտվայի, Լատվիայի և Էստոնիայի ֆաշիստական կառավարությունները տապալվեցին։ Այդ երկրների աշխատավորները կոմունիստական կուսակցությունների ղեկավարությամբ հանդես եկան սովետական իշխանությունը վերականգնելու պահանջով, որ քաղաքացիական պատերազմի տարիներին խեղդել էին Անտանտի ինտերվենտները։ Լատվիայի և Լիտվայի նորընտիր սեյմերը և Էստոնիայի դուման միջնորդություն հարուցեցին Լիտվական, Լատվիական և Էստոնական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունները ՍՍՀՄ-ին միացնելու մասին, 1940 թվականի օգոստոսին ՍՍՀ Միության Գերագույն սովետը բավարարեց այդ խնդրանքը։

Նույն ժամանակաշրջանում ստեղծվեց Մոլդավական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը։

Ուկրաինական, բելոռուսական և մոլդավական ժողովուրդների միավորումը, սոցիալիստական հեղափոխությունները Մերձբալթիկայում, ինչպես նաև Ֆինլանդիայի հետ սահմանային հարցերի լուծումը ո՛չ միայն մեծ քաղաքական, այլև որոշակի ռազմական նշանակություն ունեցան, որովհետև արևմուտքում նոր սահմանը անցնում էր նախկինից 200—300 կիլոմետր հեռու։

Սովետական մարդիկ նախապատերազմյան տարիներին լուրջ զրկանքների դիմեցին, հսկայական ջանքեր գործադրեցին ՍՍՀՄ հզոր զինված ուժեր ստեղծելու համար։ Առաջին հնգամյակների պլանների կատարումը ստեղծեց երկրի միանգամայն նոր ռազմա-տնտեսական պոտենցիալ։ Արդեն երրորդ հնգամյակի սկզբին երկրի պաշտպանական արդյունաբերությունը տարեկան արտադրում էր ավելի քան 3,5 հազար ինքնաթիռ, 3 հազար տանկ, 5 հազար հրետանային կառուցվածք։ Բանակի և նավատորմի շինարարության վրա հսկայական ծախսերը կատարվում էին այն հաշվով, որպեսզի սովետական երկիրը կարողանա միայնակ դիմանալ կապիտալիստական պետությունների կոալիցիայի դեմ զինված պայքարում։ Դա շատ դժվար խնդիր էր, բայց այն ժամանակ ուրիշ ելք չկար. կապիտալիզմի և սոցիալիզմի ուժերի հարաբերակցությունը միջազգային ասպարեզում խիստ անբարենպաստ էր Սովետական Միության համար, իսկ ֆաշիստական ագրեսիային կոլեկտիվ հակահարվածի կազմակերպման հույսերն ավելի ու ավելի էին նվազում։

Կուսակցությունը հսկայական ուշադրություն էր նվիրում բանակում տարվող աշխատանքին։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմը 1937 թվականի մայիսին անհրաժեշտ համարեց բանակում և նավատորմում ռազմական խորհուրդներ և ռազմական կոմիսարների ինստիտուտ ստեղծել։ Դա զինված ուժերում կուսակցական ազդեցությունն ուժեղացնելու անհրաժեշտությամբ պայմանավորված ժամանակավոր միջոցառում էր։ Հենց այդ ժամանակ էլ խիստ ավելացվեց Կարմիր բանակի թվական կազմը։ Կենտկոմը հատուկ որոշում ընդունեց, որը հեշտացնում էր կարմիրբանակայինների և կրտսեր հրամկազմի ընդունելությունը կուսակցության մեջ։ Զինված ուժերում կուսակցական կազմակերպությունները շատ ավելի արագ էին աճում, քան քաղաքացիական կազմակերպություններում։

1938 թվականին ստեղծվեցին Կարմիր բանակի և Ռազմա-ծովային նավատորմի գլխավոր ռազմական խորհուրդները։ Նրա կազմի մեջ մտան ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամներ, սովետական ականավոր ռազմական հրամանատարներ։ Գլխավոր ռազմական խորհուրդները նախապատերազմյան ժամանակաշրջանում մեծ աշխատանք կատարեցին զինված ուժերի ամրապնդման և ռազմա-տնտեսական ռեսուրսների մոբիլիզացման ուղղությամբ։ 1938—1939 թվականներին զինված ուժերի համալրումով ավարտվեց անցումը տերիտորիալից կադրային սկզբունքին։

1939 թվականի սեպտեմբերի 1-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի արտահերթ սեսիան օրենք ընդունեց ընդհանուր զինվորական պարտականության մասին։ Զորակոչային հասակը իջեցվեց, իսկ պարտադիր ծառայության ժամկետները ավելացվեցին։ 1941 թվականի սկզբին զինված ուժերի թիվը հասավ 4,2 միլիոն մարդու։

1940—1941 թվականներին սովետական զինված ուժերի վերակառուցում կատարվեց։ 1940 թվականի մարտին կուսակցության Կենտկոմի պլենումը քննարկեց Ֆինլանդիայի հետ պատերազմի հանրագումարները։ Պլենումից հետո նրա որոշումների հիման վրա մշակվեց Կարմիր բանակի վերազինման և վերակառուցման լայն ծրագիր։ Վերականգնվեց միանձնյա ղեկավարությունը և վերացվեց զինվորական կոմիսարների ինստիտուտը։ Զորքերի ուսուցումը սկսվեց տարվել այնպիսի պայմաններում, որոնք առավելագույն չափով մոտ էին մարտական իրադրությանը։ Հսկայական կոմպլեքս միջոցառումներ ձեռնարկվեց զինված ուժերն ամրապնդելու և պաշտպանական արդյունաբերությունը զարգացնելու ուղղությամբ։ Իրադրությունը թույլ չտվեց նախատեսված բոլոր միջոցառումներն իրականացնել մինչև Հայրենական մեծ պատերազմը, սակայն ժամանակ շահելը, որը ձեռք էր բերվել 1939 թվականի սովետա-գերմանական պայմանագրի կնքման հետևանքով, օգտագործվեց Սովետական Միության պաշտպանունակությունն ամրապնդելու համար։

Երկրի պաշտպանական հզորությունը որոշվում է նրա ռազմական էկոնոմիկայի ընդհանուր պոտենցիալով։ Իսկ դա կախված էր, մասնավորապես, արդյունաբերության այնպիսի առանձին խաղաղ ճյուղերից, ինչպիսիք են՝ մետալուրգիան, էներգետիկան, մեքենաշինությունը։ Սովետական արդյունաբերության զարգացման համար երրորդ հնգամյակում զգալի դժվարություններ ստեղծվեցին։ Կապիտալ ներդրումների պլանավորման լուրջ սխալները, բանվորական ուժի պակասը, ինժեներա-տեխնիկական կադրերի ոչ ճիշտ օգտագործումը, ղեկավար աշխատանքի առաջ քաշված շատ նոր տնտեսավարների և կուսակցական ղեկավարների փորձի պակասը բացասաբար անդրադարձան մետալուրգիական ձեռնարկությունների և ածխահանքերի աշխատանքի վրա։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմը և Ժողկոմսովետը 1940 թվականին ընդունեցին կարևոր որոշումներ, որոնք ապահովեցին ածխի և մետալուրգիական արդյունաբերության լավագույն աշխատողների նյութական խթանումը և այդ ճյուղերում կապիտալ շինարարության նշանակալի մեծացումը։ Կուսակցական կազմակերպությունները գլխավորեցին սոցիալիստական մրցությունը։

1940 թվականին ընդունվեցին օրենսդրական ակտեր, որոնք ուղղված էին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, չվողների ու գործալիքների դեմ մղվող պայքարին։ Նորից մտցվեցին 8-ժամյա աշխատանքային օր, 7-օրյա շաբաթ, արգելվեց բանվորների և ծառայողների ինքնակամ հեռացումը ձեռնարկություններից։ Ընդունած որոշումներից շատերը այդ ժամանակ կրում էին ժամանակավոր բնույթ, հարուցված էին ռազմական սպառնալիքների մեծացմամբ։

Արդյունաբերության մեջ որակյալ կադրեր պատրաստելու պրոբլեմի լուծման համար 1940 թվականի հոկտեմբերին իրագործվեց պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ռեֆորմը, ստեղծվեցին, այսպես կոչված, պետական աշխատանքային ռեզերվներ, որոնք արդյունաբերության և տրանսպորտի համար կադրեր էին պատրաստում ֆաբրիկա-գործարանային ուսուցման դպրոցներում և արհեստագործական ուսումնարաններում։

1939 թվականի սեպտեմբերին, երբ սկսվեց համաշխարհային երկրորդ պատերազմը, նոր կարևոր որոշումներ ընդունվեցին գոյություն ունեցող և նոր կառուցվող ավիացիոն գործարանների հզորությունն զգալիորեն մեծացնելու մասին։ 1941 թվականի սկզբին մեծացավ ավիա և մոտորաշինարարության արտադրաբազան, իսկ սովետական կոնստրուկտորները ստեղծեցին ռմբակոծիչների, գրոհող, կործանիչ ինքնաթիռների նոր նմուշներ, որոնք մտան Ռազմա-օդային ուժերի կազմի մեջ։ Ճիշտ է, զորքերում նոր ինքնաթիռների ընդհանուր քանակը Գերմանիայի հարձակման պահին դեռևս մեծ չէր, գերակշռում էին հները, բայց արդյունաբերությունն արդեն ձեռնամուխ էր եղել նորերի արտադրությանը։ 1941 թվականի առաջին կեսին ավիացիոն գործարանները թողարկեցին զանազան սիստեմների ավելի քան 2700 ինքնաթիռ։

Մոտավորապես նույնպիսի դրություն էր ստեղծվել նաև տանկերի, հրետանու, ռազմամթերքի թողարկման հարցում։ 1941 թվականի առաջին կեսին արդյունաբերությունը բանակին տվեց «ԿՎ» տիպի 393, «Տ—34» տիպի 1110 տանկ։

Կուսակցությունը վճռական միջոցներ ձեռնարկեց ժողովրդի մոբիլիզացիոն պատրաստականությունն ուժեղացնելու ուղղությամբ։ 1941 թվականին «Պրավդա» թերթի առաջին համարը սկսվում էր «1941-րդ տարին» առաջնորդող մեծ հոդվածով, որը բովանդակում էր ՍՍՀՄ միջազգային ու ներքին դրության վերլուծությունը։ Հոդվածում ընդգծվում էր պաշտպանությունն ամրապնդելու գծով կուսակցության գործունեության նշանակությունը։ «Դրան պետք է ենթարկվի մեր ողջ աշխատանքը, դա պետք է հիրավի դառնա բարձրագույն օրենքը սովետական երկրի յուրաքանչյուր քաղաքացու համար»։ Հոդվածում ճիշտ և հստակ հետևություններ էին արվում ՍՍՀՄ-ի համար վտանգավոր միջազգային իրադարձությունների զարգացման մասին, որոնք թելադրում էին պայքարի անհրաժեշտություն «ինքնահանգստացման և ինքնագոհության դեմ, որոշակի համեստություն մեր նվաճումները գնահատելու հարցում, ոչ միայն մեր, այլև արտասահմանյան առաջավոր փորձի մանրազնին հաշվառում և յուրացում»։

1941 թվականի փետրվարին Մոսկվայում տեղի ունեցավ ՀամԿ(բ)Կ XVIII



կոնֆերանսը։ Օրակարգում դրված էր երեք հարց՝ կուսակցական կազմակերպությունների խնդիրները արդյունաբերության և տրանսպորտի բնագավառում, 1940 թվականի տնտեսական արդյունքները և ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման պլանը 1941 թվականին և կազմակերպական հարցեր։

Ժողովրդական տնտեսության առջև ծառացած խնդիրները պահանջում էին կուսակցական կազմակերպությունների սևեռուն ուշադրությունը արդյունաբերության և տրանսպորտի կարիքների, առանձնապես այն ճյուղերի զարգացման նկատմամբ, որոնք 1941 թվականի սկզբին ետ էին մնում։ ՍՍՀՄ պետպլանի նախագահ Ն. Ա. Վոզնեսենսկու զեկուցման մեջ նշվում էր, որ արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերի վերաբերյալ երրորդ հնգամյակի առաջադրանքները թերակատարվել են։

Կոնֆերանսում քննարկվեցին նոր արտադրական կարողությունների գործադրման, ձեռնարկությունների աշխատանքի կանոնավորման հետ կապված հարցերը։ Կոնֆերանսը պահանջեց վճռական պայքար մղել արդյունաբերության ղեկավարման գործում որոշ ժողկոմատների կողմից ցուցաբերվող բյուրոկրատական մեթոդների դեմ և կուսակցական ու սովետական օրգանների առջև դրեց մի շարք կոնկրետ խնդիրներ։ Հարկավոր էր կանոնավորել սարքավորման, հումքի, նյութերի ճիշտ հաշվառումը, օգտագործումը և պահպանումը, կարգ սահմանել ձեռնարկություններում, կազմակերպել հավասարաչափ, ռիթմիկ, տեխնոլոգիական կարգապահության խստագույն պահպանման վրա հիմնված աշխատանքը։ Կոնֆերանսում հատուկ ուշադրություն նվիրվեց նոր տեխնիկա, նոր մեքենաներ արմատավորելու անհրաժեշտության վրա։ Հավանություն տալով Կենտկոմի և ԺԿԽ-ի ընդունած ժողովրդական տնտեսության զարգացման 1941 թվականի պետական պլանին, կոնֆերանսում հաստատվեց բարձրացված վերահսկիչ թվեր արդյունաբերության մի շարք ճյուղերի համար։

XVIII կուսակցական կոնֆերանսի որոշումների նշանակությունը, մասնավորապես, այն էր, որ նա մատնանշեց լավագույն աշխատողների նկատմամբ խստորեն և հետևողականորեն նյութական խրախուսանք կիրառելու անհրաժեշտությունը։ Կոնֆերանսը գտավ, որ անհրաժեշտ է ղեկավար և ինժեներա-տեխնիկական աշխատողների համար ավելի լայնորեն կիրառել գործարքային սիստեմը։

Կոնֆերանսը լրացրեց Կենտկոմի և Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի կազմը։ Կենտկոմի նոր անդամների թվում կար ռազմական աշխատողների մի մեծ խումբ։

Կուսակցության ջանքերի շնորհիվ 1940 թվականի վերջին և 1941 թվականին նոր վերելք սկսվեց սոցիալիստական արդյունաբերության աշխատանքում։ Դա հատկապես նկատելի էր մետալուրգիայի և ածխարդյունաբերության մեջ, որոնք 1938—1939 թվականներին ետ էին մնում։ Դա նշանակություն ուներ ողջ ժողովրդական տնտեսության համար, քանի որ վերացնում էր այն որոշ թերությունները, որոնք կային իմպերիալիստական ագրեսիան ետ մղելու համար երկրի արդյունաբերական-տնտեսական բազայի նախապատրաստման մեջ։

Նախապատերազմյան տարիներին գյուղատնտեսությունը առաջվանից որոշ չափով հաջող էր զարգանում։ Թեև ոչ լիովին հաջողվեց հաղթահարել

անսասանապահության եռ մնալը և լուծել հացահատիկային պրոբլեմը, այնուամենայնիվ, զգալի պաշարներ կուտակվեցին՝ պատերազմի դեպքում պատրաստ լինելու համար։

Բացի բանակն ու նավատորմը նախապատրաստելուց, կուսակցությունը պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեր մասսաների հայրենասիրական դաստիարակությանը։ Կուսակցական կազմակերպությունների պրոպագանդիստական ու ագիտացիոն աշխատանքում ավելի մեծ նշանակություն էր տրվում սոցիալիստական հայրենիքի պաշտպանության հետ կապված հարցերին։ Կուսակցությունը վճռականորեն հանդես էր գալիս այն պնդումով, որ սոցիալիստական պետության պաշտպանության համար մղվող պատերազմը, ինչպես նաև ազգային-ազատագրական պատերազմներն արդարացի բնույթ ունեն։ Ընդ որում, կուսակցությունը դիմում էր պատմությանը՝ այն հերոսական սխրագործություններին, որ կատարում էին բանվորներն ու գյուղացիները քաղաքացիական պատերազմի տարիներին, երկրի բանվոր դասակարգի պայքարին իր ազատագրության համար, Ռուսաստանի ժողովուրդների հերոսական անցյալին։

Հայրենասիրական թեման նշանակալիորեն զարգացավ նաև սովետական արվեստում։ Գրականության ու արվեստի երկերը կարևոր միջոց դարձան սովետական երիտասարդությանը դաստիարակելու համար, որին վիճակվեց մի քանի տարի անց ֆաշիստական ագրեսորներին դիմակայել մարտադաշտում։ Սովետական հայրենասիրությունը յուրահատուկ հայրենասիրություն է։ Նրանում անբաժանելիորեն զուգակցվում են սերը հայրենիքի հանդեպ և ինտերնացիոնալիզմը, սովետական ժողովրդի ազգային-պատմական և հեղափոխական տրադիցիաները։

Սոցիալիստական վերափոխությունները քաղաքում և գյուղում, սովետական ժողովրդի գաղափարական-քաղաքական միասնությունը, կուսակցության ղեկավարությունը սովետական կարգի անհաղթահարելիության գլխավոր պայմաններն էին։ Դրանում էր կոմունիստական կուսակցության աշխատանքի կարևորագույն հանրագումարը։

Մ. Ի. Կալինինը, 1941 թվականի հունիսի 5-ին հանդես գալով Ռազմաքաղաքական ակադեմիայում, ասել է՝

— Մենք չգիտենք, թե երբ ենք կռվելու. վաղը, թե մյուս օրը. իսկ այդպիսի պայմաններում պետք է պատրաստ լինել այսօր։

Դա ճիշտ դիրքորոշում էր։ Սակայն հետևողականորեն չէր կիրառվում։ Հունիսի 14-ին հրապարակվեց ՏԱՍՍ-ի հաղորդագրությունը, ուր ասված էր, թե «Գերմանիան, ինչպես և Սովետական Միությունը, անշեղորեն պահպանում են սովետա-գերմանական պայմանագրի չհարձակվելու պայմանները»։ Այդ հաղորդման հրապարակումը մամուլում ապակողմնորոշեց սովետական շատ մարդկանց, այդ թվում և զինվորականներին։

Արդի մեծ պատերազմների ընթացքը նախ և առաջ որոշվում է պատերազմող կողմերի հասարակական ու պետական կարգի ամրությամբ, ռեզերվների մոբիլիզացման հնարավորություններով, ժողովուրդների վերաբերմունքով դեպի պատերազմը։ Սոցիալիզմի կառուցման տարիներին Սովետական Միությունը կոմունիստների կուսակցության ղեկավարությամբ անհաղթահա-



րելի ուժ էր դարձել։ Ի վիճակի չլինելով հասկանալու այդ բանը, ֆաշիստական ստրատեգները պատերազմ սկսեցին, դրանով իսկ ստորագրելով իրենց մահվան դատավճիռը։

## Հարցեր զրույցի համար

1. Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՀՄ-ում՝ կուսակցության ու ժողովրդի մեծ նվաճումն է։
2. Կուսակցության գործունեությունը սովետական երկրի տնտեսական ու պաշտպանական հզորությունն ուժեղացնելու ասպարեզում։

ղում եղած բուրժուական նորմերի տարածմամբ է իր համար ճանապարհ հարթում, մի բան, որն առաջին հայացքից տեսանելի չէ, սակայն իր էությամբ հղի է վտանգով։ Հենց այս նկատի ունենալով, հարկավոր է արմատավորել սոցիալիստական կենցաղը, կոմունիստական աշխատանքային տրադիցիաներն ու սովորույթները։ Առանց հին բարքերի, սովորույթների վնասակար մնացուկների ոչնչացման անհնարին է կոմունիզմի կառուցումը։

Կուսակցական կազմակերպությունների գաղափարական աշխատանքն ուղղված է աշխատավորների ստանձնած պարտավորությունների կատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնիկական առաջադիմության արագացման, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների խնայողության հասնելու նպատակին։ Դեռևս երկրի տնտեսության վերականգնման և զարգացման առաջին շրջանում Լենինը ցույց էր տալիս, որ հարկավոր է ուշադրությունն ուղղել այն բանին, որ ամբողջ ագիտացիան ու պրոպագանդան փոխադրվի տնտեսական շինարարության ռելսերի վրա։

Այժմ գաղափարական աշխատանքի միջոցով կուսակցական կազմակերպությունները աշխատավորներին ցույց են տալիս նրանց տեղն ու դերը, յուրաքանչյուրի կոնկրետ առաջադրանքը՝ ընդհանուր խնդիրների լուծման գործում։ Նրանք գաղափարական շատ խնդիրների մեջ առանձնահատուկ ուշադրություն են նվիրում աշխատանքի նկատմամբ գիտակցական, կոմունիստական վերաբերմունք դաստիարակելուն, կոմունիստաբար աշխատելու սովորույթ մշակելուն։

Կոմունիստական գաղափարայնության ձևավորման հիմնական ասպարեզը աշխատանքն է։ Մարդու բարձր գաղափարայնությունը չի որոշվում միայն տեսական պատրաստությամբ. գաղափարայնությունը ենթադրում է որդեգրած գաղափարների կիրառումը պրակտիկ գործունեությամբ։ Կոմունիզմի գաղափարներին նվիրվածությունը, կոմունիստական գաղափարայնությունը ոչ թե կոմունիզմին հասնելու համոզվածության մեջ է, այլ նրա կառուցման գործին ակտիվորեն մասնակցելու մեջ։ Լենինը դա համարում էր համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող խնդիր։ Նա կուսակցությանը կոչ էր անում ստեղծելու աշխատանքային նոր կարգապահություն, մարդկանց միջև հասարակական հարաբերությունների նոր ձևեր, նրանց աշխատանքի մեջ ներգրավելու նոր եղանակներ ու մեթոդներ և կանխատեսում էր, որ աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի դրսևորումը, հասարակական շահը անձնականից բարձր դասելու հասկացողությունը կդառնան սովետական մարդկանց մասսայական աշխատանքային հերոսության կենարար աղբյուրները։

Հատկապես երիտասարդության շրջանում տարվող գաղափարական գործունեությունը առնչվում է կոմունիստական բարոյականության պահանջներին, քանի որ կոմունիստական դաստիարակությունը միաժամանակ բարոյական դաստիարակություն է։ Կուսակցական կազմակերպություններն իրենց հիմնական խնդիրն են համարում կոմունիստական բարոյականության նորմերը յուրաքանչյուր երիտասարդի ներքին համոզմունքը դարձնելը։ Իսկ դա նշանակում է՝ յուրաքանչյուր օր ներդրում կատարել կոմունիզմի կառուցման գործում։ Նրանք ելնում են Լենինի այն ցուցումից, որ մասնակցել նոր հասարակարգի կառուցմանը, նշանակում է իր աշխատանքը, իր ուժերը նվիրել ընդհանուր գործին։ Միայն այդպիսի աշխատանքի մեջ երիտասարդ մարդը կամ աղջիկն իսկական կոմունիստ է դառնում։ Միայն այն դեպքում են նրանք

կոմունիստ դառնում, եթե այդ աշխատանքով կարողանում են գործնական հաջողությունների հասնել (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 362—363)։

Այն ժամանակ, երբ մեր կուսակցությունը նոր հասարակարգի կառուցման կարևոր պայմաններից մեկը համարում է նոր մարդու դաստիարակությունը, ժամանակակից կապիտալիստական հասարակարգում դասակարգային անտագոնիստական հակասությունների սրումը, հոգևոր հիմքերի ճգնաժամը, դրական իդեալների բացակայությունը բուրժուազիայի ռեակցիոն գաղափարախոսներին բերում է այն բանին, որ նրանք ժխտում են հասարակության և անհատի առաջադիմությունը, խոսում են բարոյականության հավերժական սկզբունքների մասին, փորձում ապացուցել, որ մարդկային բնավորությունը անկախ է սոցիալական պայմաններից ու հավիտենական անփոփոխ է։ Նրանց մեծամասնությունը մարդու հոգևոր զարգացումը համարում է պատրանք։ Նրանք պնդում են, որ մասսաներն իրենց գործողություններում մեջ ղեկավարվում են միայն խորտակող, ավերող բնազդներով և նրանց լուսավորելը միանգամայն անհնարին է։ «Մենք չպետք է ձգտենք համոզել մեզ,— հայտարարում է ֆրանսիական էկզիստենցիալիստ Գ. Մարսելը,— որ իբր մասսաների լուսավորումը հնարավոր է. դա ներքին հակասությունն է։ Միայն մեկ անհատը կամ ավելի ճիշտ անձն է ենթարկվում լուսավորման։ Դրանից դուրս միայն վարժեցման (дрессировка) համար է տեղ մնում» («Капитализм против человека», Политиздат, 1963, стр. 134)։ Մեր երկրում սոցիալիստական շինարարության պրակտիկան ցույց տվեց, թե որքան սնանկ են Մարսելի վերոհիշյալ պնդումները։

Կոմունիստական հասարակարգի կառուցման կարևորագույն գործոնը սովետական մարդկանց բարձր գաղափարայնությունն է, նրանց գաղափարական համոզվածությունը։ Դա այն հիմքն է, որի վրա սովետական մարդը դաստիարակվում է աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի, նախաձեռնության, բարձր ակտիվության, սիրո և հարգանքի ոգով։

Կոմունիստական հասարակարգի կառուցման ներկա ժամանակաշրջանում սովետական մարդկանց բնորոշող գլխավոր հատկանիշը կոմունիստական գաղափարայնությունն է։



Կ. ԴԵՄԻՐՃՅԱՆ

ՀԿԿ Երևանի քաղկոմի քարտուղար

# ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԸ ԵՎ ՄԵՐ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

Այժմ, երբ Սովետական Միությունը դուրս է եկել համաշխարհային լայն շուկա և մրցապայքարի մեջ մտել առավել զարգացած կապիտալիստական երկրների հետ, շատ կարևոր է, որ մեր արտադրամիջոցներն ու ողջ արտադրանքը ոչ միայն չզիջեն օտարերկրյա նմուշներին, այլ որակով գերազանցեն դրանց։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման հանգուցային հարցերից մեկը՝ արտադրանքի որակի առավել բարելավումն է. որակի, հուսալիության և երկարակեցության բարձրացումը հավասարազոր է առանց կապիտալ ներդրումների արտադրանքի ծավալի ավելացմանը։ Հիրավի, թողարկվող արտադրանքի որակը մեծածավալ և բազմակողմանի ցուցանիշ է։ Նրա մեջ արտացոլվում են ձեռնարկության ողջ կոլեկտիվի արտադրական գործունեության ուժեղ և թույլ կողմերը։ Դրա մակարդակով կարելի է գնահատել արտադրության տեխնիկական զինվածության աստիճանը, կադրերի որակավորման, աշխատանքային կարգապահության և արտադրության կուլտուրայի վիճակը ձեռնարկություններում։ Այն համարյա ճիշտ պատկերացում է տալիս ձեռնարկության ինժեներա-տեխնիկական և ղեկավար կադրերի հասունության, նրանց գործիմացության վերաբերյալ։

Որակի, հուսալիության և երկարակեցության արմատական բարելավման ռեալ հնարավորություններ կան յուրաքանչյուր արտադրական ձեռնարկությունում։ Այդ համոզիչ կերպով ապացուցեցին Մոսկվայի և Լենինգրադի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք դարձան համաշխարհային ստանդարտների պահանջները բավարարող արտադրանքի թողարկման համար ծավալված սոցիալիստական մրցության նախաձեռնողները։

Այս դեպքում մենք մտադիր չենք անդրադառնալ որակի բարձրացման այն մասնակի հաջողություններին, որոնք առկա են մայրաքաղաքի մի շարք ձեռնարկություններում։

Մեզ այսօր խորապես հուզում է այն իրողությունը, որ Երևանի արդյունաբերական որոշ ձեռնարկությունները դեռ թողարկում են անորակ, հնացած կոնստրուկցիաների և ցածր սպառողական արժեք ունեցող արտադրանք։ Խո-

*տան և անորակ արտադրանքի հետևանքով մեծ են անարտադրողական ծախ-
սերը, որոնք միայն 1965 թվականին կազմել են 247,4 հազար ռուբլի, խոտա-
նից առաջացած կորուստները՝ 930 հազար։ Ընթացիկ տարվա ինն ամսվա ըն-
թացքում միայն խոտանից առաջացած կորուստը կազմում է ավելի քան 761
հազար, իսկ անարտադրողական ծախսերը՝ 1.405 հազար ռուբլի։*

*Դեռևս ցածր է արտադրության կուլտուրան. հաճախ են խախտվում տեխ-
նոլոգիական կարգապահությունն ու տեխնիկական պայմանները։ Շատ գոր-
ծարաններում ընկած է աշխատանքային կարգապահությունը, որի հետևան-
քով խախտվում է ձեռնարկության ռիթմիկ աշխատանքը, թողարկվում ան-
որակ արտադրանք։ Արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուս-
կազմակերպությունները դեռևս չեն հասել նրան, որպեսզի բարձրորակ ար-
տադրանքի համար պայքարը դառնա ողջ կոլեկտիվի գործը։*

*Չնայած որոշ հաջողություններին, առայժմ ցածր է լայն սպառման առար-
կաների որակը։ Առևտրի մինիստրության ապրանքների որակի պետական
տեսչության կողմից 1965 թվականին ստուգված սննդամթերքներից խոտան-
վել են գինիների 15,3 տոկոսը, կոնյակների՝ 31,3, մակարոնեղենի՝ 15,2, պա-
նիրների՝ 15,8, հալած յուղի՝ 57,3 տոկոսը և այլն։ Սա նշանակում է, որ մի
շարք ձեռնարկություններում միանգամայն վատ է ու անմխիթար գործերի
վիճակը, որը չի կարող լուրջ մտահոգություն չպատճառել կուսակցական կազ-
մակերպություններին և տնտեսավարներին։ Կոմունիստները պետք է ամեն-
ուրեք հանդես գան որպես արտադրանքի որակի, հուսալիության և երկարա-
կեցության բարձրացման պայքարի առաջամարտիկներ։*

*Որակի բարձրացման և նոր արտադրատեսակների թողարկման գործը
պահանջում է գիտության և արտադրության սերտ կապ, օպերատիվ, մտած-
ված աշխատանք՝ սկսած նախագծից մինչև ներդրումը։ Կուսակցական կազ-
մակերպություններն այս հարցում պետք է լինեն խիստ հետևողական և պա-
հանջկոտ, որպեսզի նախագծերն ու տեխնիկական փաստաթղթերը պատրաստ-
վեն բարձր որակով, ժամանակին, կիրառվեն անթերի, ապահովելով անհրա-
ժեշտ տնտեսական արդյունք։*

*Երևանի կուսակցական կազմակերպության ինչպես շրջկոմները, այնպես
էլ քաղաքային կոմիտեն դեռևս չեն հասել այն բանին, որպեսզի նոր արտա-
դրանքների յուրացումը պատշաճ բարձրության վրա դրվի յուրաքանչյուր ձեռ-
նարկությունում, դառնա գործարանի կուսակցական կազմակերպության գլխա-
վոր հոգսը, գործնական սերտ կապ ստեղծվի նախագծող և յուրացնող-արտա-
դրող հիմնարկ-ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների
միջև։ Ուստի, անհրաժեշտ է գիտահետազոտական ինստիտուտների և ձեռնար-
կությունների կուսակցական կազմակերպությունները աշխատեն համագոր-
ծակցված, հաճախ միացյալ միջոցառումներ մշակեն նոր նախագծերն արագ
իրականացնելու համար։ Հարկավոր է անցկացնել նախագծող և յուրացնող
ձեռնարկությունների միացյալ գիտական սեսիաներ, տեխնիկական ինֆոր-
մացիայի լայն փոխանակում և այլ միջոցառումներ։*

*Սխալ կլիներ կարծել, թե ձեռնարկության նամենկլատուրայի մեջ մտնող
արտադրանքները հնարավոր է միանգամից փոխարինել նորերով։ Դրա հա-
մար ժամանակ է պահանջվում։ Բայց կրկնակի սխալ է նաև այն, որ որոշ
ձեռնարկություններ տարիներ շարունակ չեն կատարելագործում արտադրվող
իրերի արտադրության տեխնոլոգիական պրոցեսները, նրանց կոնստրուկտիվ*



*էլեմենտներն ու այլ հանգույցներ, չեն մտահոգվում արտադրանքի որակի
բարձրացմամբ։ Այսպես, էլեկտրաճշգրիտ չափիչ սարքերի գործարանը երկար
տարիներ արտադրում է «Մ—24» տիպի սարքը։ Թվում է, թե տասը տարի
շարունակ արտադրվող այդ սարքի արտադրության տեխնոլոգիական պրոցես-
ներն այնքան պետք է հղկված ու ճշգրտված լինեն, որ գործարանը թողարկեր
բարձրորակ արտադրանք և իջներ դրա ինքնարժեքը։ Մինչդեռ այստեղ ար-
տադրված և փորձարկվող յուրաքանչյուր 4 սարքից 1-ը խոտանվում էր։
Ավելին, այդ սարքերի նկատմամբ բողոքարկումները (հետևապես և տու-
գանքները) 1965 թվականի 0,8 տոկոսից հասել են 1,8-ի։*

*Երբ գործարանի դիրեկտոր Հ. Կարապետյանին կշտամբում են ցածրորակ
արտադրանքի համար, նա հանգիստ պատասխանում է. «Եթե «Մ—24» տիպի
սարքերը լավ չեն, ապա ինչո՞ւ են պատվիրատուները գնում»։ Նա մոռանում
է, որ այդ տիպի սարքեր Միության մյուս գործարանները չեն արտադրում,
հետևաբար, պատվիրատուները ստիպված գնում են։*

*Նույնն է վիճակը Երևանի սարքաշինական գործարանում։ Գործարանի
ղեկավարները հրաժարվելով մասնագիտացման սկզբունքներից, ընկել են
իրենց ուժերից վեր նոր արտադրատեսակների յուրացման հետևից, մոռա-
նալով, որ թողարկած անորակ 825 սարքի համար ստացվել են բողոքներ։*

*Արտադրանքի որակի, հուսալիության և երկարակեցության բարձրա-
ցումն ապահովելու լավ նախադրյալներ են արտադրական բարձր կուլտուրան,
տեխնոլոգիական և աշխատանքային բարձր կարգապահությունն ու ձեռնար-
կության ռիթմիկ աշխատանքը։ Սակայն քաղաքի շատ արդյունաբերական
ձեռնարկությունների կուսկազմակերպություններ այս հարցում անհրաժեշտ
ակտիվություն և պահանջկոտություն չեն ցուցաբերում։ Կան կազմակերպու-
թյուններ, որոնք խորամուխ չեն լինում արտադրության պրոցեսների մեջ,
այդ հարցերով զբաղվում են մակերեսորեն։ Օրինակ, Երևանի Ֆ. Է. Ձերժին-
սկու անվան հաստոցաշինական գործարանում գրոհայնության և տեխ-
նոլոգիական կարգապահության խախտումների պատճառով, 1965 թվականին
խոտանից առաջացած կորուստները կազմեցին 30 հազար ռուբլի։ Այս տարվա
միայն առաջին եռամսյակում դրանք համապատասխանաբար կրկնապատկվել
են։ Մեծ են անարտադրողական ծախսերը, ցածր է աշխատանքային կարգա-
պահությունը։ Միայն գործալքումները 1965 թվականին կազմել են 7232 մարդ-
օր, այսինքն գործարանի տարեկան փաստացի աշխատաժամանակի 3 տոկո-
սը։ Այս տարվա 9-ն ամսվա ընթացքում, անցյալ տարվա նույն ժամանակա-
միջոցի համեմատությամբ, գործալքումները զգալիորեն ավելացել են։ Ցածր է
արտադրամասերի, ծառայությունների պետերի, վարպետների ու բաժնի վարիչ-
ների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Գործա-
րանում տեխնոլոգիական ռեժիմի խախտումները սովորական երևույթ են.
ավելացել են բողոքները։ Վատ է տեխնիկական վերահսկողությունը։ ՏՎԲ-ի
(տեխնիկական վերահսկողության բյուրո) արտադրամասային աշխատանքի
տեղերը հարմարեցված և հագեցված չեն անհրաժեշտ չափիչ սարքավորում-
ներով, ստանդարտ չափիչների մի մասը չեն ստուգվում պարբերաբար։ Գյու-
տարարական առաջարկությունները վատ են ներդրվում արտադրության մեջ։*

*Որակի առումով անմխիթար է վիճակը Երևանի կահույքի ֆաբրիկաներում,*

որոնց համար անհամաչափ աշխատելն ու ցածրորակ արտադրանք թողարկելը ընդհանուր երևույթ է: Դեռևս 1965 թվականին որակի տեսչության կողմից անցկացվող ստուգման ժամանակ ներկայացված կահույքի բոլոր 443 միավորներն էլ խոտանվել են, 1966 թվականի մարտին ներկայացված 107 միավորից խոտանվել է 42-ը կամ 40 տոկոսը:

Արաբկիրի կահույքի ֆաբրիկայում, զարդուղի ճանապարհներով, մեծ թերություններ ունեցող կահույքը մտցրել են պլան-կատարողականի մեջ և պահեստավորել: Պետական կարգապահության նման խախտումից հետո ֆաբրիկայի դիրեկտոր ընկ. Զաքարյանը հրամայել է ՏՎԲ-ի պետին ու մյուս ենթականերին՝ վերացնել պահեստում գտնվող կահույքի թերությունները (որը հնարավոր չէ), կատարել գների իջեցում, որից ֆաբրիկան կրել է մոտ 7000 ռուբլու վնաս: Ի՞նչ կպատասխանեն դիրեկտոր Զաքարյանն ու ՏՎԲ-ի պետ, կոմունիստ Կարապետյանը, եթե հարցնեն՝ ո՞ւմ հաշվին եք վերագնահատում արտադրանքը, որտե՞ղ էիք խոտան թողարկելիս:

Արտադրանքի որակը բարձրացնելու համար կուսակցական կազմակերպությունները պետք է մոբիլիզացնեն կոլեկտիվների ողջ ուժերը: Չէ՛ որ սերիական արտադրությունը պահանջում է արտադրական բոլոր օղակների համաչափ և որակյալ աշխատանք՝ բարձր կարգապահություն և պատասխանատվություն գործի նկատմամբ:

Նոր արտադրատեսակների յուրացումը, դրանց որակի և հուսալիության բարձրացումը պայմանավորված են ձեռնարկություններում օժանդակ և հիմնական արտադրությունների ճիշտ հարաբերակցությամբ: Մինչդեռ այդ հարցին գրեթե ուշադրություն չեն դարձնում, որից և տուժում է ընդհանուր գործը: Ավտոպահեստամասերի գործարանում ցածրորակ արտադրանքի հիմնական պատճառներից մեկն այն է, որ այստեղ գործիքային արտադրամասն ապահովում է տեխնոլոգիական սարքավորումների պահանջի միայն 60 տոկոսը, որի պատճառով մեխանիկական արտադրամասերում բացակայում են տեխնոլոգիական սարքավորումների կրկնօրինակները. բանվորները աշխատում են հնացած ու մաշված սարքավորումներով:

Ձեռնարկությունների կուսկազմակերպությունների և շրջկոմների առաջնահերթ խնդիրն է՝ առաջիկայում լուրջ ուշադրություն դարձնել արտադրության թիկունքի և յուրացման բազայի ընդլայնման հարցին: Որքան մեծ լինի գործիքային և մյուս օժանդակ արտադրամասերի տեսակարար կշիռը ողջ ձեռնարկության կազմում, այնքան մեծ կլինի արտադրական հիմնական արտադրամասերի արտադրողականությունը և բարձր՝ արտադրանքի որակը:

Որակի հուսալիության և երկարակեցության բարձրացման խնդրի լուծումը կախված է կադրերից, նրանց մասնագիտական պատրաստականությունից ու նվիրված աշխատանքից: Ուստի անհրաժեշտ է բարձրացնել յուրաքանչյուր ձեռնարկության գլխավոր կոնստրուկտորի, գլխավոր տեխնոլոգի ու մյուս գլխավոր մասնագետների, բաժինների դերն ու պատասխանատվությունը: Կուսակցական կազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որպեսզի այս ծառայությունները կոմպլեկտավորվեն որակյալ մասնագետներով, արտադրության անմիջական կազմակերպիչները, արտադրամասերի պետերը և լաբորատորիաների վարիչները, մի խոսքով ողջ հրամանատարական կազմը՝ անընդհատ կատարելագործի իր արտադրական որակավորումը, ունենա մասնագիտական կրթություն և աշխատանքային փորձ:



Անհանդուրժելի է, երբ մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների գլխավոր տեխնոլոգների և կոնստրուկտորական բաժինների պետերի 15,4 տոկոսը տեխնիկներ են, իսկ 18,2-ը՝ պրակտիկներ: Ինժեներական պաշտոնների 30,3 տոկոսը ունեն միջնակարգ մասնագիտական կրթություն, իսկ 24-ը՝ պրակտիկներ են: Նույնը կարելի է ասել նաև արտադրամասերի և նրանց լաբորատորիաների պետերի մասին, որոնց 28,9 տոկոսն ունի միջնակարգ մասնագիտական կրթություն, իսկ 32,7-ը՝ պրակտիկներ են:

Խոտանը և ցածրորակ արտադրանքը մասամբ արդյունք են նաև տեխնիկական անբավարար վերահսկողության: Հետևապես, կուսակցական կազմակերպությունները պետք է մոտիկից զբաղվեն ձեռնարկությունների ՏՎԲ-ների և լաբորատորիաների աշխատանքի բարելավմամբ: Արտադրության տեխնիկական վերահսկողության այդ օղակները անհրաժեշտ է կոմպլեկտավորել բանիմաց և բարեխիղճ ինժեներա-տեխնիկական աշխատողներով:

Ձեռնարկության առաջ ծառացած բոլոր գլխավոր հարցերը, առավել ևս արտադրանքի որակի բարձրացման հարցը հնարավոր է լուծել միայն կոլեկտիվի ուժերով: Ամենից առաջ պետք է հոգալ արտադրության կուլտուրան բարձրացնելու, բանվորների աշխատանքային, կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու, արտադրություն եկող երիտասարդներին դաստիարակելու ու աճեցնելու, նրանց մշտապես արտադրության հետ կապելու համար: Արտադրական ամուր կոլեկտիվների ստեղծմանն արգելակում է կադրերի հոսունությունը, որին կարելի է վերջ տալ աշխատողներին հոգատարությամբ շրջապատելու, նրանց կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու միջոցով: Դրա լավագույն ապացույցն է Երևանի էլեկտրալամպերի գործարանի օրինակը: Արտադրության բարձր կուլտուրան, սանիտարական լավ վիճակը, բանվորների կուլտուրական ժամանցի կազմակերպումն ու անցկացումը դրական արդյունքներ են տվել: Գործարանի կուսկոմն ու դիրեկցիան հատուկ ուշադրություն են նվիրում մսուր-մանկապարտեզների, բուժսպասարկման օբյեկտների կառուցման վրա:

Որակի, հուսալիության և երկարակեցության բարձրացման կարևոր խթաններից մեկն էլ ձեռնարկությունների նյութական շահագրգռվածությունն է: Արտադրական ձեռնարկությունը պետք է փոխհատուցում ստանա բարձրորակ, նոր, առավել բարձր սպառողական արժեք ունեցող ապրանք թողարկելիս: Ընդսմին հարկավոր է հաշվի առնել, որ նոր արտադրատեսակների յուրացման պրոցեսը կապված է լրացուցիչ ծախսերի, սարքավորումների և հաստոցային որակի որոշակի նորացման հետ: Պլանավորող օրգանները պետք է հրաժարվեն ինքնարժեքի պլանավորման այն արատավոր ոճից, երբ, առանց հաշվի առնելու ձեռնարկության արտադրանքի ստրուկտուրային տեղաշարժերը, ավտոմատորեն իջեցնում են 1 ռուբլի ապրանքային արտադրանքին ընկնող ծախսերը: Ինքնարժեքի պլանավորման ժամանակ անհրաժեշտ է սահմանել այնպիսի գներ, որոնք օբյեկտիվորեն նպաստեն ձեռնարկությունների շահութաբերության բարձրացմանը:

Սակայն գնագոյացման գործում լրիվ չենք հրաժարվել սուբյեկտիվիզմից և կամայականություններից: Նորաստեղծ «Երազ» գործարանի ավտոմոբիլ-ֆուրգոնների ժամանակավոր գները սահմանելիս թույլ են տրվել այնպիսի սխալներ, որոնք որոշակի դժվարություններ են առաջացնում գործարանի աշխատանքում:

Արտադրանքի արտադրության տեխնիկական պայմանների և գների հաստատման դանդաղումը ևս վնասում է գործին։ Երևանի տրիկոտաժի № 1 ֆաբրիկան մշակել էր կանացի բրդյա շրջազգեստի նոր նմուշ, որն ունի բավականին հաճելի ձև ու գունավորում, ուստի և մեծ պահանջարկ։ Ֆաբրիկան այդ մշակումը կատարել էր այն հաշվով, որպեսզի զգեստի սեզոնին հասցներ դրա մասսայական թողարկումը։ Սակայն մինչև այժմ մեծ պահանջարկ ունեցող այդ զգեստի գինը հաստատված չէ։ Ավելին, միայն նոր են հայտնում, որ գինը պետք է հաստատվի ոչ թե հանրապետությունում, այլ Մոսկվայում։ Բայց չէ՞ որ մինչև գինը հաստատվի, պահանջարկը կարող է փոխվել։ Այսպիսի օրինակները բազմաթիվ են։

Որակի հուսալիության և երկարակեցության բարձրացման գործին մեծ չափով նպաստում է նաև յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվի ու նրա անդամների նյութական շահագրգռվածությունը։ Արտադրական նորմաների ճիշտ որոշումը, աշխատանքի ճիշտ վարձատրությունը խթանում են աշխատողին բարձրորակ արտադրանք տալու։ Ավելին, աշխատավարձի ճիշտ քաղաքականությունը մարդկանց մեջ առաջացնում է շահագրգռվածություն։ Ճիշտ է, քաղաքի շատ արդյունաբերական ձեռնարկություններում այս գործը բավարար է։ Սակայն, որպես ընդհանուր թերություն, անհրաժեշտ է նշել, որ դեռևս բոլոր ձեռնարկություններում չէ, որ արտադրության մեջ ներդրվում են տեխնիկապես հիմնավորված նորմաներ և դեռ չեն վերացվել աշխատանքի վարձատրման գործում եղած թերությունները։

Վերաբերմունքը որակի հանդեպ, դա, ամենից առաջ, բարձր պատասխանատվության զգացում է։ Դա, միաժամանակ, աշխատողի պահանջկոտության դրսևորումն է իր և իր ընկերների աշխատանքի նկատմամբ, դա երկաթյա կարգապահություն է արտադրության բոլոր օղակներում։ Այս նկատառումով էլ ձեռնարկության յուրաքանչյուր աշխատող, սկսած բանվորից մինչև դիրեկտորը, պետք է պատասխանատվություն կրի ցածրորակ արտադրանքի համար։ Որակի վերահսկողության ռեգլամենտը պետք է պարտադիր լինի բոլորին։ Ով կփորձի խախտել տեխնոլոգիական և աշխատանքային կարգապահությունը, պետք է պատասխան տա կոլեկտիվի և հասարակության առջև։

Արտադրանքի որակի համար մղվող պայքարի առաջամարտիկներն են կուսակցական կազմակերպությունն ու կոմունիստները։ Ցավոք, մայրաքաղաքի սկզբնական կուսակցական կազմակերպություններն իրենց աշխատանքներում դեռևս ունեն լուրջ բացեր ու թերություններ։ Շատ գործարանների ու ֆաբրիկաների սոցիալիստական պարտավորություններում որակի մասին գրեթե բան չի ասված, սոցիալիստական մրցությունը չի ուղղված նաև արտադրանքի որակի բարձրացմանը։ Բարձրորակ արտադրանք տվողը բարոյապես և նյութապես քիչ է խրախուսվում։

Արտադրանքի որակը նրա սպառողական արժեքի հիմնական մասն է։ Այն առանձնահատուկ նշանակություն է ստանում հատկապես թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկություններում։ Թողարկվող հագուստեղենի, կոշկի, զանազան կտորեղենի, տրիկոտաժեղենի, գալանտերեայի և սննդամթերքների որակին, ապրանքային տեսքին և սպառողական մյուս հատկություններին պետք է ուշադրություն դարձնեն ձեռնարկությունների ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները։ Մինչդեռ մեր քաղաքի արդյունաբերական շատ ձեռնարկություններում վատ է նոր մոդելների և ասորտիմենտի վիճակը։ Տարիներ շարունակ արտադրվում են այնպիսի արտադրատեսակներ, որոնք արդեն վաղուց ձանձրացրել են գնորդներին, չունեն անհրաժեշտ պահանջարկ և լցվել են ինչպես առևտրական բազաների, այնպես էլ ձեռնարկությունների պահեստները։

Վերջերս քաղկոմի բյուրոն քննարկեց Հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայի և մսի կոմբինատի թողարկող արտադրանքի որակի հարցը։ Այդ ձեռնարկություններում կան աղաղակող թերություններ, որոնք հանգեցնում են ցածրորակ արտադրանքի թողարկման։ Հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայում ցածր է արտադրության կուլտուրան, վատ է սանիտարական վիճակը, ընկած է տեխնոլոգիական կարգապահությունը, խախտվում են տեխնիկական պահանջները, ապրանքների վրա չեն նշվում արտադրման ժամկետները և այլն։ Ընկնելով համախառն արտադրանքի պլանի ետևից, ֆաբրիկայի ղեկավարները չեն կատարում պահանջարկ ունեցող ասորտիմենտի պլանը։ Ստուգված արտադրանքի 15—25 տոկոսը պարբերաբար խոտանվում է և չի ընդունվում առևտրական կազմակերպությունների կողմից։

Երբ ծանոթանում ես Երևանի Լենինյան և Օրջոնիկիձեի կուսշրջկոմների պլենումների և բյուրոների նիստերում ընդունված որոշումներին, թվում է ամեն ինչ նորմալ է. հարցերը քննարկվել են, ընդունված որոշումները ձևակերպված են ճիշտ։ Հարց է առաջանում. ինչո՞ւ գործերի դրությունը չի փոխվում, ինչո՞ւ թերությունները չեն վերացվում, շարունակվում է վատորակ արտադրանքի թողարկումը։

Բանն այն է, որ կուսշրջկոմների աշխատանքում բացակայում է կատարման ստուգումը։ Ընդունելով արտադրանքի որակի բարելավման մասին որոշումներ, նրանք անտեսում են դրանց կատարման ստուգումը։ Իսկ եթե առանձին շրջկոմներ անդրադառնում են այդ հարցին, ապա միայն ձևականության համար։ Ավելին, որակի բարձրացման վերաբերյալ կուսշրջկոմի ընդունած որոշումները հաճախ չեն քննարկվում կուսկազմակերպություններում։ 26 կոմիսարների կուսշրջկոմը քննարկելով շամպայն գինիների գործարանի արտադրանքի որակի հարցը, ընդունել է համապատասխան որոշում։ Սակայն դրանից հետո չի մտահոգվել իր որոշման կատարման ընթացքով։

Նույնը պետք է ասել Օրջոնիկիձեի կուսշրջկոմի մասին։ Նա որակի բարձրացման հարցը քննարկելիս բազմաթիվ անգամ շոշափել է մսի կոմբինատի, գեղարվեստական ժամացույցների գործարանի թողարկած արտադրանքի վատորակությունը և գրեթե ոչ մի էական արդյունքի չի հասել։

Կուսշրջկոմները պետք է հետևեն իրենց ընդունած որոշումների կատարմանը և հասնեն այն բանին, որպեսզի դրանք տեղերում կիրառվեն։

Կուսակցության շրջկոմները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն որակի բարձրացման համար պայքարի այնպիսի օղակի գործունեությանը, ինչպիսին ժողովրդական վերահսկողությունն է։

Մեծ և պատասխանատու են արտադրանքի որակի, հուսալիության և երկարակեցության բարձրացման խնդիրները, որոնք միանգամայն լուծելի են։ Քաղաքի կուսակցական կազմակերպությունները պետք է անհրաժեշտ ուշադրություն դարձնեն այդ հարցերին, հետևողականորեն հաղթահարեն այդ հարցի լուծմանը խանգարող բազմաթիվ խոչընդոտներն ու դժվարությունները։ Այդ է պահանջում ժամանակի ոգին, այդ է պահանջում մեր կուսակցությունը։

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

## ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐՆ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՈՒՄ

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ ԳԱ թղթակից անդամ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում պատմական մեծագույն իրադարձություն հանդիսացավ նաև Անդրկովկասի ժողովուրդների կյանքում։ Հեղափոխությունը վերջ տվեց շահագործող դասակարգերի գերիշխանությանը և լիակատար պայմաններ նախապատրաստեց Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի աշխատավորության սոցիալական ու ազգային ազատագրության համար։ Կապիտալիստների ու կալվածատերերի տիրապետությունը տապալելու և Անդրկովկասում սովետական իշխանություն հաստատելու համար երկրամասի բանվորների ու գյուղացիների հերոսական պայքարի ոգեշնչողն ու կազմակերպիչը երկրամասի կոմունիստական կուսակցություններն էին՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության այդ մարտական ջոկատները։

Ադրբեջանի, Հայաստանի ու Վրաստանի կոմունիստական կուսակցությունների պատմության ամենավառ էջերից մեկը կազմող այդ ժամանակաշրջանը միշտ էլ իր վրա է սևեռել սովետական պատմաբանների ուշադրությունը։ Գիտահետազոտական աշխատանքն այդ ուղղությամբ առանձնապես լայն թափ է ընդունել վերջին ժամանակներս, երբ ամբողջ սովետական ժողովուրդը և առաջադեմ մարդկությունը պատրաստվում են նշելու այնպիսի նշանակալի տարեթվեր, ինչպիսին են Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակը և կուսակցության ու հեղափոխության հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։

Ներկա հոդվածի նպատակն է հակիրճ կերպով լուսաբանել կոմունիստական կազմակերպությունների ղեկավարությամբ սովետական իշխանության հաղթանակի համար Անդրկովկասի աշխատավորության մղած պայքարի առանձին ուշագրավ կողմերը։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար մղած պայքարում ռուս բանվորների ու գյուղացիների, մեր բազմազգ երկրի բոլոր մյուս ժողովուրդների հետ մեկտեղ ակտիվ մասնակցություն են ունեցել նաև Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի աշխատավորները։ Անդրկովկասում այդ



պայքարը մղվում էր բավական բարդ իրադրության պայմաններում։ Սովետական իշխանությունն այստեղ վերջնականապես հաղթանակեց միայն 1920—1921 թվականներին։

Ցարական միապետության տապալմանը հաջորդած առաջին իսկ օրերում Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները դուրս եկան ընդհատակից և լայն աշխատանք ծավալեցին իրենց շարքերը համախմբելու ու ամրապնդելու ուղղությամբ։ Նրանք կազմակերպեցին մի շարք այնպիսի թերթերի հրատարակությունը, ինչպիսիք են Թիֆլիսի բոլշևիկների օրգաններ «Կավկազսկի ռաբոչի», «Բրձոլա», «Բանվորի կռիվը» թերթերը, Բաքվի բոլշևիկների օրգաններ «Բակինսկի ռաբոչի», «Հումմեթ» (ադրբեջաներեն) և «Սոցիալ-դեմոկրատ» (հայերեն) թերթերը, Ալեքսանդրապոլի բոլշևիկների օրգաններ «Նոր կյանք» և «Պրավդա ժիզնի» թերթերը, Շուշիի բոլշևիկների օրգան «Նեցուկ» թերթը, որոնց էջերում զետեղվում էին Վ. Ի. Լենինի ճառերն ու հոդվածները, կուսակցության որոշումները, պրոպագանդվում էին լենինյան հռչակավոր Ապրիլյան թեզիսները և կուսակցության VII ապրիլյան կոնֆերանսի նյութերը։

Անդրկովկասի բոլշևիկները, զինված լենինյան ցուցումներով, կուսակցության VII ապրիլյան կոնֆերանսի որոշումներով և կուսակցության Կենտկոմի դիրեկտիվներով, կարողացան փետրվարյան հեղափոխությունից հետո բազմազգ երկրամասի դժվարին իրադրության պայմաններում լայն աշխատանք ծավալել մասսաների մեջ։ Նրանք մերկացնում էին ժամանակավոր կառավարության իմպերիալիստական բնույթը և հեղափոխության ստոր դավաճաններ մենշևիկների ու էսեռների, ինչպես նաև դաշնակների, մուսավաթիստների և այլ բուրժուական նացիոնալիստների հակաժողովրդական քաղաքականությունը։ Նրանք անդուլ պայքարում էին բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստական հեղափոխության վերաճելու համար։

Արդեն կուսակցության VI համագումարի հրավիրման ժամանակ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները հսկայական հաջողություններ էին ձեռք բերել իրենց շարքերն ամրապնդելու, մասսաների մեծամասնությունը նվաճելու գործում։ Երկրամասի բոլշևիկյան կազմակերպություններից կուսակցության VI համագումարի պատգամավորներ ընտրվեցին Յա. Սվերդլովը, Ս. Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Ս. Էֆենդիևը, Ս. Քավթարաձեն, Ա. Ենուկիձեն և Ա. Յուսիֆ-զադեն։ Համագումարում Ստ. Շահումյանն ընտրվեց կուսակցության Կենտկոմի անդամ, իսկ Ա. Ջափարիձեն՝ Կենտկոմի անդամության թեկնածու։

Կուսակցության VI համագումարի պատմական որոշումները հիմք և ուղեցույց հանդիսացան Կովկասի բոլշևիկների I համագումարի համար, որը կայացավ 1917 թվականի հոկտեմբերի սկզբներին Թիֆլիսում։ Համագումար էին եկել 29 պատգամավոր 19 կուսակցական կազմակերպություններից, որոնք միավորում էին 8636 կոմունիստների։ Լենինին ուղարկած իր ողջույնի մեջ համագումարը հաստատ վստահություն հայտնեց, որ «մոտ ապագայում Ռուսաստանի բանվոր դասակարգն ու հեղափոխական գյուղացիությունն իրենց նոր հեղափոխությամբ կթոթափեն միլյուկովների ու նրանց լակեյներ կերենսկիների լուծը և ընկեր Լենինի համար հնարավորություն կստեղծեն դուրս գալու ընդհատակից և բացահայտորեն գրավելու մեր կուսակցության առաջնորդի, ռուսական մեծ հեղափոխության առաջնորդի իր պոստը»։

Կովկասի բոլշևիկների I համագումարն ընտրեց Կովկասյան երկրամասային կոմիտե, որի կազմի մեջ մտան Ստ. Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Մ. Ցխակայան, Ֆ. Մախարաձեն, Գ. Կորգանովը, Ս. Քավթարաձեն, Մ. Օրախելաշվիլին, Ա. Մռավյանը, Հ. Նազարեթյանը և ուրիշներ:

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները Կովկասյան երկրամասային կոմիտեի ղեկավարությամբ եռանդագին կերպով նախապատրաստվում էին զինված ապստամբության և այդ ուղղությամբ համապատասխան աշխատանք էին կատարում պրոլետարիատի ու աշխատավոր գյուղացիության շրջանում, հաստատակամորեն պայքարում էին սովետների բոլշևիկացման, բանվորա-գյուղացիական իշխանության հաստատման համար:

Պետրոգրադում զինված ապստամբության հաղթանակից կարճ ժամանակ հետո՝ 1917 թվականի հոկտեմբերի վերջերին Բաքվի պրոլետարիատն առաջինը երկրամասում պարզեց սոցիալիստական հեղափոխության դրոշը և սովետական իշխանություն հաստատեց Բաքվում: Հետևելով Բաքվի պրոլետարիատի օրինակին, Թիֆլիսի, Երևանի, Քութաիսի, Ալեքսանդրապոլի, Բաթումի, Գյանջայի և այլ վայրերի աշխատավորները վճռականորեն պաշտպանեցին Պետրոգրադի հերոսական պրոլետարիատին ու ողջունեցին Ժողովրդական կոմիսարների սովետին: Անհաշտ պայքար մղելով մենշևիկների, էսեռների, դաշնակների, մուսավաթականների և սոցիալիստական հեղափոխության մյուս թշնամիների դեմ, Անդրկովկասի բոլշևիկները համախմբում էին հեղափոխական ուժերը գալիք մարտերի համար՝ հանուն սովետական իշխանության հաղթանակի:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն, սովետական կառավարությունը, անձամբ Վ. Ի. Լենինը ուշադիր հետևում էին իրադարձությունների զարգացմանը Անդրկովկասում և հսկայական օգնություն էին տալիս երկրամասի բոլշևիկներին՝ նրանց մղած դժվարին, բայց հերոսական պայքարում:

1917 թվականի դեկտեմբերին Ժողովրդական կոմիսարների սովետը, Վ. Ի. Լենինի նախագահությամբ քննարկելով Ի. Վ. Ստալինի զեկուցումը Անդրկովկասում տիրող դրության մասին, Կովկասի գործերի արտակարգ կոմիսար նշանակեց Բաքվի սովետի նախագահ Ստ. Շահումյանին:

1918 թվականի առաջին կեսին Անդրկովկասի բազմաթիվ տեղերում բոլ-
շևիկների ղեկավարությամբ բռնկում էին զինված ապստամբություններ: Նույն
թվականի հունվարին կազմակերպվեց Սարիղամիշի ռազմահեղափոխական
կոմիտեն, որի կազմի մեջ մտնում էին Բ. Շերոլդաևը (նախագահ), Ս. Ալա-
վերդյանը, Ֆ. Սոլնցևը, Ի. Կիասովը (Կիասաշվիլին), Տ. Մուսիևը, Ս. Պեպրեն-
կոն, Գիգոյանը և ուրիշներ: Սարիղամիշի կայազորը, որտեղ բոլշևիկորեն
տրամադրված մեծ թվով զինվորներ կային, իրեն հայտարարեց սովետական
հեղափոխական բանակ:

1918 թվականի գարնանը Լոռու գավառի մի շարք գյուղերում գյուղացիները գրավեցին կալվածատիրական վարելահողերն ու մարգագետինները: Բանվորների, զինվորների ու գյուղացիների հեղափոխական ելույթներ տեղի ունեցան նաև Երևանում, Ալեքսանդրապոլում, Կարսում, Ղարաքիլիսայում և Հայաստանի այլ շրջաններում:

Սովետական իշխանության հաղթանակի համար հաջող պայքար էր ծավալվել Աբխազիայում: Այստեղ աշխատավորությունը բոլշևիկների ղեկավարությամբ դեռ 1918 թվականի սկզբներից պատրաստվում էր զինված ապստամբության: Ապստամբությունն սկսվեց մարտի 11 (24)-ին Գագրայում և Գուդաուտիում: Ապստամբներին, որոնց ղեկավարներից մեկը ականավոր բոլշևիկ Գ. Աթարբեկյանն էր, օգնության հասավ կարմիր գվարդիայի մի ջոկատ Սոչիից: Ապստամբները մտան Սուխումի և այնտեղ սովետական իշխանություն հռչակեցին, որի դրոշը հաղթականորեն ծածանվեց 42 օր:



1918 թվականի փետրվարին Քութաիսում կայացավ կուսակցական կոնֆերանս, որը վճռականորեն արտահայտվեց զինված ապստամբության օգտին և իր որոշման մեջ նշեց. «ստեղծել սոցիալիստական բանակ, որը պայքար է մղելու ինչպես ներքին, այնպես էլ արտաքին իմպերիալիստական հակահեղափոխության դեմ»: Կոնֆերանսի այդ որոշման հիման վրա ստեղծվեց պարտիզանական ջոկատ՝ որպես ապստամբության զինված ուժ: Գյուղացիական ապստամբություններ բռնկվեցին գրեթե ամբողջ Վրաստանում:

Ադրբեջանի բոլշևիկները մեծ հաջողությունների հասան սովետական իշխանության դիրքերը Բաքվում ամրապնդելու գործում: 1918 թվականի ապրիլի 25-ին կազմվեց Բաքվի Ժողովրդական կոմիսարների սովետը, որի կազմի մեջ մտան Ստ. Շահումյանը (նախագահ), Ա. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Ի. Ֆիոլետովը, Գ. Կորգանովը, Ն. Նարիմանովը, Յա. Զևինը, Մ. Վեզիրովը, Ն. Կոլեսնիկովան, Ա. Կարինյանը և այլ ականավոր հեղափոխականներ:

Կատարելով կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, Վ. Ի. Լենինի, սովետական կառավարության ցուցումները և հենվելով նրանց ցույց տված օգնության վրա, Բաքվի Ժողկոմսովետը համապատասխան դեկրետներով ազգայնացրեց նավթարդյունաբերությունը, տրանսպորտը, առևտրական նավատորմը, բանկերը, բռնագրավեց կալվածատիրական հողերն ու դրանք հանձնեց աշխատավոր գյուղացիությանը, 8-ժամյա աշխատանքային օր մտցրեց ձեռնարկություններում, միջոցներ ձեռք առավ աշխատավորների կենցաղի ու աշխատանքի պայմանների բարելավման ուղղությամբ և այլն: Այդ բոլոր սոցիալիստական միջոցառումները Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության առաջին նվաճումներն էին ամբողջ Անդրկովկասում:

Ադրբեջանական գյուղում բոլշևիկները ծավալուն հեղափոխական աշխատանք կատարեցին: «Հումմեթ» կազմակերպությունը գյուղ ուղարկեց այնպիսի ականավոր գործիչների, ինչպիսիք են Մ. Ազիզբեկովը, Ն. Նարիմանովը, Բ. Սարդարովը, Մ. Մամեդյարովը, Մ. Իսրաֆիլբեկովը (Կադիրլի) և ուրիշներ: 1918 թվականի գարնանը և ամռանը աշխատավոր գյուղացիները կոմունիստների ղեկավարությամբ և Բաքվի բանվորների ու Կարմիր բանակի զորամասերի օգնությամբ սովետական իշխանություն հաստատեցին Բաքվի, Լենքորանի, Շամախու, Ղուբայի, Արեշի գավառներում, Սալյանում և Ադրբեջանի այլ շրջաններում, ինչպես նաև Դաղստանի մի շարք շրջաններում: Ադրբեջանի մի շարք գավառներում կազմակերպվեցին գյուղացիների դեպուտատների սովետներ: Դրանց թիվը միայն Բաքվի գավառում հասնում էր շուրջ 30-ի:

Սովետական իշխանության շուրջը աշխատավոր գյուղացիության համախմբման գործում կարևոր դեր խաղացին Բաքվի գավառի գյուղացիների դեպուտատների սովետների I համագումարը, ինչպես նաև համանման համագումարները Լենքորանում, Շամախիում և մի քանի այլ գավառներում:

Բաքվի ժողովրդական կոմիսարների սովետի գործունեությունն արժանացավ Վ. Ի. Լենինի բարձր գնահատականին: Ստ. Շահումյանին ուղարկած իր 1918 թվականի մայիսի 14-ի հեռագրում նա գրում էր. «Մենք հրճվանքի մեջ ենք ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից: Կարողացե՛ք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որը անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ,— և մենք կհաղթենք» (Երկեր, հ. 35, էջ 359):

Ստ. Շահումյանին ուղարկած մի այլ նամակում Վ. Ի. Լենինը Բաքվի ընկերներին կրկին խորհուրդ էր տալիս հանգամանորեն հաշվի առնել Բաքվի դժվարին դրությունը, միջազգային հարաբերությունների ասպարեզում ցուցաբերել զգաստ մոտեցում և դիվանագիտություն:

Սովետական իշխանության հաղթանակի համար մղվող պայքարն Անդրկովկասում ընթանում էր դժվարին ելևէջներով, քաղաքական բարդ իրադրության մեջ, ներքին հակահեղափոխության և օտարերկրյա ինտերվենտների դեմ կատաղի մարտերի պայմաններում:

Հակառակ երկրամասի աշխատավորների ցանկության, Անդրկովկասյան սեյմը՝ բուրժուա-կալվածատիրական հակահեղափոխության այդ օրգանը, կատարելով գերմանա-թուրքական և ամերիկա-անգլիական գիշատիչների կամքը, 1918 թվականի ապրիլի 22-ին Անդրկովկասն «անկախ» հռչակեց և կապերը խզեց Սովետական Ռուսաստանի հետ: Հակահեղափոխական կոալիցիայի այդ նոր հակասովետական ակտը բուռն ու վճռական բողոք առաջացրեց Անդրկովկասի աշխատավոր մասսաների մեջ:

Իրենց տիրապետությունն Անդրկովկասում տարածելու, Սովետական Ռուսաստանի դեմ պլացդարմ ստեղծելու, ինչպես նաև բուն Անդրկովկասում հասունացող հեղափոխական շարժումը ճնշելու նպատակով իմպերիալիստները մի նոր քայլի դիմեցին: Նրանց թելադրանքով Անդրկովկասի ազգայնական կուսակցությունները 1918 թվականի մայիսի վերջերին ցրեցին Անդրկովկասյան սեյմը և երկրամասում ստեղծեցին երեք հակահեղափոխական բուրժուա-նացիոնալիստական կառավարություններ: Իշխանությունը Վրաստանում զավթեցին մենշևիկները, Ադրբեջանում՝ մուսավաթիստները, Հայաստանում՝ դաշնակները:

1918 թվականի հուլիսի վերջերին սովետական իշխանությունը, ժամանակավոր պարտություն կրեց Բաքվում և Ադրբեջանի արևելյան մասում: Բանվորների ու գյուղացիների գործի, լենինիզմի գաղափարների հաղթանակի համար մղած պայքարում անգլիական իմպերիալիստների ու նրանց էսեռ լակեյների ձեռքով հերոսաբար զոհվեցին Անդրկովկասի աշխատավորների պանծալի առաջնորդներ Ստ. Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Ի. Ֆիոլետովը, Գ. Կորգանովը, Գ. Պետրովը, Մ. Վեզիրովը, Յա. Զևինը և ուրիշներ: Դահիճները նրանց գազանաբար գնդակահարեցին անդրկասպյան ավազուտներում:

Սակայն ամենադաժան ռեպրեսիաներն անգամ չընկճեցին Անդրկովկասի աշխատավորության հեղափոխական ոգին: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ավելի հոծ մասսաներ էին ընդգրկվում ազատագրական շարժման մեջ:

1918 թ. նոյեմբերին Թիֆլիսի մերձակայքում՝ Սաբուրթալոյում կայա-



ցավ ՌԿ(բ)Կ անդրկովկասյան կազմակերպությունների կոնֆերանսը, որը կարևոր նշանակություն ունեցավ կուսակցական աշխատանքի աշխուժացման ու մասսաների հեղափոխական պայքարի կազմակերպման համար:

Նույն ժամանակներում վերստեղծվեց ՌԿ(բ)Կ Բաքվի կոմիտեն: 1919 թվականի մարտի սկզբներին կայացած Բաքվի համաքաղաքային կուսակցական կոնֆերանսն ընտրեց ՌԿ(բ)Կ Բաքվի կոմիտեի նոր կազմ:

Կուսակցական կազմակերպությունների վերստեղծման ու ամրապնդման ուղղությամբ հսկայական աշխատանք կատարեցին նաև Վրաստանի բոլշևիկները: 1918 թվականի հուլիսի 30-ին ընտրվեց ՌԿ(բ)Կ Հարավային Օսեթիայի կազմակերպական բյուրոն: Կուսակցական աշխատանքն ուժեղանում էր նաև Աջարիայում և Աբխազիայում:

ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի ղեկավարությամբ հետզհետե ամրանում և բանվորների ու գյուղացիների շրջանում իրենց ազդեցությունն էին ընդլայնում Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները: 1918 թ. աշնանն ընտրվեց Երևանի կոմիտեն: 1918 թ. սեպտեմբերից մինչև 1919 թ. մարտ ամիսը Երևանի բոլշևիկները հրատարակում էին «Խոսք» օրաթերթը, որը նշանակալի դեր խաղաց տեղի հեղափոխական ուժերի ու կուսակցական կազմակերպությունների միավորման ու մոբիլիզացման գործում: Նույն այդ ժամանակաշրջանում Կովկասյան երկրային կոմիտեի կողմից Բաքվից ուղարկված բանվոր կոմունիստների ու տեղի բոլշևիկների ղեկավարությամբ Ալեքսանդրապոլում վերականգնվեց անլեգալ բոլշևիկյան կազմակերպությունը: Մեծ աշխատանք ծավալեցին նաև Լոռու, Զանգեզուրի, Կարսի, Սարիղամիշի, Ղարաքիլիսայի, Դիլիջանի կուսակցական կազմակերպությունները:

Անդրկովկասի բանվորների ու գյուղացիների հեղափոխական պայքարը կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ լայն թափ ընդունեց և ավելի կազմակերպված էր ընթանում 1919 թվականին: Բանվորների հեղափոխական համախմբման գործում առանձնապես կարևոր դեր խաղաց Բաքվի «բանվորական կոնֆերանսը»:

Ադրբեջանի աշխատավորների հեղափոխական համախմբման համար բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ «Անկախ Սովետական Ադրբեջան» լոզունգը, որ առաջ էին քաշել Ադրբեջանի կոմունիստները և որն արժանացել էր ՌԿ(բ)Կ Կենտկոմի ու Վ. Ի. Լենինի հավանությանը: 1919 թվականի հուլիսի 19-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի և կազմբյուրոյի միացյալ նիստում որոշում ընդունվեց այն մասին, որ սովետական իշխանություն հաստատվելուց հետո Ադրբեջանը ճանաչվելու է որպես անկախ սովետական հանրապետություն: Կոմունիստական կուսակցության Կենտկոմի այդ որոշումը Ադրբեջանի բանվորներին ու գյուղացիներին ոգեշնչեց կոմունիստների ղեկավարությամբ վճռական պայքարի ելնելու ընդդեմ մուսավաթական ռեժիմի և օտարերկրյա ինտերվենտների:

ՌԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումով 1919 թ. մայիսին Բաքվում Գ. Կ. Օրջոնիկիձեի ղեկավարությամբ կայացավ անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպությունների խորհրդակցությունը: Գ. Կ. Օրջոնիկիձեն Անդրկովկասի բոլշևիկներին հաղորդեց օտարերկրյա ինտերվենտների ու երկրամասի հակահեղափոխական «կառավարությունների» դեմ զինված ապստամբություն նախապատրաստելու վերաբերյալ կուսակցության Կենտկոմի դիրեկտիվները:

Օգոստոսի 19-ին գումարվեց Թիֆլիսի նահանգային կուսկոնֆերանսը,

սեպտեմբերին՝ Քութաիսին: 1919 թվականի սեպտեմբերի վերջերին կայա-
ցավ ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի պլենումը, որտեղ որոշում ըն-
դունվեց Վրաստանը մենշևիկյան լծից ազատագրելու և այնտեղ սովետական
իշխանություն հաստատելու համար զինված ապստամբություն նախապատ-
րաստելու մասին: Այդ որոշումը նոր ոգևորություն առաջացրեց կուսակցական
կազմակերպություններում: Ապստամբությունը պետք է սկսվեր Թիֆլիսի
ռազմա-հեղափոխական շտաբի անմիջական ղեկավարությամբ և միաժամա-
նակ պետք է ընդգրկեր ամբողջ Վրաստանը:

Ստեղծվեց ապստամբության ռազմական կենտրոն, Վրաստանի բոլոր
գավառներում անցկացվեցին կուսակցական կոնֆերանսներ: Ապստամբու-
թյունը պետք է սկսվեր հոկտեմբերի 24-ին՝ մեծ Հոկտեմբերի երկրորդ տարե-
դարձի նախօրեին: Սակայն ապստամբությունը լիովին չհաջողվեց, ռազմա-
կան կենտրոնի ձերբակալման հետևանքով: Բայց մի շարք գավառներում՝
Գորիում, Օզուրգեթիում, Թելավում և այլ վայրերում, որտեղ ծանուցում չէր
ստացվել ապստամբության նոր ժամկետի վերաբերյալ ռազմական կենտրոնի
ձերբակալման պատճառով, ապստամբները տապալեցին իշխանությունը տե-
ղերում և սովետական իշխանություն հռչակեցին: Մենշևիկներն իրենց բոլոր
ուժերը նետեցին ապստամբների դեմ: Հարյուրավոր կոմունիստներ բանտարկ-
վեցին ու դատապարտվեցին տաժանակիր աշխատանքների: Տասնյակները
գնդակահարվեցին: Հենց միայն Օզուրգեթի գավառում տեղնուտեղը գնդա-
կահարվեցին բոլշևիկներ Մ. Բերձենիշվիլին, Բ. Բերիձեն, Ց. Գոգելաձեն,
Կ. Քերեսելիձեն, Կ. Կալաձեն, Ա. Մամալաձեն և ուրիշներ:

Չնայած իր պարտությանը, 1919 թվականի ապստամբությունը մեծ նշա-
նակություն ունեցավ Վրաստանի կուսակցական կազմակերպությունների հա-
մար, նրանք զինված պայքարի փորձ ձեռք բերին ընդդեմ մենշևիկների տիրա-
պետության: Զենքը ձեռքին դուրս գալով Դենիկինի այդ դաշնակիցների դեմ,
Վրաստանի բանվորներն ու գյուղացիներն ապացուցեցին, թե իրենց համար
որքան թանկ է դաշինքն ու համերաշխությունը Սովետական Ռուսաստանի
աշխատավորների հետ:

***

ՀԱՅՏՆԻ է, որ 1920 թվականի սկիզբը նշանավորվեց Կարմիր բա-
նակի նոր, վճռական հաղթանակներով քաղաքացիական կռվի
ճակատներում: Այդ հաջողություններն Անդրկովկասի աշխատա-
վորներին ավելի էին ոգեշնչում վճռական գրոհի ելնելու շահա-
գործող դասակարգերի անարգ լծի դեմ: Ընդհատակում գործող բոլշևիկյան
կազմակերպությունները եռանդագին աշխատանք էին ծավալել աշխատավոր
մասսաներին այդ վճռական գրոհին նախապատրաստելու ուղղությամբ:
Սովետական իշխանության հաղթանակն ամբողջ Անդրկովկասում 1920
թվականին ապահովելու համար ՌԿ(բ)Կ Կենտկոմը ձեռք առավ երկրամասի
կոմունիստական կազմակերպությունների գաղափարական համախմբման ու
կազմակերպական ամրապնդման գծով մի շարք կարևոր միջոցառումներ:
1920 թ. փետրվարի 11-ին Բաքվում անլեգալ պայմաններում կայացավ
Ադրբեջանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության առաջին համա-
գումարը: Համագումարի պատվավոր նախագահ ընտրվեց Վ. Ի. Լենինը: Հենց



այդ համագումարն էլ ձևավորեց Ադրբեջանի կոմունիստական կուսակցության
ստեղծումը՝ ՌԿ(բ)Կ Բաքվի կազմակերպության, «Հումմեթ» և «Ադալեթ» կազ-
մակերպությունների միավորման հիման վրա: Ընթացիկ մոմենտի առթիվ հա-
մագումարի ընդունած բանաձևում ասվում էր. «...Ադրբեջանի կոմունիստա-
կան կուսակցության համագումարն անհրաժեշտ է համարում գոյություն ունե-
ցող կառավարությունը տապալելու և բանվորների ու գյուղացիների դիկտա-
տուրա հաստատելու համար նախապատրաստել բանվորների և գյուղացիների
ակտիվ ելույթներ»:

Համագումարում ընտրվեց Ադրբեջանի կոմունիստական (բոլշևիկների)
կուսակցության Կենտրոնական կոմիտե 43 հոգուց: Կենտկոմի կազմի մեջ
մտան Ա. Բայրամովը, Մ. Հուսեյնովը, Դ. Բունիաթ-զադեն, Վ. Նանեյշվիլին,
Ա. Կարաևը, Վ. Եգորովը, Գ. Սուլթանովը, Մ. Հաջիևը, Ռ. Ախունդովը, Մ. Պլե-
շակովը, Լ. Միրզոյանը, Ս. Յակուբովը և ուրիշներ: Հանրապետությունում սո-
վետական իշխանության հաստատման նախօրեին Ադրբեջանի կոմկուսի շար-
քերում ավելի քան 5000 մարդ կար:

Ղեկավարվելով համագումարի դիրեկտիվներով, Ադրբեջանի կուսակցա-
կան կազմակերպությունները եռանդուն գործունեություն ծավալեցին զինված
ապստամբության անմիջական նախապատրաստման ուղղությամբ: Բաքվի
շրջանի ամբողջ կուսակցական կազմակերպությունը ռազմական դրության մեջ
էր հայտարարված: 1920 թ. ապրիլի 24-ին երկամյա ընդմիջումից հետո նո-
րից սկսեց լույս տեսնել Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմի և Բաքվի կոմիտեի օր-
գան «Նովի միր» թերթը, որը աշխատավորական մասսաներին կոչ արեց
կարգի բերել մարտական շարքերը և պատրաստ լինել մուսավաթա-բեկական
ու խանական կառավարությունը տապալելու համար:

1920 թվականի ապրիլի 26-ին ԱԿ(բ)Կ Կենտկոմի և ՌԿ(բ)Կ Կովկասյան
երկրային կոմիտեի Բաքվի բյուրոյի համատեղ արտակարգ նիստում մշակվեց
իշխանության գրավման կոնկրետ պլան: Հաջորդ օրը կազմակերպվեց Ադրբե-
ջանի հեղափոխական կոմիտեն հետևյալ կազմով՝ Ն. Նարիմանով (նախա-
գահ), Մ. Հուսեյնով, Ա. Կարաև, Հ. Սուլթանով, Դ. Բունիաթ-զադե, Գ. Մու-
սաբեկով և Ա. Ալիմով:

1920 թվականի ապրիլի 28-ին Ադրբեջանի բանվոր դասակարգն ու աշ-
խատավոր գյուղացիությունը կոմունիստական կուսակցության ղեկավարու-
թյամբ, ռուս մեծ ժողովրդի, 11-րդ Կարմիր բանակի եղբայրական օգնու-
թյամբ տապալեցին մուսավաթական բուրժուա-կալվածատիրական կառավա-
րությունը և սովետական իշխանություն հաստատեցին Ադրբեջանում: Վ. Ի.
Լենինը ողջույն հղեց Սովետական Ադրբեջանին:

Կուսակցական կազմակերպությունների համախմբման ու ամրապնդման
ուղղությամբ մեծ աշխատանք կատարեցին Հայաստանի կոմունիստները:

1920 թվականի հունվարին Երևանում անլեգալ կերպով հրավիրվեց Հա-
յաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջին կոնֆերանսը:
Այստեղ ներկա էին 22 կուսակցական կազմակերպությունների ներկայացու-
ցիչներ: Այդ կուսկազմակերպություններն իրենց շարքերում ընդգրկում էին
1200 կոմունիստ: Ավարտելով Հայաստանի կոմունիստական կազմակերպու-
թյունների համախմբումը մեկ ղեկավար կենտրոնի՝ ՌԿ(բ)Կ Հայաստանի կո-
միտեի (Արմենկոմ) շուրջը, կոնֆերանսը նշեց պայքարի կոնկրետ ծրագիր,
որը նախատեսում էր Կարմիր բանակի զորամասերի օգնությամբ և զինված

ապստամբության միջոցով տապալել դաշնակների «կառավարությունը» և սովետական իշխանություն հաստատել Հայաստանում։

Կոնֆերանսն ընտրեց Արմենկոմի նոր կազմ, որի մեջ մտան Ս. Ալավերդյանը, Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Դ. Շահվերդյանը, Հ. Կոստանյանը, Ղ. Ղուկասյանը, Ա. Նուրիջանյանը, Դ. Տեր-Սիմոնյանը, Ս. Մարտիկյանը և այլ ականավոր բոլշևիկներ։

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները կազմակերպական-մասսայական լայն աշխատանք ծավալեցին կոնֆերանսի որոշումների կատարման համար։ Ամենուրեք տեղի էին ունենում գավառային կոնֆերանսներ և կուսկազմակերպությունների ժողովներ։

Ներքին հակահեղափոխության և ինտերվենտների դեմ մղվող պայքարի համար աշխատավոր մասսաներին մոբիլիզացնելու հզոր միջոց հանդիսացավ բոլշևիկյան մամուլը։ 1920 թվականի սկզբներից Հայաստանի կոմունիստները հրատարակում էին «Ալիք», «Լուռվա գյուղացիության ձայն», «Կոմունիստ», «Գյուղացու ձայն» և այլ թերթեր։

Գնալով աճում էին Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների շարքերը։ Եթե 1919 թվականի սեպտեմբերին կուսանդամների թիվը 400 էր, ապա 1920 թ. ապրիլին այն հասավ շուրջ 3 հազարի։

Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ուժեղանալու փաստի մասին՝ Ա. Միկոյանը 1920 թ. մարտի 6-ին Աստրախան Ս. Մ. Կիրովին ուղարկած հեռագրում հայտնում էր. «...Հայաստանում աշխատանքը կարգավորվել է, մեր ուժերն աճում են»։ Հաջորդ օրը այդ լուրը Ս. Մ. Կիրովը հաղորդեց Մոսկվա՝ ՌԿ(բ)Կ Կենտկոմին։

1920 թվականի մայիսի 1-ին Հայաստանի տասնյակ հազարավոր բանվորներ, զինվորներ ու գյուղացիներ բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ Երևանում, Ալեքսանդրապոլում, Սարիղամիշում, Կարսում և այլ շրջաններում դուրս եկան հեղափոխական ցույցերի։ Հաջող կազմակերպված մայիսմեկյան այդ ելույթների լոզունգներն էին՝ «Կեցցե՛ Սովետական Ռուսաստանը», «Կեցցե՛ Սովետական Ադրբեջանը», «Կեցցե՛ Սովետական Հայաստանը», «Կորչի՛ դաշնակցությունը» և այլն։

Ցուցարարները ողջույնի հեռագրեր ուղարկեցին Մոսկվա և Բաքու՝ Սովետական Ադրբեջանի ռազմա-հեղափոխական կոմիտեին, ադրբեջանական ժողովրդի զավակ Ն. Նարիմանովին, որն անգնահատելի օգնություն էր ցույց տալիս Հայաստանի կոմունիստներին։

Դաշնակ դահիճներն անկարող եղան խանգարելու Հայաստանի աշխատավորության մայիսմեկյան ելույթը, որը փոխվեց զինված ապստամբության և ընդգրկեց գրեթե ամբողջ Հայաստանը։ Մայիսյան ապստամբության կազմակերպիչները և ղեկավարները Հայաստանի կոմունիստական կազմակերպություններն էին։

1920 թ. մայիսի 7-ին Ալեքսանդրապոլում կայացավ Արմենկոմի, Ալեքսանդրապոլի, Կարսի, Սարիղամիշի և Ղարաքիլիսայի բոլշևիկյան կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություն, որը զինված ապստամբությունը ղեկավարելու համար ընտրեց Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտե։

Մայիսի 10-ին Ալեքսանդրապոլի աշխատավորներն ու հեղափոխական զինվորները գրավեցին քաղաքը։ Նրանց այդ գործողությունը ղեկավարում էին



կոմունիստները Ս. Մուսայելյանի, Ե. Սևյանի, Բ. Ղարիբջանյանի գլխավորությամբ։ Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտեն սովետական իշխանություն հռչակեց երկրում։

Ալեքսանդրապոլից հետո զինված ապստամբություն սկսվեց Կարսում, Սարիղամիշում։ Այդ քաղաքների ռազմա-հեղափոխական կոմիտեները մայիսի 11-ին հռչակեցին սովետական իշխանություն։ Մայիսի 13-ին ապստամբություն սկսվեց Նոր-Բայազեդի շրջանում, 14-ին՝ Շամշադինում։ Մայիսի 20—23-ին մարտեր էին մղվում Դիլիջանում և Իջևանում։ Մայիսի երկրորդ կեսին ապստամբություն բռնկեց Զանգեզուրի գավառում, որտեղ կազմակերպված ռազմա-հեղափոխական կոմիտեն նույնպես սովետական իշխանություն հռչակեց։ Կապ հաստատվեց Սովետական Ադրբեջանի հետ։

Ապստամբության միասնական ու օպերատիվ ղեկավարության բացակայությունը դաշնակներին հնարավորություն տվեց ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի իմպերիալիստների ակտիվ օժանդակությամբ ջախջախել հեղափոխական ապստամբության իրարից անջատ օջախները։

Դաշնակ դահիճների ձեռքով զոհվեցին Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ականավոր գործիչներ, սովետական իշխանության հաղթանակի համար պայքարող անվեհեր մարտիկներ Ս. Ալավերդյանը, Հ. Սարուխանյանը, Բ. Ղարիբջանյանը, Ս. Մուսայելյանը, Ղ. Ղուկասյանը, Ե. Սևյանը, Բ. Հարությունյանը, Պ. Ալեքսեևը, Խրիստովսկին, Ա. Փանյանը, Ե. Մկրտումյանը, Բ. Բատիկյանը և շատ ուրիշներ։

Հաշվի առնելով մայիսյան ապստամբության դասերը, Հայաստանի աշխատավորները կոմունիստական կազմակերպությունների ղեկավարությամբ պատրաստվեցին նոր մարտերի ընդդեմ դաշնակների ու օտարերկրյա ինտերվենտների։ Ընդհատակյա կոմունիստական կազմակերպությունները ամուր կապեր հաստատեցին Սովետական Ադրբեջանի ու Սովետական Ռուսաստանի հետ և համապատասխան ղեկավար ցուցումներ էին ստանում այնտեղից։

Հայաստանում և Վրաստանում սովետական իշխանության համար պայքարը հաջող կազմակերպելու գործում խիստ կարևոր նշանակություն ունեցան ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի ստեղծումը 1920 թ. ապրիլին և ՌԿ(բ)Կ Կենտկոմի որոշման հիման վրա Հայաստանի ու Վրաստանի կոմկուսակցությունների ստեղծումը 1920 թվականի մայիս—հունիսին։

Ինչպես Ադրբեջանի կոմկուսակցությունը, այնպես էլ Վրաստանի և Հայաստանի կոմունիստական կուսակցությունները կազմավորվեցին որպես մեր մեծ կուսակցության մարտական ու հավատարիմ ջոկատներ։

Վրաստանի և Հայաստանի կուսակցական կազմակերպությունների ամրապնդման գործում այդ ժամանակ մեծ դեր խաղացին Օրջոնիկիձեն, Կիրովը և Միկոյանը, որոնք գործնականում իրականացնում էին կուսակցության Կենտկոմի ցուցումները։

1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի հյուսիսային շրջանների՝ Իջևանի և Դիլիջանի աշխատավորները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ զինված ապստամբություն բարձրացրեցին դաշնակցական կառավարության դեմ։ Ռազմա-հեղափոխական կոմիտեն Հայաստանը սովետական սոցիալիստական հանրապետություն հռչակեց։ Հայաստանի հինավուրց հողում նույնպես փողփողաց մեծ Հոկտեմբերի դրոշը։

Սովետական իշխանության հաղթանակի համար Վրաստանի աշխատա-

վորության պայքարը լայն թափ ընդունեց 1921 թվականի սկզբներին: Փետրվարի լույս 12-ին Լոռվա չեզոք գոտում սկսված զինված ապստամբությունն արագորեն ընդգրկեց Վրաստանի բազմաթիվ շրջաններ: Փետրվարի 16-ին ստեղծվեց Վրաստանի ռազմա-հեղափոխական կոմիտեն, որի կազմի մեջ մտան Ֆ. Մախարաձեն, Մ. Օրախելաշվիլին, Մ. Ելիավան, Վ. Գեգեչկորին, Վ. Կվիրկվելիան, Հ. Նազարեթյանը և ուրիշներ: Հեղկոմը հատուկ կոչով դիմեց Վրաստանի ամբողջ աշխատավորությանը պայքարի ելնելու հանուն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, տապալել մենշևիկների իշխանությունը և ամենուրեք իշխանությունը վերցնել իրենց ձեռքը, ստեղծել տեղական հեղափոխական կոմիտեներ:

Սովետական կառավարությունը, ընդառաջ գնալով Վրաստանի հեղկոմի խնդրանքին, Կարմիր բանակին օգնության ուղարկեց Վրաստանի բանվորների ու գյուղացիների պայքարին:

Փետրվարի 25-ին Վրաստանի մայրաքաղաքի վրա փողփողաց սովետների հաղթական դրոշը: «Թիֆլիսի վրա բարձրացված է սովետական իշխանության կարմիր դրոշը»—հաղորդում էր Ս. Օրջոնիկիձեն պրոլետարական հեղափոխության առաջնորդ Վ. Ի. Լենինին:

Լենինը ջերմորեն ողջունեց սովետական իշխանության հաստատումը Վրաստանում: 1921 թվականի մարտի 2-ին նա գրում էր Օրջոնիկիձեին. «Հաղորդեցե՛ք վրացական կոմունիստներին և հատկապես Վրաստանի հեղկոմի բոլոր անդամներին իմ ջերմ ողջույնը Սովետական Վրաստանին» (Երկեր, հ. 32, էջ 189):

Սովետական իշխանության հաղթանակի համար կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Անդրկովկասի աշխատավորության պայքարը պսակվեց լիակատար հաղթանակով:

Սովետական Ադրբեջանը, Սովետական Վրաստանը և Սովետական Հայաստանը մեծ Հոկտեմբերի ծնունդն են:

Անդրկովկասի ժողովուրդներն իրենց պատմական հաջողությունների համար պարտական են մեծ Հոկտեմբերին, հարազատ կոմունիստական կուսակցությանը: «Սովետական իշխանության գոյության համար,— ասում էր Սերգո Օրջոնիկիձեն,— իրենց ազատագրության համար Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի աշխատավոր մասսաներն ամբողջապես պարտական են Ռուսաստանին: Չլիներ Սովետական Ռուսաստանը, չէին լինի Սովետական Ադրբեջանը, Սովետական Վրաստանը, Սովետական Հայաստանը»:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Անդրկովկասի աշխատավորները Սովետական Միության բոլոր ժողովուրդների եղբայրական ընտանիքում հաստատաքայլ ընթանում են դեպի կոմունիզմ:



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի կուսկազմակերպությունում կան 100-ից ավելի անդամ-թեկնածուներ: Բաժանմունքի բաժիններում և ծառայություններում ստեղծված են արտադրամասային չորս կուսկազմակերպություններ, որոնք իրենց գործունեությամբ օգնում են բաժանմունքի առջև դրված խնդիրների լուծմանը, ավելի են աշխուժացնում կուսակցական աշխատանքը:

Տրանսպորտի կուսակցական կազմակերպություններն ամեն կերպ ջանում են բարելավել կոմունիստների և մյուս աշխատողների գաղափարա-քաղաքական դաստիարակության գործը, բոլոր օղակներում ամրապնդել գիտակցական կարգապահությունը և, վերջապես, բեռնաշրջանառության առաջադրանքների կատարումը: Հիմնականում դրանց են նվիրվում կուսակցական ժողովները, արտադրական խորհրդակցությունները և մյուս միջոցառումները:

Կուսկազմակերպությանը կից գործում է 15 հոգուց բաղկացած դասախոսական խումբը, որի անդամները երկաթուղայինների համար հաճախակի դասախոսություններ են կարդում քաղաքական, միջազգային, գիտա-տեխնիկական և այլ թեմաներով, բացատրում և պրոպագանդում կուսակցության և կառավարական որոշումները, մոբիլիզացնում նրանց՝ արտադրական պլանները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները անթերի կատարելու, սոցիալիստական սեփականությունը խնամքով պահպանելու համար: Մեր դասախոսական խմբի անդամներ Շուրա Կևխևը, Դավիթ Միրիմանյանը, Բաբկեն Պողոսյանը և ուրիշներ դաշտային կայանների կոլեկտիվներում ճանաչված և սիրված մարդիկ են, որոնց դասախոսությունները հետաքրքրությամբ են լսվում: Գիտելիք ընկերության շրջանային վարչությունն այդ ընկերներին պարգևատրել է պատվոգրով և անվանական պարգևներով:

Մի ժամանակ բաժանմունքի աշխատանքի նեղ տեղերից էին գնացքների անվտանգ երթևեկության և աշխատանքի անվտանգության տեխնիկայի պահպանումը: Մեզ մոտ եղել են մարդատար գնացքի վթարի և աշխատողների ծանր տրավմատիզմի դեպքեր: Կուսակցական կազմակերպությունը մանրազնին ուսումնասիրեց դրանց պատճառները և կոնկրետ միջոցառումներ մշակեց այդպիսի դեպքերն իսպառ վերացնելու: Այնուհետև մոբիլիզացվեց ամբողջ կոլեկտիվը, աշխատողների և, հատկապես, տրանսպորտի հրամանատարների ուշադրությունը կենտրոնացվեց գնացքների երթևեկության անվտանգության

ապահովման և տրավմատիզմի դեպքերի վերացման վրա: Այդ նպատակով կոմունիստներ Վ. Հակոբյանը, Մ. Հովհաննիսյանը, Մ. Կորկոտյանը, Է. Մալոյանը, Հ. Այվազյանը, Պ. Պողոսյանը և ուրիշներ գործուղվեցին հիմնական հանգուցային կայարաններ՝ Սանահին, Կիրովական, Լենինական և այլն:

Բաժանմունքի սկզբնական կուսկազմակերպությունը ղեկավար կադրեր պատրաստելու և աճեցնելու զգալի փորձ է կուտակել: Քիչ չեն փաստերը, երբ երիտասարդ մասնագետն աշխատելով բաժանմունքի ապարատում, այստեղ էլ ընդունվելով կուսակցության մեջ, կարճ ժամանակամիջոցում աճել ու առաջ է քաշվել ղեկավար աշխատանքի: Երևան, Մասիս, Արարատ, Արազդայան, Արթիկ կայարանների, ինչպես նաև շատ գծային տնտեսությունների ներկայիս ղեկավարները բաժանմունքի նախկին աշխատողներ են: Ղեկավար պոստերում առաջ քաշվելուց հետո նրանք աշխատանքում իրենց արդարացնում են: Ահա Մասիս կայարանի պետ, երիտասարդ ինժեներ, կոմունիստ Հ. Սարգսյանը: Նա լավ է կազմակերպել իրեն վստահված տեղամասի աշխատանքը, ճիշտ է վարվում մարդկանց հետ: Լինելով պահանջկոտ, նա միաժամանակ հոգատար է ենթակաների նկատմամբ: Այս լավագույն հատկությունները կոմունիստ Հ. Սարգսյանը պատվաստում է աշխատանքի ընկերներին ու ինքն էլ նրանցից շատ բան սովորում: Ահա թե ինչու Մասիսում կադրերը լավ են աճում, դառնում ավելի պարտաճանաչ ու գործունյա:

Մասիս կայարանում աճած ու պատրաստված շատ մարդիկ ներկայումս աշխատում են Հոկտեմբեր և Մաստարա կայարաններում և, նույնիսկ, երկաթուղու բաժանմունքի ապարատում: Պետք է նշել, որ նրանք բոլորն էլ հաջողությամբ են կատարում իրենց պարտականությունները, աշխատում դրսևորել բարձր կազմակերպվածություն և գիտակցական կարգապահություն:

Կան հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ, որոնք նոր մարդ աշխատանքի ընդունելիս, խուսափում են այնպիսիներից, որոնք նախկին աշխատանքի վայրում իրենց վատ են դրսևորել և համարվել են անուղղելի: Մասիս կայարանի պետն ու մյուս ղեկավար աշխատողները այդպես չեն վարվում: Նրանք գործնականում իրենց փորձով ցույց են տալիս, որ ղեկավարների հոգատար վերաբերմունքի պայմաններում շատ մարդիկ կարող են ուղղվել և իրենց ուժերն ու ունակությունները նվիրաբերել ընդհանուր գործին:

Բերենք մի օրինակ: Մի ժամանակ երկաթուղային Սողոմոն Մկրտչյանը որպես գանձապահ աշխատում էր Մաստարայի կայարանում: Նա սիստեմատիկաբար զբաղվում էր հարբեցողությամբ, խախտում էր աշխատանքային կարգապահությունը, անփույթ ու անպատասխանատու վերաբերվում իր պարտականությունների կատարմանը: Այդ վատ արարքների համար Ս. Մկրտչյանը մի քանի անգամ նկատողություն ստացավ, հանվեց աշխատանքից և ապա նորից վերականգնվեց: Վերջին անգամ նա աշխատանքից հանվեց իր ընկերների պահանջով և արհմիութենական կազմակերպության որոշմամբ:

Երկար ժամանակ անգործ թափառելուց հետո, մեր խորհրդով Ս. Մկրտչյանին աշխատանքի ընդունեցին Մասիս կայարանում: Հանձին այդ կայարանի կոլեկտիվի Սողոմոն Մկրտչյանը գտավ իր փրկարարին: Ճիշտ է, այստեղ ևս նա սկզբում փորձեց շարունակել հարբեցողությունը, խախտել կարգապահությունը, անուշադրության մատնել կնոջը, երեխաներին, բայց կայարանի ղեկավարները և կոլեկտիվը նրան խիստ սաստեցին, հսկողություն



սահմանեցին նրա վրա և, ապա, շրջապատեցին հոգատարությամբ: Վերջապես Մկրտչյանը նահանջեց կործանման եզրից, սկսեց աստիճանաբար ուղղվել և կոլեկտիվում գտնել իր արժանի տեղը: Նա դարձավ կարգապահ և պարտաճանաչ աշխատող, սիրեց մարդկանց և սիրվեց նրանց կողմից:

ՍՄԿԿ կանոնադրությունը կուսանդամներին պարտավորեցնում է տիրապետել մարքս-լենինյան տեսությանը, բարձրացնել իրենց գաղափարական մակարդակը, նպաստել կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորմանն ու դաստիարակությանը:

Մենք գտնում ենք, որ կոմունիստը չի կարող կանոնադրական այդ պարտականությունը կատարել, եթե միայն զբաղվում է իր պաշտոնական պարտականությունների կատարմամբ, չի մասնակցում կուսակցական կյանքին, չի շփվում մասսաների հետ:

Ներկայումս շինարարական մեծ աշխատանք է ծավալված մեր հանրապետության բոլոր քաղաքներում, շրջկենտրոններում և գյուղական վայրերում: Այդ կառույցները հեռու են Երևանից, բայց նրանք մոտ են երկաթուղային բաժանմունքի աշխատողների սրտերին: Ապահովելով տուֆի, ցեմենտի, ավազի և այլ շինանյութերի ժամանակին փոխադրումները, դրանով իսկ մեր բաժանմունքի աշխատողները դառնում են շինարարական հերոիկայի ակտիվ մասնակիցներ: Կոմունիստներ Հ. Հովհաննիսյանի, Մ. Ավետիսյանի և Հ. Այվազյանի անմիջական մասնակցությամբ զգալիորեն ավելացել է տուֆի փոխադրման ծավալը: Այժմ Արթիկի կայարանում օրական տուֆով բեռնավորվում են 200 վագոններ, որոնք սլանում են հանրապետության տարբեր շինարարական օբյեկտները:

Բաժանմունքի ծառայությունները ու տնտեսություններն ամեն տարի համալրվում են մեծ թվով երիտասարդ աշխատողներով: Մենք ձգտում ենք լավ կազմակերպել նրանց արտադրա-տեխնիկական ուսուցումը, նրանցից նախապատրաստել հմուտ երկաթուղայիններ: Այսպես, 1965 թվականին նոր կադրերի պատրաստման պլանը կատարվել է 132 տոկոսով: Բացի դրանից, տեխնիկական դպրոցներում իրենց արտադրական որակավորումը բարձրացրել են 550 մարդ, աշխատանքի առաջավոր մեթոդների ուսումնասիրման դպրոցներում սովորել են 220 մարդ, երթևեկության 320 աշխատողներ էլ անցել են անվտանգության տեխնիկայի և արտադրության սանիտարական կանոնների պահպանման զանազան դասընթացներով:

Վերջին տարիներին տրանսպորտը հարստացել է նաև նոր տեխնիկական միջոցներով: Հանրապետության մագիստրալներում այժմ գործում են հզոր էլեկտրաքարշներ, ջերմաքարշներ. ամենուրեք ընդլայնվում է ավտոմատացումը գնացքների երթևեկության, բարձման-բեռնաթափման գործում, բարելավվում է ուղևորների սպասարկումը:

Բանվորական ուժի և տեխնիկայի քանակական ու որակական փոփոխությունները ինքնըստինքյան նոր խնդիրներ են դնում կուսակցական կազմակերպությունների առաջ: Մեր կուսկազմակերպությունը ձգտում է այն բանին, որ բաժանմունքում և նրա բաժիններում աշխատող բոլոր կոմունիստները կանգնած լինեն այդ խնդիրների մակարդակին, սիստեմատիկաբար զբաղվեն իրենց գիտելիքների հարստացմամբ, իրենց փորձն ու գիտելիքները նվիրեն ընդհանուր գործին: Հիշատակության արժանի է Ս. Ղլչյանի, Ֆ. Խաչատրյանի, Ժ. Սարգսյանի, Լ. Ղազարյանի, Ռ. Գևորգյանի և ուրիշների երկար տարիների

հայրենանվեր աշխատանքը՝ նոր կադրերի դաստիարակման ու տեխնիկական նորարարությունների արմատավորման բնագավառում։

Դեռևս 1961 թվականից Հայաստանի երկաթուղայինները գործարար սոցիալիստական մրցություն են ծավալել կոմունիստական աշխատանքի բարձր կոչմանն արժանանալու համար։ Բազմաթիվ երկաթուղայիններ ու կոլեկտիվներ արդեն արժանացել են այդ կոչմանը։ Ներկայումս մեր երկաթուղայինների ողջ կոլեկտիվը պայքարում է կոմունիստական աշխատանքի փառքին արժանանալու և Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի ու Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության 50-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ նորանոր բնագծեր գրավելու համար։

1966 թվականի սկզբից բաժանմունքի երկաթուղայինները կատարում և գերակատարում են տեխնիկա-տնտեսական պլաններն ու մրցությամբ ստանձնած բարձր պարտավորությունները։ Ուստի, պատահական չէ, որ առաջնություն շահելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, անցած երեք եռամսյակներում Հայաստանի երկաթուղայիններն իրենց ձեռքում են պահում Սովետական Միության Մինիստրների սովետի և արհեստակցական միությունների Կենտրոնական խորհրդի փոխանցիկ դրոշը։

Ա. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ
Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի ապարատի սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար

---

## ԽԻԶԱԽՈՒՄՆԵՐԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

Մարդիկ քայլում էին ծիրանի այգու եզրով ձգվող կածանով ու փոշի էր բարձրանում։ Գարնանային զեփյուռը մերթընդմերթ այգուց պոկվում էր, առնում փոշու փոքրիկ ամպը, մեկ զարնում էր գետնին, մեկ հանգույց-հանգույց ոլորում, պտուտակ դարձնում, որպեսզի բարձրում նորից բացի հանգույցները։ Ծիրանի այգու առջև՝ կածաններով նախշված բացատում, քամին այսպես խենթորեն խաղացել է տարիներ շարունակ և այդ օրն էլ էր խաղում։ Բայց մարդիկ քայլում էին անտարբեր։ Հողմի փոշեղեն ապտակն անգամ նրանց չէր սթափեցնում. նրանք տարված էին զվարթ զրույցով. մեկը կատակում էր ու մյուսները ծիծաղում էին լիաթոք, ջերմությամբ լցնում շրջապատը։

Բաքվի խճուղու այս անբարեկարգ մասով անցնողներն ակամայից շրջվում էին ու նայում բացատ աճապարողներին։ Այգում ծիրան չկար, բացատի բոստանում ոչ վարունգն էր հասել, ոչ էլ պոմիդորը, ինչո՞ւ էին մարդիկ գնում այնտեղ։ Այգու ծերունի պահակն ու բոստանչին էլ էին զարմացած։ Այսքան մարդ ե՞րբ էին միանգամից բացատ եկել։ Բայց նրանք ինչ-որ բան կռահում էին։ Մեկ-երկու ամիս առաջ երկու ավտոմեքենա կանգնեց ճամփի եզրին և մի քանի շլյապավոր մարդ իջնելով, մտան դարուփոս բացատը։ Նրանք զբոսաշրջիկներ չէին, որոնք սովորաբար ձգտում են գեղեցիկ վայրերը։ Շլյապավոր մարդիկ զննում էին շրջակայքը, ձեռքերը աջ ու ձախ պարզում և ինչ-որ խոսում։ Պահակը, եթե մոտիկ լիներ, և քամին էլ խոսքերը հետ չշրջեր, կարող էր բոլորի ասածն էլ հասկանալ։



Բայց, դե, մինչև մոտենար, մարդիկ հեռանում էին, իսկ վազել հասնելը լավ չէր. երեխա հո չէ, որ հետաքրքրասիրությունը չկարողանա զսպել։ Պահակը պարզ մի բան տեսավ. շլյապավորներից մեկը ձեռքը պարզեց այնպես, որ եթե ձեռքի ուղղությամբ մի գիծ քաշեիր այգով, ծառերի մի ամբողջ շարք գծի այն կողմում կմնար։ Դա տխրեցրեց պահակին։ Ինչո՞ւ պիտի ծառերը գծի այն կողմն անցնեին։ Ամեն մի ծառի համար պայքար է եղել այս չոր, տատասկոտ հողում։ Ծերունու տխուր խոհը երկար կձգվեր, եթե չսկսեր ինքն իրեն համոզել, թե մարդ էր էլի, ձեռքը պարզեց, հո, չքաշեց։

Եվ ահա այդ օրը բացատ քայլող բազմության մեջ պահակը տեսավ այն շլյապավորին, որը ձեռքը պարզել էր։ Գուցե, իսկի էլ նա չէր։ Պահակն ավելի մոտեցավ բազմությանը։

Մարդկանցից շատերը բանվորական արտահագուստով էին։ Նա տեսավ նաև բուլդոզերը, որ երկինքը դղրդացնելով բացատ էր շարժվում, հետո էքսկավատորն էլ երևաց։ Մեքենաների վրա փոքրիկ դրոշներ կային՝ կարմի՜ր-կարմիր։ Տո՛ն է, ինչ է։ Ինչ որ է, լռություն եղավ, և մարդիկ սկսեցին հերթով ճառ ասել։ Բոլորն էլ խոսում էին մի բանի մասին՝ «տեցի»։ Հենց այդպես էլ «տեց» էին ասում։ Այն ժամանակ դեռ շատերը չգիտեին, թե ինչ բան է դա և հայերեն ՋԷԿ հապավումն էլ չկար։ Հետո ամեն ինչ սովորական դարձավ՝ և՛ այգու մի պոունկի կորուստը, և՛ ամայի ու չոր վայրի շենացումը, և՛ ինքը՝ ջերմաէլեկտրակենտրոնը։

Հարթակում հավաքված մարդիկ, իհարկե, մտովի շատ բան էին տեսնում, հասկանում էին, որ ՋԷԿ-ն, ինչ էլ լինի, իր մեջ պետք է ամփոփի և՛ ասֆալտապատ ճանապարհ, և՛ երկաթուղի, և՛ շենքեր։ Այդպես է նաև հիդրոէլեկտրակայանը։ Նրանք՝ այդ մարդիկ, Սևան—Հրազդան կասկադ են կառուցել և ամեն մի հիդրոէլեկտրակայանի հետ մեկտեղ ստեղծել են բանավաններ, լեռնային արահետները դարձրել լայնահուն ճանապարհներ։ Այդ մարդիկ հայոց ժայռակոփ հողում ստորգետնյա ուղիներ են բացել, լույսի փոխվող ջրի ուղիներ։ Ճառ ասողներից մեկը, որ Երևանգէսի գլխավոր ինժեներն էր՝ պահակին ծանոթ շլյապավորը, կրկնում էր, որ այս նոր էներգետիկ կառույցի հզորությունը մի քանի տարի հետո հավասարվելու է Սևան—Հրազդան կասկադի հզորությանը։ Մի տեսակ ռոմանտիկական էր հնչում դա։ Ախր, ո՞նց կլինի, կասկադի վեց հիդրոէլեկտրակայանները տասնամյակների ընթացքում են ստեղծվել, իսկ հիմա այսքան մեծ հզորություն մի տասնամյակից էլ քի՞չ ժամանակո՞ւմ։ Բանվորներից մեկն, այս բանում, ավելի շատ իրեն, քան ուրիշներին, համոզելու համար, ասաց.

— Տէց է, եղբայր, գէս չկարծես...

Բայց, իհարկե, բանն այդ տարբերությունը չէր։ Ուղղակի, ժամանակի ու մասշտաբի հարց էր։ Հիմա կյանքն ավելի սրընթաց է և կառուցումներն էլ պետք է խիստ արագ կատարվեն, հիմա նախագծումները մեծ են և մեծ, հզոր ճիգեր են պետք դրանց կենսագործման համար։

Եվ սկսվեց աշխատանքային մեծ պայքարը։

Պահակին ծանոթ մարդը՝ Գուրգեն Հախվերդյանը, Երևանգէսի գլխավոր ինժեներն էր։ Նա անցել է բազմամյա աշխատանքի ուղի՝ դժվարին, մաքառումներով լի, բայց և միշտ ստեղծագործական ու փառավոր ուղի։ 1940 թվականին, փոքրահասակ, բարալիկ մի երիտասարդ էր նա, երբ ավարտեց Թբիլիսիի պոլիտեխնիկական ինստիտուտը։ Երիտասարդ ինժեները մեծ երազներ

ռներ, արտասովոր երազներ: Գուրգեն Հախվերդյանը փառքի ու անվան մասին չէ, որ մտածում էր, այլ՝ հեռավոր ճանապարհների, հյուսիսի խստաշունչ ձմեռների, մայր հողի հարստաբեր երակների հայտնաբերման, լույսի և էներգիայի կայանների կառուցման: Նրա համար սարսափելի չէր ցրտաշունչ Սիբիրը, որովհետև հոգում մեծ ջերմություն կար և երազանքի լույս: Եվ նա ընկերների հետ մեկնեց Կալումա, ջերմաշունչ հարավից անցավ լեռնաշխարհ: Սկզբում որպես վարպետ աշխատեց: Հետո դարձավ հանքամասի պետ:

Մարդը գեղեցիկ է իր աշխատանքով: Եվ Գուրգեն Հախվերդյանի կյանքն էլ փայլատակում է բեղմնավոր գործերով: Հանքամասի պետի պոստում դրսևորվում են նրա կազմակերպական ընդունակությունները, մարդկանց հետ աշխատելու, նրանց հետ խորհելու ու գործելու կարողությունները:

Մարդկանց միասնությունը խարսխվում է նպատակի ընդհանրության, փոխադարձ սիրո և հարգանքի վրա: Հանքագործներն էլ սիրում և հարգում էին իրենց պետին, որի գլխավորությամբ վարպետորեն բռնել էին հողի ոսկե երակը և անդադրում բազմապատկում էին հայրենիքի հարստությունը:

Շուտով Գուրգեն Հախվերդյանը դառնում է հանքի ամենաճանաչված ու հարգված աշխատողներից մեկը: Հենց այստեղ, Կալումայում, 1946 թվականին նա ընդունվում է կոմունիստական կուսակցության շարքերը: Կոմունիստի կոչումը սովետական մարդու համար մեծ պատիվ է, բարձր պատասխանատվություն: Այդպիսին եղավ այն նաև Գ. Հախվերդյանի համար:

Կուսակցության կամքով, երիտասարդ կոմունիստը գնում է այնտեղ, ուր ավելի ձեռներեց աշխատողներ են պահանջվում՝ կառույցից կառույց, տեղամասից տեղամաս, հանքից հանք: Եվ կոմունիստական գաղափարներով համակված, երազող ու ստեղծագործող մարդը ո՛չ միայն չի վախենում և ընկճվում դժվարություններից, գանգատվում բախտից, այլ, ընդհակառակը, հպարտ է, որ ինքն այդքան պիտանի է մարդկանց, Հայրենիքին:

Ահա նա Արփա—Սևան ջրահանգույցի Ջերմուկի շինվարչության պետն էր: Ցրտաշունչ փոքրիկ լեռնաշխարհ: Կյանքը՝ վագոն-տնակների մեջ: Ցուրտ ձմեռ, սառնամանիքներ. բայց աշխատանքի եռուզեռը չի դադարում: Թե այդ կոլեկտիվն ինչ գործ է անում, աշխարհ գիտե... Իսկ Գուրգեն Հախվերդյանի աշխատանքային ուղին շարունակվում է: Երեկ Երևանի ջերմաէլեկտրակենտրոնի գլավոր ինժեներն էր, այսօր՝ Հայհիդրոէներգոշինի արտադրական բաժնի վարիչը: Ջերմաէլեկտրակենտրոնը նոր տիպի կառույց է ու հարցերն էլ այստեղ նոր են, անսովոր: Պետք է արագորեն յուրացնել նորը, հետո սովորեցնել նրանց, ովքեր շունչ ու մարմին են տալիս նախագծումներին: Նա ջերմաէլեկտրակենտրոնում հաճախ էր լինում. գլխավոր ինժեները երիտասարդ է, պետք է օգնել նրան: Գլխավոր ինժեների աշխատասենյակում, որի բաց պատուհանից սքանչելի մոնումենտալությամբ է երևում ջերմաէլեկտրակենտրոնի կառույցը, պատերին փակցված գծագրեր կան: Իսկ թե ինչ են դարձել գծագրերը, պետք է տեսնել միայն. հեքիաթային լուսաճաճանչ մի քաղաք, տուրբոգեներատորներ, կաթսաներ... Ահա՝ ինչ ասել է ջերմաէլեկտրակենտրոն: Յոթ ագրեգատների սրտերն արդեն տրոփում են և նրանց առաքած էներգիան սնում ու հզորացնում է հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները: Հզորությունը՝ 550 հազար կիլովատ:

— Այսքանը կատարվել է յոթնամյակում,— ասում է Գուրգեն Հախվերդյանը:— Բայց ջերմաէլեկտրակենտրոնը նաև հնգամյակի կառույց է: Դիրեկ-



տիվներում նախատեսված է հնգամյակում ավարտել կառուցումը: Եվ շուտ է ավարտվելու, հնգամյակի առաջին տարում. օրերս գործարկվեց 7-րդ բլոկը, ջերմաէլեկտրակենտրոնը ստացավ լրիվ հզորությունը:

Լսում ես և ուրախությամբ զգում, որ կյանքն արդեն ռոմանտիկական թվացող նախագծերից էլ է առաջ անցնում:

Գուրգեն Հախվերդյանը շտապում է: Գլխավոր ինժեների, մոնտաժող մասնագետների հետ միասին նա ինչ-որ գծագրեր է նայում և նշումներ անում կարմիր մատիտով: Այդ նշումները՝ կարմիր թռչնակները, այնպե՞ս նման են փոքրիկ դրոշակների, որոնք նոր կառուցվող օբյեկտներում իրենց կոշտացած ձեռքերով սովորաբար ամրացնում են բանվորները: Նախագծերի վրա կարմիր նշումները շատ են: Եվ մի՞թե դրանք այն բարձունքները չեն, որ այսօր նվաճել են աշխատավորի միտքն ու հոգին, վաղը նվաճվելու են ձեռքերով, կառույցի ինտերնացիոնալ կոլեկտիվի՝ ուս-ուսի աշխատող հայի, ռուսի, ուկրաինացու, բելոռուսի, լեհի, ադրբեջանցու.. երկու տասնյակից էլ անցնող ազգերի ներկայացուցիչների աշխատանքով՝ մայր երկրի տարբեր կառույցներում:

Գլխավոր ինժեներն ու մասնագետները դուրս են գալիս և շրջում կառույցը: Օբյեկտներում սկսվում է գործին անտեղյակ մարդու համար վիճաբանություն, իսկ իրականում՝ սովորական ու խիստ գործնական զրույց: Հարցերը բազմազան են: Դրանք վերաբերում են և՛ փոքրիկ պտուտակին և՛ հսկա ագրեգատին: Հարցերը շատ են, լուծումները՝ նույնպես: Իսկ ժամանակը կարճ է, շա՜տ կարճ: Ու զարմանում ես, որ ժամանակի մեծ պահանջ ունեցող մարդիկ կարողանում են սեղմել այն, կրճատել ժամկետները, օբյեկտները գործարկել ժամանակից շուտ:

Գուրգեն Հախվերդյանն այդ մեծ ծառայությունը վերագրում է կոլեկտիվին: «Նրանք են ամեն ինչ անում, այդ նրանք են ուժ ու լույս տալիս իմ երազանքին»: Իսկ կոլեկտիվը, նրանք, որոնց հետ տարիներ շարունակ աշխատել է Գուրգեն Հախվերդյանը, նրա մասին այսպես են արտահայտվում.

— Երազող մարդ է, հոգին լի, կյանքով այրվող...

Եվ նկատել են այդ, դրանում համոզվել խոր թունելում, հանքի երակ բացելիս, լույսի կայան կառուցելիս, լսարանում, ուր հանդարտ, համոզիչ հնչել է պրոպագանդիստի նրա խոսքը: Իսկ շինարարը շատ տարիներ է իր աշխատանքին զուգակցել պրոպագանդիստական գործը: Խոսքն ու գործը նրա հոգում համակցված են միշտ: Ասածը հավաստի է, զրույցը սրտաբաց ու խոսքը՝ գերող, գործի մղող: Այո՛, նա մարդկանցից, կոլեկտիվից անբաժան է, նրանցով է ուժեղ: Իսկ կոլեկտիվն իր ուժը ղեկավարին դյուրությամբ և իզուր չի տալիս, նա գիտե թե ում և ինչու է տալիս այն:

Եվ հենց հավատի այդ ուժով է կյանք առել մայրաքաղաքի հարավային մասի երբեմնի ամայի հարթությունը, լույսի նոր աղբյուր ստեղծվել: Թող ավելի շատ լույս ունենա մեր Հայաստանը: Դա կոմունիստ Գ. Ա. Հախվերդյանի նվիրական երազանքն է: Իսկ որ Հայաստանը մոտակա տարիներին ավելի շատ լույս կունենա, այդ արդեն զգում են բոլոր բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները: Ավելի ճիշտ, այդ զգում են բոլոր սովետական մարդիկ, որոնց նվիրական զգացմունքներն ու ցանկությունները զարմանալի հստակությամբ արտահայտված են ՍՄԿԿ XXIII համագումարի՝ նոր հնգամյակի վերաբերյալ դիրեկտիվներում:

ՎԼ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԵՂԱՆԱԿՆԵՐԸ*

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

### 3. ՀԻՄՆԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

*Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման համար կարևոր է ոչ միայն կապիտալ ներդրումների ծավալին համապատասխան ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի աճը, այլև ստեղծված ֆոնդերի առավել արդյունավետ օգտագործումը: Ժողովրդական տնտեսության արտադրական ֆոնդերի օգտագործման արդյունավետությամբ են պայմանավորված սոցիալիստական ընդլայնված վերարտադրության տեմպերն ու մասշտաբները: Իսկ դրա բարելավումը կնշանակի առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների գործող ֆոնդերով ստանալ շատ արտադրանք, որը հնարավորություն կընձեռի վերարտադրության բարձր տեմպերի պահպանման հետ միասին, ապահովել ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը:*

*Հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացումը կյանքի կկոչի լրացուցիչ արտադրական ռեզերվներ, որոնց հաշվին ժողովրդական սպառման առարկաներ արտադրող ճյուղերին կտրամադրվի արտադրամիջոցներ, կբարձրանա նշված ճյուղերի զարգացման տեմպերը և դրանք կմոտեցվի արտադրության միջոցներ արտադրող ճյուղերի զարգացման տեմպերին:*

*Վերջապես, հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման աստիճանի բարձրացումը կապահովի երկրի աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործումը: Այդ ամենի հիման վրա կարագանա մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսը, այն կզուգակցի ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը:*

*Հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման բարելավումը, նրա արդյունավետության աստիճանի բարձրացումը դրսևորվում են, այսպես կոչված, ֆոնդահատույցի բարձրացման կամ դրանից տարբեր արտադրանքի ֆոնդատարության ցուցանիշի մեջ: Ինչպես հայտնի է, ֆոնդահատույցը նշված ֆոնդերով թողարկվող արտադրանքի հարաբերությունն է այդ ֆոնդերի նկատմամբ* $\left(\frac{\text{Արտ.}}{\text{Ֆոնդ.}}\right)$: *Պլանավորման պրակտիկայում թույլ տրված սխալները և մասնավորապես այն, որ արտադրության ընդլայնումն ոչ բոլոր դեպքերում էր ելնում իրական հնարավորություններից, հասցրեց ֆոնդահատույցի և աշխատանքի արտադրողականության տեմպերի իջեցմանը:*

*Եթե 1951—1955 թվականներին հիմնական արտադրական ֆոնդերի յուրաքանչյուր ռուբլու աճին համապատասխանում էր 1 ռուբլի 16 կոպեկ լրացուցիչ արտադրանքի թողարկում, ապա 1956—1960 թվականներին այն կազմեց 91, իսկ 1961—1965 թվականներին՝ 79 կոպեկ: Համապատասխանաբար իջան աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը՝ 8,2 տոկոսից 6,5 և 4,6 տոկոսի:*

*Այդ ամենի հետևանքով յոթնամյա պլանը կատարելու համար հարկ եղավ լրացուցիչ կապիտալ ներդրումներ հատկացնել կուտակման ֆոնդերի բաժինը մեծացնելու, սպառման ֆոնդերինը պակասեցնելու ճանապարհով և ժողովրդական տնտեսությունում ավելացնելու աշխատողների թիվը, այսինքն՝ պլանը կատարել արտադրության էքստենսիվ զարգացմամբ: Դանդաղեցին արտադրության տեմպերը, իջավ նրա արդյունավետությունը, որը դրսևորվեց ֆոնդահատույցի անկմամբ: Սպառման առարկաներ թողարկող արտադրության տեմպերի դանդաղումը, գյուղատնտեսության ետ մնալը հասցրեցին արտադրության միջոցների արտադրության և սպառման առարկաների արտադրության միջև որոշակի անհամապատասխանության:*

*Այսպիսով, յոթնամյա պլանի կատարումը արդյունաբերության գծով իրականացավ անհամամասնությունների առաջացման և հասարակական արտադրության արդյունավետության իջեցման պայմաններում:*

*Նոր հնգամյա պլանի կարևորագույն խնդիրներից է՝ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմամբ լիկվիդացնել գոյություն ունեցող անհամամասնությունները: Դրա համար անհրաժեշտ է բարձրացնել հիմնական արտադրական ֆոնդերի ֆոնդահատույցը և, ընդհակառակը՝ իջեցնել արտադրանքի ֆոնդատարողությունը:*

*Արտադրանքի և ֆոնդերի կամ ֆոնդերի և արտադրանքի հարաբերակցությունը կախում ունի մի քանի այլ հարաբերակցություններից, որոնք գոյանում են արտադրական կարողությունների և հիմնական ֆոնդերի աճման տեմպերի միջև: Եթե մեքենաների ու սարքավորումների կարողություններն աճում են ավելի արագ, քան նրանց արժեքները, ապա արտադրանքն էլ ավելի արագ է աճում, քան հիմնական ֆոնդերը, իսկ դա նշանակում է բարձրացնել ֆոնդահատույցը: Ինչպե՞ս են գոյանում նշված համամասնությունները:*

*Տեխնիկական առաջադիմությունը, մի կողմից, մեքենաների, մեխանիզմների ու ապարատների կոնստրուկցիաների բարդացումն է, մյուս կողմից՝ դրանց արժեքի իջեցումը: Դեռևս Մարքսը նշում էր, որ աշխատանքի արտադրողական ուժերի բարձրացման հետևանքով հիմնական կապիտալի արժեքը մեծանում է ո՛չ այն համամասնությամբ, ինչպես նրա նյութական ծավալը: Հիմնական ֆոնդերի արժեքի և արտադրական կարողությունների աճման տեմպերի հարաբերակցության գործում կարևոր նշանակություն ունի ֆոնդերի ակտիվ և պասսիվ մասերի միջև գոյացող հարաբերակցությունը:*

*Արտադրանքի ավելացման գործում էական դեր է խաղում ֆոնդերի ակտիվ մասը, մինչդեռ ֆոնդերի արժեքի մեծությունը կախում ունի նաև պասսիվ մասի ծավալից: Ըստ ակտիվ և պասսիվ մասերի, ՍՍՀՄ արդյունաբերության հիմնական ֆոնդերի կառուցվածքն այսպիսի փոփոխության է ենթարկվել:*

** Սկիզբը տես «Լենինյան ուղիով», № 11-ում:*

(տոկոսով ընդհանուրի մեջ) [1]

| | 1950 թ. | 1955 թ. | 1958 թ. | 1962 թ. |
|---|---|---|---|---|
| Շենքեր | 28 | 27 | 27 | 29 |
| Կառուցվածքներ | 27 | 30 | 32 | 32 |
| Ընդամենը | 55 | 57 | 59 | 61 |
| Ուժային սարքավորումներ | 8 | 9 | 8 | 8 |
| Բանող մեքենաներ, սարքավորումներ, չափիչ և կարգավորող սարքեր | 27 | 25 | 24 | 26 |
| Ընդամենը | 35 | 34 | 32 | 34 |
| Տրանսպորտի միջոցներ | 7 | 7 | 7 | 4 |
| Այլ ֆոնդեր | 3 | 2 | 2 | 1 |

Աղյուսակից երևում է, որ արդյունաբերության արտադրական ֆոնդերի կազմում աստիճանաբար բարձրացել են ֆոնդերի պասսիվ մասերի տեսակարար կշիռները և, ընդհակառակը՝ իջել ակտիվ մասերինը։ Միաժամանակ անհամապատասխանություն գոյություն ունի նշված երկու մասերի միջև, որը դրսևորվում է արտադրական տարածությունների որոշակի ավելացմամբ։

Այսպես, 1964 թվականին երկրում մեկ և կես միլիոն քառակուսի մետր արտադրական տարածությունները անօգտագործելի էին սարքավորումների պակասի պատճառով։ Մինչդեռ, շատ գործարանների բակերում և պահեստներում զգալի չափով սարքավորումներ ընկած էին առանց տեղակայման։

Արտադրության արդյունավետությունը և նրա զարգացման տեմպերը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է հիմնական ֆոնդերի ծավալի մեջ բարձրացնել մեքենաների ու սարքավորումների տեսակարար կշիռը, ինչպես նաև ռացիոնալ օգտագործել արտադրական հրապարակները։ Դրան կարելի է հասնել, ամենից առաջ, կապիտալ ներդրումների ավելի մեծ բաժինը ձեռնարկությունների վերակառուցմանն ու ընդլայնմանը հատկացնելու միջոցով, ապա արտադրության համակենտրոնացման աստիճանի բարձրացմամբ։

Մեծ կարողության ագրեգատների, գերհզոր տուրբինների, դոմնային հնոցների, գաղահատոցների կիրառումը կհասցնի ֆոնդերի ընդհանուր ծավալի մեջ նրա ակտիվ մասի տեսակարար կշռի մեծացմանը։ Այդ հնարավոր է իրագործել նաև սարքավորումներն ավելի փոքր արժեք ունեցող շենքերում տեղակայելով։ Այս ամենի շնորհիվ հիմնական ֆոնդերի ինտենսիվության բարձրացումը կգերազանցի նրանց արժեքի մեծացմանը, այսինքն՝ կբարձրանա ֆոնդերի արդյունավետությունը։

Ձեռնարկություններում արտադրական կարողությունների մեծացմանը, առանց նրանց արժեքը մեծացնելու, կարելի է հասնել, եթե սարքավորումներն առավել ռացիոնալ բաշխվեն հիմնական և օժանդակ արտադրամասերի միջև։

Քննենք, թե մեր երկրում ինչպես է օգտագործվում հաստոցապարկը։ Թեպետ ՍՍՀՄ հաստոցապարկի հզորությունն ավելի է, քան ԱՄՆ-ում, բայց մեքենաշինական և մետաղամշակման ձեռնարկություններում եղած հաստոցների քանակը մեզ մոտ 30 տոկոսով փոքր է ԱՄՆ-ից (Производство накопление, потребление, М., 1965, стр. 233)։ Այդ բացատրվում է նրանով, որ մեր երկրում մետաղահատ հաստոցների զգալի մասը գտնվում է վերանորոգման և այլ օժանդակ արտադրամասերում։

Հիմնական արտադրական ֆոնդերի ֆոնդահատույցի բարձրացումը մեծ

---

[1] Народное хозяйство СССР в 1958 г., стр. 59. Народное хозяйство СССР в 1959 г., стр. 69. Промышленность СССР, статистический сборник, 1964 г., стр. 70.



չափով կախված է արտադրական կարողությունների օգտագործման աստիճանից։

Հիմնական ֆոնդերի ակտիվ մասը կազմող մեքենաների սարքավորումների օգտագործման աստիճանը տարվա ընթացքում կարելի է բարձրացնել ինչպես աշխատաժամանակի ընդհանուր քանակի ավելացմամբ, այնպես էլ աշխատանքի ինտենսիվության բարձրացմամբ։ Երկու դեպքում էլ արտադրանքի թողարկումը կաճի առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների։ «Միևնույն աշխատամիջոցում ուրեմն միևնույն հիմնական կապիտալը կարող է ավելի ներգործման կերպով օգտագործվել ինչպես նրա օրական գործադրման ժամանակը երկարացնելով, այնպես էլ նրա կիրառումը լայնացնելով, առանց ավելադիր դրամածախս անելու հիմնական կապիտալի համար» (Կ. Մարքս, Կապիտալ, հատոր II, էջ 324 հայերեն)։

Հիմնական ֆոնդերի էքստենսիվ օգտագործման աստիճանը բնութագրելու համար, որպես կանոն, կիրառվում է հերթափոխության գործակիցը, որն, ինչպես հայտնի է, որոշվում է բանվորների ընդհանուր և ամենամեծ հերթափոխի աշխատողների թվի հարաբերությամբ։ Այս հարաբերությունը ցույց է տալիս, որ մեր արդյունաբերության և նյութական արտադրության մյուս ճյուղերում կան մեծ չափով չօգտագործված ռեզերվներ։ ՍՍՀՄ արդյունաբերության հերթափոխության միջին գործակիցը 1,5 է, այսինքն՝ ձեռնարկություններն աշխատում են մեկ ու կես հերթ, մեքենաշինության մեջ՝ 1,4, թեպետ, որպես կանոն, մեքենաշինական գործարանները երկհերթ են։ Ուրեմն, ֆոնդերի օգտագործման ժամանակը ընդամենը ռեժիմի 70 տոկոսն է կազմում։

Ըստ ՍՍՀՄ կենտրոնական վիճակագրական վարչության տվյալների, 1962 թվականին 500 մեքենաշինական գործարաններում առաջին հերթափոխին չեն գործել մետաղահատ հաստոցների 24 տոկոսը, երկրորդինը՝ 39, երրորդինը՝ 78 տոկոսը։ Հաշվարկումներից պարզվել է, որ եթե մեքենաշինական բոլոր ձեռնարկություններն անցնեին երկհերթ աշխատանքի, հնարավոր կլիներ գործող արտադրական տարածություններում արտադրանքն ավելացնել 20 տոկոսով, աշխատողների թիվը ավելացնելով միայն 3—5 տոկոսով։

Ֆոնդերի ոչ ռացիոնալ օգտագործման գլխավոր պատճառներն էին նախ՝ աշխատանքի կազմակերպման և ձեռնարկություններում նյութատեխնիկական մատակարարման գործում եղած թերությունները, ձեռնարկությունների ներսում՝ տեղամասերի և ագրեգատների միջև համամասնությունների խախտումը։ Դրանց կարողությունը սովորաբար որոշվում է պատրաստի արտադրանք թողարկող ցեխի կարողությամբ։

Ձեռնարկության այդ և մյուս տեղամասերի միջև անհամապատասխանության հետևանքով, հաճախ պատրաստի արտադրանք թողարկող արտադրամասի համեմատությամբ, մատակարարող արտադրամասերում գոյանում են ավելի շատ կարողություններ, որոնք, ըստ էության, չեն օգտագործվում։ Լինում է և հակառակը. պատրաստի արտադրանք թողարկող տեղամասին անընդմեջ կիսաֆաբրիկատներ չեն մատակարարվում և այն աշխատում է ոչ լրիվ կարողությամբ։ Երկու դեպքում էլ, ֆոնդերի որոշ մասի չօգտագործման հետևանքով, իջնում է ֆոնդահատույցը, հետևապես դրանց օգտագործման տնտեսական արդյունավետությունը։

Անհրաժեշտ է նշել, որ գյուղատնտեսության մեջ հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման աստիճանն ավելի ցածր է։ Այդ իր հերթին իջեցնում է ողջ ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերի արդյունավետության աստիճանը։ Այստեղ աչքի է զարնում հերթափոխության գործակցի խիստ ցածր լինելը։ Գյուղատնտեսական մեքենաներն ու սարքավորումները մեծ մասամբ աշխատում են մեկհերթ։ Տրակտորային պարկի հերթափոխության գործակիցն ամենաշատը 1,3 է, իսկ շատ տնտեսություններում մեկից էլ ցածր է։ Փորձը ցույց է տվել, որ այնտեղ, ուր տրակտորներն աշխատում են երկհերթ, աշխատանքի վատ կազմակերպման, տեխնիկական սպա-

ոչ պակաս, քան 8—10 տոկոսով։ Հնգամյակի եզրափակիչ տարում պետք է տնտեսել ավելի քան 8 միլիոն տոննա գլանվածք, 85 միլիոն տոննա պայմանական վառելիք, մինչև 50 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա և այլն։ Հումքի, նյութերի, վառելիքի օգտագործման բարելավումը մեծ չափով կախում ունի տնտեսական ղեկավարման ճիշտ կազմակերպումից, աշխատողների ակտիվությունից, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների կիրառումից։

Արտադրության արդյունավետությունը բարձրացնելու վերաբերյալ կուսակցության XXIII համագումարի որոշումները պահանջում են, որ բոլոր աշխատողների մոտ ստեղծվի բարոյական ու նյութական խթաններ՝ տնտեսելու, ամենուրեք և հետևողականորեն պայքարելու անտնտեսավարության ամեն մի դրսևորման դեմ։ Սոցիալիստական արտադրության ժամանակակից մակարդակը, նրա տեխնիկական հագեցվածությունը այնպիսին է, որ լայն հնարավորություն է ընձեռում իջեցնելու արտադրանքի նյութատարությունը։ Անհրաժեշտ է արտադրության մեջ լայնորեն կիրառել նյութերի նոր, առավել առաջադիմական տեսակներ։ Երկրի ինդուստրիալ զարգացման այսօրվա աստիճանում արդյունաբերության հումքային բալանսում մեծ տեսակարար կշիռ ունեն ոչ գյուղատնտեսական հումքի տեսակները, որոնք ստեղծվում են արդյունաբերության «Ա» խմբի ձեռնարկություններում։ Դրանցից են՝ սև և գունավոր մետաղները, պլաստմասսաները, մետաղային և ոչ մետաղային հանածոները։ Հումքի նշված տեսակների մի մասն օգտագործվում է ժողովրդական սպառման առարկաներ թողարկող ճյուղերում, ուստի, մասնավորապես «Ա» խմբի արտադրանքների նյութատարության կրճատումը կնշանակի «Բ» խմբի համար լրացուցիչ հումքի մատակարարման հնարավորություն ստեղծել, և այդ հիման վրա արդյունաբերության երկու խմբերի արտադրության տեմպերը միմյանց մոտեցնել։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի տնտեսական ռեֆորմի հետևողական կենսագործումը կբարձրացնի աշխատողների նյութական շահագրգռվածությունը, ստեղծագործական նախաձեռնությունը հանուն խնայողության ռեժիմի։ Նյութական ռեսուրսների խնայողաբար օգտագործումը, որը հնարավորություն կընձեռի բարձրացնելու հասարակական արտադրության արդյունավետությունը, կարագացնի մեր առաջընթացը դեպի կոմունիզմ։

Հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու մեր կողմից ցույց տրված գործոններից բացի, գոյություն ունեն մի քանի գործոններ ևս, որոնց վրա կանգ առնելը հնարավոր չէ այս հոդվածում։

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԻ ՃԵՄԻՆ

Կ. ՂԱՄԲԱՐՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ

Մեր հայրենիքը թևակոխում է տնտեսավարման խոր վերափոխումների փուլը։ Կոմունիզմի կառուցման բարդ խնդիրների լուծումն այլևս հնարավոր չէ տնտեսավարման հին և իրենց դարն ապրած եղանակներով։ Արտադրության բոլոր ձեռնարկություններում ներդրված յուրաքանչյուր ռուբլին պետք է հատուցվի շահութաբերությամբ և սեղմ ժամկետներով։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ու ձեռնարկությունների լավագույն արդյունավետություն, նրանց հիմնական ու շրջանառու միջոցների ըստ ամենայնի ընդլայնված վերարտադրություն,— ՍՄԿԿ XXIII համագումարի կանխագծած տնտեսական մեծ ռեֆորմի այս նոր պրոբլեմների հաջող լուծումը պահանջում է էական մի շարք փոփոխություններ արդյունաբերական կառավարման արդի սիստեմում։ Դեռ ավելին. տնտեսական ռեֆորմի կիրառումը ոչ միայն հարուցում է սոցիալիզմի քաղաքատնտեսության օրենքների ճշգրիտ իմացության հրատապությունը, այլև նոր հարաբերությունների ու չափանիշների սահմանում արտադրական ձեռնարկությունների ողջ ղեկավար սիստեմի ոլորտում։ Անձնական նախաձեռնության սահմանների ընդլայնումը, ձեռնարկությունների ու աշխատավորների նյութական խրախուսման նպատակով հատկացվող միջոցների աճը, պլանավորման և իրացման ոլորտում սուբյեկտիվիզմի ու վոլյունտարիզմի հաղթահարումը նոր և հաստատուն բազա են պատրաստում մեր տնտեսավարների լավագույն արդյունավետությամբ գործելու համար։

Սակայն տնտեսական ռեֆորմը գալիս է ջրի երես հանելու և այն ձեռնարկությունների ու հիմնարկների ղեկավարներին, որոնք տարիներով գործում են անշահավետ, չգիտեն ու չեն կարողանում գտնել տնտեսության զարկերակը և օբյեկտիվորեն խոշոր վնասներ են պատճառում ժողովրդական տնտեսության բարգավաճմանը։ Հետևաբար, տնտեսական ռեֆորմի կենսագործումը օժտելով տնտեսավարներին պատշաճ իրավունքներով, միաժամանակ ավելի քան բարձրացնում է նրանց պատասխանատվությունը տնտեսության կրած յուրաքանչյուր վնասի, անորակ ապրանքի, անպլանայնության տարրերի, ապարդյուն ծախսերի, աշխատանքային կարգապահության խախտման և անշահավետության երևույթների համար։ Այսպիսով, այժմ տնտեսավարելը որքան պատվաբեր ու գնահատելի, նույնքան և դժվարին ու բարդ է դառնում։ Ո՛չ միայն խոր իմացություն ու հարուստ գիտելիքներ, ո՛չ միայն աշխատանքի

բարձր կուլտուրա, այլև հաշվենկատություն, տնտեսական, «մանրուքների» բազմակողմանի հաշվառում և սահմանված պլանների ճկուն իրագործման կարողություն:

Այս հատկանիշներից բացի, այժմ մեր տնտեսավարները պետք է օժտված լինեն ավելի շատ կազմակերպական ունակությամբ և մարդկանց աշխատանքային առօրյան տակտով ու հետևողականորեն վարելու ձիրքով: Այսօր կյանքը պահանջում է տնտեսավարներից մարդկային կոլեկտիվների ղեկավարությանը զուգակցել գեթ նվազագույն մանկավարժություն: Նոր մարդու, նոր սերնդի դաստիարակության շահերն այդ են թելադրում:

Այս տեսանկյունից կամենում ենք շոշափել մեր հանրապետության արդյունաբերության անցած ամիսների պլանների կատարման մի քանի հարցեր:

Հանրապետության արդյունաբերության աշխատողները կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, լուրջ հաջողություններ են ձեռք բերում ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյակի պլանի կատարման ասպարեզում:

Հնգամյակի առաջին տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցությունն ու կոմունիստական աշխատանքի շարժումն ընթանում են Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 և Լենինի ծննդյան 100-ամյակը արտադրական նոր հաջողություններով դիմավորելու նշանաբանով:

Հոբելյանական՝ 1967 թվականի պատվին ծավալված սոցիալիստական մրցության առջևից են գնում հանրապետության շքանշանակիր արդյունաբերական ձեռնարկությունները: Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձա-մոլիբդենային կոմբինատի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանները, Լենինականի մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատը հայրենասիրական մեծ նախաձեռնություն ցուցաբերեցին:

Ընթացիկ տարվա տասն ամիսների արդյունաբերական արտադրանքի պլանը կատարված է 103,9 տոկոսով: Թողարկվող արտադրանքի աճը, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, 12,6 տոկոս է: Հատկապես մեծ հաջողությունների են հասել հաստոցաշինության և գործիքաշինության (25,6 տոկոս), թեթև արդյունաբերության (11), սարքաշինության, ավտոմատացման միջոցների և կառավարման սիստեմների արդյունաբերության (18,3), սննդի արդյունաբերության (16,5), մինիստրությունների և էներգետիկայի ու էլեկտրիֆիկացման գլխավոր վարչության (23,5) ձեռնարկությունները:

Նախորդ տարվա համեմատությամբ զգալիորեն աճել է նաև գունավոր մետալուրգիայի, քիմիական, էլեկտրա-տեխնիկական, շինանյութերի, կաթի և մսի արդյունաբերական ձեռնարկությունների թողարկող արտադրանքը:

ՍՄԿԿ XXIII համագումարը հնգամյակի տնտեսական գլխավոր խնդիրը համարեց՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների ըստ ամենայնի օգտագործման, հանրային ողջ արտադրության ինդուստրիալ զարգացման, նրա արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա արդյունաբերության հետագա աճի ապահովումը:

Արտադրության կատարելագործման, սարքավորումների և մեքենաների



շահագործման արդյունավետության բարձրացման, ներքին հնարավորությունների օգտագործման շնորհիվ ապահովվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման 9-ամսվա պլանի կատարումը: Ողջ արդյունաբերությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման 10 ամսվա պլանը կատարեց 104,2 տոկոսով, ընդ որում, պլանը գերակատարվեց արդյունաբերական մինիստրությունների, գերատեսչությունների և տեղական սովետների արդյունաբերության գծով:

Թողարկվող արտադրանքի աճի մոտ մեկ երրորդը աշխատանքի արտադրողականության բարձրացման արդյունք է: Այժմ ձեռնարկությունները ձգտում են պլանները կատարել աշխատանքի և միջոցների մինիմալ ծախսումով: Ըստ ամենայնի բարելավելով տնտեսական ցուցանիշները, բարձրացնելով ձեռնարկությունների շահութաբերությունն ու եկամտաբերությունը: Հանրապետության արդյունաբերությունն անցած 9 ամիսներին արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ տնտեսել է մոտ 9 միլիոն ռուբլի: Գերակատարվել է նաև օգուտների պլանը:

Արձագանքելով Մոսկվայի և Լենինգրադի ձեռնարկությունների հայրենասիրական նախաձեռնությանը, մեր արդյունաբերական կոլեկտիվները ստանձնել են պարտավորություններ և պայքարում են մետաղների, նյութերի և էլեկտրաէներգիայի խնայողաբար օգտագործման համար:

Արդյունաբերության առջև ծառացած առավել հրատապ խնդիրներից են՝ թողարկվող արտադրանքի որակի բարելավումը, մեքենաների շահագործման տևողության երկարացումը: Սովետական արդյունաբերությունն արդեն ձեռք է բերել տեխնիկական այնպիսի հասունություն, որ կարող է ապահովել ժողովրդական տնտեսության և համաշխարհային շուկայի աճող պահանջները: Թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, նոր տեսակների ստեղծման և դրանց արտադրությունը յուրացնելու ուղղությամբ լուրջ աշխատանք են կատարում Երևանի պոլիվինիլացետատ, փորձնական մաթեմատիկական հաշվիչ մեքենաների, Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի, Լուսավանի ներտաշ հաստոցների, Կիրովականի ճշգրիտ հաստոցների և այլ գործարաններ:

1966 թվականի անցած ամիսների պլանների կատարման արդյունքները ցույց են տալիս, որ հանրապետության արդյունաբերության աշխատողները ստանձնած պարտավորությունների կատարման ուղղությամբ հասել են ակնհայտ հաջողությունների: Սակայն ձեռք բերված հաջողությունների կողքին կան նաև թերություններ: Դեռևս մեծ է պլանները չկատարող ձեռնարկությունների թիվը. նրանց մի մասը չի ապահովում տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարձրացումը, թույլ է տալիս անարտադրողական մեծ ծախսեր, մի շարք գործարաններում տակավին ցածր է աշխատանքային կարգապահությունը:

* * *

Արդյունաբերական ձեռնարկությունների վերջին մի քանի տարվա ուսումնասիրությունը ցույց է տվել, որ արտադրանքի ծավալի աճման տեմպերն ետ են մնում կապիտալ ներդրումների տեմպերից և արտադրական հիմնական ֆոնդերի յուրաքանչյուր մեկ ռուբլուն բաժին ընկնող արտադրանքի ծավալը պակասում է: Սրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ արտադրական որոշ կարողություններ շահագործման են հանձնվում թերավարտ,

ու լրիվ կոմպլեքսով, որի հետևանքով ռացիոնալ չեն օգտագործվում արտադրական հիմնական ֆոնդերը։ Սևանի ապակեթելերի գործարանի էլեկտրավառարանների արտադրամասը գործարկվել է 1963 թվականին, ընդ որում, ընդունման ակտում պետական հանձնաժողովը արձանագրել է, որ մի շարք կոմունիկացիաների բացակայության պատճառով արտադրամասը կարող է գործել նախագծային հզորության միայն 25—30 տոկոսի չափով։ Այդպես էլ իրականում եղել է։ Այսօր, արտադրամասի շահագործման չորրորդ տարում 106-ի փոխարեն գործում են ապակեհալման 32 էլեկտրավառարան։ Գործարանի գործվածքային արտադրությունը ժամանակավորապես տեղադրված է այլ տարածություններում. 36 հաստոց տեղադրված են պահեստային տնտեսության շենքում, իսկ 18-ը՝ մեխանիկական արտադրամասի հրապարակներում։ Գործարանում ընթացիկ տարվա հոկտեմբերի 1-ի դրությամբ կային 174 միավոր չտեղակայված սարքավորումներ ու հաստոցներ։ Սա նշանակում է, որ այն հանձնված է շահագործման թերավարտ, որը և չէր կարող բացասաբար չանդրադառնալ նրա նորմալ աշխատանքի վրա։ Թեև Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը շահագործման է հանձնվել, սակայն նրա շինարարական աշխատանքները կատարված են 60 տոկոսով։

Արտադրական հիմնական ֆոնդերի մեկ ռուբլուն բաժին ընկնող արտադրանքի ծավալի իջեցումը վերջին տարիներին բացատրվում է նաև նրանով, որ գործարկված կարողությունների յուրացման նորմատիվային ժամկետները խիստ ձգձգվում են։ Լուսավանի «Ցենտրոլիտ» գործարանը շահագործման է հանձնվել 1963 թվականին։ Անցել է չորս տարի, սակայն նրա թողարկած արտադրանքը կազմում է նախագծային կարողության մոտ 60 տոկոսը։ Այս բացատրվում է միայն աշխատանքի վատ կազմակերպմամբ, տեխնոլոգիական ռեժիմների կոպիտ խախտմամբ, ցածր արտադրական կարգապահությամբ։ Գործարանի ղեկավարությունը (դիրեկտոր Ս. Մուրադյան) չի կարողացել բարձրացնել ինժեներական աշխատանքի մակարդակը, արմատավորել նոր տեխնիկան, անհրաժեշտ գործունեություն ծավալել թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու ուղղությամբ։ Այս է պատճառը, որ թողարկվող արտադրանքի 16—18 տոկոսը խոտանվում է, իսկ մեկ տոննա թուջե ձուլվածքի ինքնարժեքը կրկնակի անգամ թանկ է պլանավորվածից։

Նման օրինակները շատ են։ Կուսակցական կազմակերպությունները պետք է հատուկ ուշադրություն նվիրեն արտադրական հիմնական ֆոնդերի ռացիոնալ օգտագործմանը և կիրառեն անհրաժեշտ միջոցառումներ ձեռնարկությունների նախագծային կարողությունների լրիվ յուրացման համար։

Մյուս կարևոր հարցը, դա արտադրության քանակական մեծ աճի զուգակցումն է ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման, տեխնիկական պրոգրեսի արագացման հետ։

Նախորդ տարիներին լուրջ աշխատանքներ է կատարվել գունավոր մետալուրգիայի զարգացման ուղղությամբ։ Միայն յոթնամյակի ընթացքում այս բնագավառում արդյունաբերվող արտադրանքի ծավալը աճել է 2,8 անգամ, սակայն գունավոր մետալուրգիայի որոշ ձեռնարկություններում արտադրության զարգացման մակարդակը ետ է մնում գիտության և տեխնիկայի նվաճումներից, ինչպես նաև Միության առաջավոր ձեռնարկություններից։ Հատկապես ցածր է հանքաքարից մետաղների կորզումը, անբավարար են լեռնա-



յին սարքավորումների օգտագործման ցուցանիշները, արտադրության կառավարումը ավտոմատացման միջոցով։

Հանրապետության հաստոցաշինության և մեքենաշինության մեջ դանդաղ է կիրառվում տեխնիկական պրոգրեսը, մետաղների մշակման առաջավոր մեթոդները, անբավարար է հաստոցային պարկի նորացումը, որոշ ձեռնարկություններում չեն ստեղծվել անհրաժեշտ տեխնոլոգիական լաբորատորիաներ և այլն։

Արտադրության կազմակերպման ցածր տեխնիկական մակարդակով պետք է բացատրել, որ մի շարք ձեռնարկություններ ցածրորակ արտադրանք են թողարկում։ Օրինակ, Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանը (դիրեկտոր Ս. Մխիթարյան), որը 1964—1965 թվականներին ձախողել է 677 մոդելի կատարելագործված լայն ունիվերսալ ֆրեզերային հաստոցի արտադրության յուրացումը, շարունակում է թողարկել շահագործման ցածր տեխնիկատնտեսական ցուցանիշներ ունեցող հաստոց, այն էլ կատարողական վատ որակով։ Գործարանում ցածր է արտադրության տեխնոլոգիական նախապատրաստության վիճակը, հաճախ խախտվում է արտադրական կարգապահությունը, թույլ է հսկողությունը տեխնոլոգիական ռեժիմների պահպանման գործում։ Թողարկվող վատորակ արտադրանքի պատճառներից մեկն էլ այն է, որ գործարանը աշխատում է ոչ ռիթմիկ։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակի ուսումնասիրությունը ցույց է տվել, որ ամբողջ ամսական արտադրանքի 10 տոկոսը թողարկվում է առաջին տասնամյակում, 21-ը՝ երկրորդում և 69-ը՝ երրորդում։ Սրանով պետք է բացատրել, որ գործարանը ստանում է անորակ արտադրանքի բազմաթիվ ռեկլամացիաներ և խոտանի պատճառով կրում մեծ վնասներ։ Թողարկվող արտադրանքի որակը ցածր է նաև Լենինականի սառնարանային կոմպրեսորների, Երևանի գեղարվեստական ժամացույցների, սարքաշինական, թեթև ու սննդի արդյունաբերության մի շարք ձեռնարկություններում։

Այժմ արդյունաբերության աշխատողների ուշադրության կենտրոնում պետք է լինի ձեռնարկությունների շահութաբերության բարձրացման հարցը։ Հանրապետությունում կան շատ ձեռնարկություններ, որոնք արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ բարձրացմամբ, չօգտագործված հնարավորությունների ռացիոնալ օգտագործմամբ անշեղորեն բարձրացնում են ձեռնարկությունների եկամտաբերությունը, որի շնորհիվ հանրապետության արդյունաբերությունն ամբողջությամբ վերցրած շահութաբեր է։ Սակայն քիչ չեն նաև վնասով աշխատող ձեռնարկությունները, որոնց թիվը ընթացիկ տարում հասնում է 67-ի։ Դրանց մեծ մասի վնասները պլանավորվում են, այսինքն պետությունն ընդունում է, որ վնասով աշխատելու համար կան օբյեկտիվ պատճառներ և անհրաժեշտ դոտացիա է հատկացնում դրանց։

Պլանավորվող վնասով բանող ձեռնարկությունները պարտավոր են մշակել անհրաժեշտ տեխնիկա-տնտեսական միջոցառումներ սերիական արտադրությունն ավելացնելու, ներքին ռեզերվները ռացիոնալ օգտագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, տեխնիկա-տնտեսական ցուցանիշները բարելավելու միջոցով հասնել եկամտաբեր աշխատանքի և հրաժարվել պետությունից ստացվող դոտացիայից։

Կան ձեռնարկություններ, որոնք երկար տարիների ընթացքում սնվում են

պետական դոտացիայի հաշվին և չեն ջանում անցնել շահութաբեր ձեռնարկությունների շարքը։ Օրինակ՝ վնասով են գործում Երևանի ավտոմասերի գործարանը, դաշնամուրի ֆաբրիկան, Ղափանի պղնձա-հանքային կոմբինատը, Ախթալայի հանքվարչությունը և այլ ձեռնարկություններ։ Ավտոմասերի գործարանը վեցերորդ տարին է, ինչ գործում է ոչ եկամտաբեր և նրա վնասը 1961—1965 թվականներին կազմել է մոտ չորս միլիոն ռուբլի։ Թողարկվող վատորակ արտադրանքի պատճառով այս տարվա անցած ինն ամսում այն ստացել է 55 ռեկլամացիա, որի պատճառով մեծ են կորուստները։ Գործարանում խիստ ցածր է աշխատանքային և արտադրական կարգապահությունը, 1965 թվականին կադրերի հոսունությունը կազմել է 45 տոկոս։

Մեր կարծիքով, ոչ եկամտաբեր ձեռնարկությունների վնասի պլանավորումը պետք է խթանի ձեռնարկության եկամտաբերության բարձրացմանը։ Սակայն դա միայն այն դեպքում, երբ պլանավորումը ելնում է ձեռնարկության աշխատանքի ռեալ վիճակից։ Գործնականում ստացվում է այնպես, որ պլանավորող կազմակերպությունները միշտ չէ, որ իրազեկ են գործերին և դրա պատճառով կազմված պլանները չեն արտացոլում իրական պատկերը։ Սրանով պետք է բացատրել, որ 1966 թվականին վնասով պլանավորված 69 ձեռնարկություններից 20-ն աշխատում են օգուտով, իսկ 31-ը անցած 9 ամսում տվել են ավելի մեծ վնաս, քան պլանավորված է։

Մեր կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն մշտական հոգատարություն են ցուցաբերում աշխատավոր մարդու նկատմամբ, հսկայական միջոցներ են հատկացնում նրանց կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման համար։ ՍՄԿԿ ծրագրում ասված է, որ սովետական ժողովրդի հերոսական աշխատանքը ստեղծեց հզոր և բազմակողմանի զարգացած էկոնոմիկա։ Այժմ բոլոր հնարավորությունները կան ամբողջ բնակչության բարեկեցության արագ բարձրացման համար։

Հանրապետությունում քիչ չեն ձեռնարկությունները, որտեղ ամեն ինչ արվում է արտադրության կուլտուրան բարձրացնելու, բանվոր-ծառայողների համար նորմալ աշխատանքային պայմաններ ստեղծելու ուղղությամբ։ Այս առումով գործերը բարվոք են հատկապես Լենինականի տեքստիլ կոմբինատում (դիրեկտոր Գ. Դարբինյան, կուսակցական կազմակերպության քարտուղար Մ. Թևանյան) և Երևանի էլեկտրալամպերի գործարանում (դիրեկտոր Ռ. Ամիրյան, կուսկազմակերպության քարտուղար Ա. Գուրունյան)։ Նշված ձեռնարկությունների արտադրամասերում պահպանվում է մաքրություն, ստեղծվել են հանդերձարաններ, հանգստի սենյակներ, լողարաններ, հիգիենայի սենյակներ կանանց համար, լուծվել է արտադրական շենքերի օդափոխության հարցը, լավ է կազմակերպվում հասարակական սնունդը։ Այս միջոցառումները աշխատանքային և արտադրական կարգապահության բարձրացման հետ միասին մեծ չափով նպաստել են նաև աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Ցավոք, դեռևս կան ձեռնարկություններ, որտեղ ինչպես կուսակցական կազմակերպությունները, այնպես էլ ադմինիստրացիան անտարբեր են աշխատավորների կենցաղային պայմանների բարելավման նկատմամբ, չեն ստեղծում նրանց համար աշխատանքային նորմալ պայմաններ։ Գործերը հատկապես վատ են Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատում։ Կոմբինատի դիրեկտոր Հ. Սարգսյանը և կուսակցական կազմակերպության քարտուղար Հ.



Բանդիլյանը հիմնական ուշադրությունը նվիրելով կոմբինատի վերակառուցման աշխատանքներին, մոռացել են արտադրության կուլտուրայի բարձրացման հարցերը։ Ինչպես արտադրամասերը, այնպես էլ ձեռնարկության տերիտորիան կեղտոտ են, ծածկված արտադրության ավելցուկներով և շինարարական աղբով, որը հակասանիտարական լինելուց բացի, չի ապահովում աշխատանքի անվտանգության կանոնները, վատ է կազմակերպված հասարակական սնունդը, պայմաններ չեն ստեղծվել ընդմիջման ժամերին բանվորների հանգիստը կազմակերպելու համար։ Մի՞թե սրանով ևս չպետք է բացատրել, որ կոմբինատում ընկած է աշխատանքային կարգապահությունը, ցածր է աշխատանքի արտադրողականությունը, ձախողվում է պլանների կատարումը։

Բանվորների կուլտուրական հանգստի և արտադրության մեջ նրանց կենցաղային պայմանների բարելավման հարցերով չեն մտահոգվում Երևանի էլեկտրաշարժիչների, էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանների, Ղափանի պղնձա-հանքային կոմբինատի և այլ ձեռնարկությունների ղեկավարները։

Մեզ մոտ կառուցվող նոր ձեռնարկությունների նախագծերով նախատեսվում է մաքսիմալ հարմարություններ ստեղծել աշխատավորների կուլտուր-կենցաղային լավագույն սպասարկման համար։ Սակայն, չգիտես ինչու, որոշ գործարաններում արտադրությունը սկզբում կազմակերպվում է կուլտուր-կենցաղային սպասարկման նպատակով կառուցված տարածություններում և այն զբաղեցնում են մինչև արտադրական բոլոր տեղամասերի լրիվ գործարկումը, որի հետևանքով աշխատավորները երկար տարիներ զրկվում են սպասարկման մինիմալ պայմաններից։ Կուլտուր-կենցաղային սպասարկման համար կառուցված սենյակներն արտադրական նպատակներով են օգտագործվում Աբովյանի գործարաններում։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարի որոշմամբ՝ աշխատավորների աշխատանքի ու հանգստի լավագույն պայմաններ ստեղծելու նպատակով ձեռնարկությունները նախապատրաստվելու են աստիճանաբար երկու հանգստյան օրով աշխատանքային շաբաթի անցնելուն՝ պահպանելով շաբաթվա աշխատաժամերը։ Սա լուրջ քաղաքական հարց է և պետք է գտնվի կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեների ուշադրության կենտրոնում։ Հնգօրյա շաբաթին անցնելու համար անհրաժեշտ է ուսումնասիրել աշխատանքի կազմակերպման, արտադրողականության հարցերը, որոշել հերթափոխությունների լավագույն ռեժիմները, լուծել տեխնոլոգիական պրոցեսներին վերաբերող որոշ խնդիրներ։

Սակայն այստեղ ցանկանում ենք բարձրացնել նոր ռեժիմին անցնելու մի ուրիշ, շատ կարևոր խնդիր։ Դա աշխատավորների երկօրյա հանգստի լավագույն կազմակերպումն է, որին դեռևս շատ կազմակերպություններ պատրաստ չեն։ Ճիշտ է, կան հարցեր, որոնք պետք է լուծեն հանրապետական տնտեսական, արհմիութենական կազմակերպությունները և քաղաքային սովետների գործադիր կոմիտեները։ Դրանցից են՝ քաղաքների շուրջը հանգստյան զոնաների ստեղծումը, Ծաղկաձորի, Հանքավանի, Կիրովականի պիոներական ճամբարների շենքերի աշնան, ձմռան և գարնան ամիսներին արդյունավետ օգտագործումը, Սևանա լճի շրջակայքի բարելավումը, քաղաքներում լողավազանների և կուլտուրական մի շարք նոր օջախների կառուցումը, հանգստյան օրերին միջքաղաքային տրանսպորտի աշխատանքի կարգավորումը և այլն։

*Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարները, կուսակցական և արհմիութենական կազմակերպություններն այս ուղղությամբ պետք է շատ ջանք գործադրեն, քանի որ երկու հանգստյան օրով աշխատանքային շաբաթն մեծ պարտականություններ է դնում նրանց առջև։*

***

*Հայտնի է, որ այս հնգամյակի տարիներին արդյունաբերական ձեռնարկությունները պետք է գործեն տնտեսական նոր ռեֆորմի սկզբունքների համեմատ։ ՍՄԿԿ XXIII համագումարը կուսակցական, սովետական ու տնտեսական կազմակերպություններին պարտավորեցրեց հետևողականորեն կիրառել կուսակցության տնտեսական քաղաքականության սկզբունքները, որոնցում նախատեսվում է ուժեղացնել ղեկավարման գործում տնտեսական մեթոդների դերը, արմատապես բարելավել պլանավորումը, ընդլայնել ձեռնարկությունների ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը, բարձրացնել նրանց նյութական շահագրգռվածությունը։*

*Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու համար անհրաժեշտ է լուրջ և քրտնաջան աշխատանք։ Ամենից առաջ, պետք է աշխատանքի գիտական կազմակերպման և գիտության ու տեխնիկայի նվաճումների ըստ ամենայնի արմատավորման բազայի վրա, բարձրացնել արտադրողականությունը և արմատապես բարելավել թողարկվող արտադրանքի որակը, ապահովել արտադրական հիմնական ֆոնդերի և ներքին ռեզերվների արդյունավետ օգտագործումը, սահմանել խնայողության խիստ ռեժիմ և ապահովելով ձեռնարկությունների բարձր շահութաբերությունը, արմատապես բարելավել տնտեսական աշխատանքի մակարդակը։ Քանի որ նշված միջոցառումները իրագործելու համար պահանջվում է բավական ժամանակ, համագումարը որոշեց, որ արդյունաբերական ձեռնարկությունները պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին պետք է անցնեն աստիճանաբար։ Մեզ մոտ այս ուղղությամբ առաջին քայլերն է կատարում Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանը։ Նոր սիստեմին շուտով կանցնեն Քաջարանի պղնձա-մոլիբդենային, Լենինականի տեքստիլ կոմբինատները և այլ ձեռնարկություններ։*

*Սակայն ընդհանուր առմամբ պլանավորման և տնտեսական խթանման այս սիստեմին անցնելու գործում նկատվում է դանդաղկոտություն։ Ճիշտ է, այս սիստեմին անցնելու գործում նկատվում է դանդաղկոտություն։* 

*ձեռնարկությունները դրան պետք է անցնեն աստիճանաբար, բայց, մեր կարծիքով, անհրաժեշտ է նախապատրաստել մասսայաբար, չմոռանալով, որ բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները տնտեսավարման նոր սիստեմին պետք է անցնեն 1967—1968 թվականներին։*

*Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները, արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն ուշադրությունն արտադրության բարոյական խթանների նկատմամբ, ամրապնդեն կարգապահությունը, ձեռնարկության յուրաքանչյուր աշխատողի մեջ անձնական պատասխանատվություն, հայրենասիրական պարտքի զգացում դաստիարակեն, առավելագույն չափով օգտագործեն այն մեծ հնարավորությունները, որոնք ստեղծվում են արտադրության տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու շնորհիվ։*

# ԻՆՏԵՆՍԻՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆԱԽԱՊԱՅՄԱՆԸ

Գ. ՄԵԼԻՔՅԱՆ

Տեխնիկական գիտությունների թեկնածու

*ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումը, ապա Կենտկոմն ու ՍՍՀՄ Մինիստրների սովետը մելիորացիայի զարգացման մեծ ծրագիր ընդունեցին և ցույց տվեցին դրա իրականացման ուղիները։*

Մելիորացիան *(լատիներեն բառ է, նշանակում է բարելավում) տարբեր միջոցառումների կոմպլեքս է, որի շնորհիվ հնարավոր է բարելավել հողերի բնական պայմանները, գյուղատնտեսական կուլտուրաների նորմալ զարգացման համար ստեղծել ջրային, օդային, ջերմային ու սննդառության անհրաժեշտ ռեժիմներ, բարձրացնել հողերի բերրիությունը և ապահովել բարձր ու կայուն բերքի ստացումը։*

*Մելիորատիվ միջոցառումներ են՝ չորային շրջաններում հողերի ոռոգումը (իռիգացիան), գերխոնավ շրջաններում դրանց չորացումը, ջրարբիացումը, էրոզիայի դեմ տարվող պայքարը, ինչպես նաև քարերի հավաքումը, թփուտների հեռացումը և այլ ագրոմելիորատիվ աշխատանքներ։*

*Մելիորացիայի բնագավառում վճռական բեկում կատարվեց սովետական իշխանության հաստատումից հետո։ Իրականացավ ժողովրդի դարավոր երազանքը. հողն ու ջուրը դարձան համաժողովրդական սեփականություն, նպաստավոր պայմաններ ստեղծվեցին գյուղատնտեսության զարգացման, մելիորատիվ աշխատանքների ծավալման և հողի բերրիության բարձրացման համար։*

*Սովետական Հայաստանում կառուցված Շիրակի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, Նորքի, Նալբանդի, Թալինի, Ստորին Հրազդանի, Ազիզամանի, Արզնի-Շամիրամի և այլ ջրանցքների, ավելի քան 130 պոմպակայանների և բազմաթիվ ջրամբարների միջոցով ոռոգվում է մոտ 260 հազար հեկտար։*

*Սակայն գյուղատնտեսության, մելիորացիայի, հողերի բերրիության ներկա վիճակը չի բավարարում մեր երկրի անընդհատ աճող պահանջները։ Նրաշտի տարիներին պակասում են գյուղատնտեսական մթերքները։ Այդ պատճառով էլ անհրաժեշտ է մեծ բեկում կատարել, որպեսզի անկախ կլիմայական պայմաններից, երկիրն ապահովվի անհրաժեշտ քանակությամբ գյուղատնտեսական մթերքներով։*

*Սովետական պետությունը խոշոր միջոցներ է հատկացնում մելիորացիային։ Բայց հաճախ լուրջ ուշադրություն չի նվիրվում կառուցվածքների պահ-*

պանմանը և հողի ու ջրի օգտագործմանը։ Երբեմն կառուցվածքները տեխնիկական լուրջ թերություններ են ունենում և լավ չեն շահագործվում։ Բացի այդ, շատ տնտեսություններում ջուրը խնայողաբար չի օգտագործվում, գիշերային ջրում քիչ է կատարվում։ Մեծ խզում կա շինարարական աշխատանքների և նոր ոռոգվող հողերի յուրացման միջև, պայքար չի ծավալվում հողերի էրոզիայի դեմ, չեն կիրառվում ագրոտեխնիկական կանոնները, ագրոմելիորատիվ միջոցառումները թույլ են, ցածր է մելիորացված հողերում աշխատողների նյութական շահագրգռվածությունը։

Գիտական հիմնարկություններում անբավարար են տարվում մելիորացիոն հետազոտությունները, խորությամբ չեն ուսումնասիրվում մելիորատիվ շինարարության հերթականության տնտեսական հիմնավորման, ոռոգվող և չորացվող հողերի ռացիոնալ օգտագործման հարցերը։

Չնայած մեր հանրապետության սահմանափակ հողային ռեսուրսներին՝ տարեցտարի վարելահողերի տարածությունը պակասում է։ Վերջին 5 տարում այն պակասել է 59 հազար հեկտարով։ Անպատասխանատվության հետևանքով տեղի է ունեցել անգնահատելի հողերի շռայլում, որի պատճառով կրճատվել են Աշտարակի, Հրազդանի, Սիսիանի, Սպիտակի և մյուս շրջանների հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները։

ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում նշվեց, որ հողի խնայողաբար օգտագործումը մեր հանրապետության գյուղատնտեսության հարցերի հարցն է։ Մենք իրավունք չունենք շռայլել հարստության այդ աղբյուրը։ Հողերի օգտագործման հարցով զբաղվողները չպետք է մոռանան, որ այն հեշտ չի մշակել ու բերրի դարձնել և, ոչ մեկին իրավունք չի վերապահվում շռայլել սերունդներից ժառանգություն ստացած այդ անգնահատելի հարստությունը։

Ոռոգիչ ցանց ունեցող հողատարածություններն անբավարար են օգտագործվում։

Փաստերը ցույց են տալիս, որ հողատարածությունների զգալի մասը տարբեր պատճառներով գյուղատնտեսական նպատակներով չի օգտագործվում, իսկ ոռոգիչ ցանց ունեցող 260 հազար հեկտար հողատարածությունից յուրաքանչյուր տարի փաստացի ջրվում է 190 հազար հեկտար. ամառային ջրով ապահովված է ավելի պակաս հողատարածություն (ընդամենը 165 հազար հեկտար)։ Չնայած պետության ու տնտեսությունների կատարած մեծ ծախսումներին, գյուղատնտեսության մեջ օգտագործվող ոռոգելի տարածությունների ընդհանուր ֆոնդը վերջին 10—13 տարիներին քիչ է ավելացել, իսկ փաստացի ջրվող տարածությունը մնացել է նույնը։

Անմխիթար է նաև ջրի օգտագործումը։ Ոռոգման նպատակով աղբյուրներից վերցված մոտ 2,5 միլիարդ խորանարդ մետր ջրի միայն կեսն է օգտագործվում։ Հիմնական կորուստները տեղի են ունենում ջրանցքների հատակից ու շեպերից, կառուցվածքների ճեղքերից և, առանձնապես, դաշտերում՝ ջրելու պրոցեսում մեծ մաղումներ թույլ տալու հետևանքով։ Իսկ կորուստները ո՛չ միայն հնարավորություն չեն ընձեռում ոռոգելու լրացուցիչ հողատարածությունները, այլ հաճախ ստորերկրյա ջրերի բարձրացման, լավագույն, բերրի հողերի աղիացման ու ճահճացման պատճառ են դառնում։

Ջրի կորուստները հիմնականում հետևանք են նաև այն բանի, որ երեսպատված է ոռոգիչ սիստեմների մագիստրալային և միջտնտեսային ջրանցքների ընդհանուր երկարության (2775 կիլոմետրից) միայն քառասուն տոկոսը,



իսկ ներտնտեսային ոռոգիչ ցանցի՝ 7 տոկոսը։ Դրա համար էլ ․ խոիգացիոն ցանցի հիմնական մասն անցնում է հողային (մեծ մասամբ ջրաթափանց) հունով, որտեղից և տեղի է ունենում ջրի մեծ ֆիլտրացիա։ Տնտեսությունների մեծ մասն անհրաժեշտ ուշադրություն չի նվիրում ինչպես ոռոգման-չորացման ներտնտեսային ցանցը բարելավելուն, այնպես էլ ստացված ջուրն արդյունավետ օգտագործելուն։

Հայտնի է, որ ոռոգման սիստեմի նախագծերը կազմելիս, ջրանցքների չափերը որոշելիս նախատեսվում է ցանքատարածությունները ջրել 24 ժամում, մինչդեռ տնտեսությունների ճնշող մեծամասնությունը ջրում է միայն 8—12 ժամ, այսինքն՝ ցերեկը։ Այստեղից հետևում է, որ ցերեկվա ժամերին կրկնակի կամ եռակի չափով պետք է ավելացնել ջրանցքների ջրթողունակությունը, բայց քանի որ այդ անհնարին է, այգիների, դաշտերի որոշ մասը պահանջվող քանակությամբ ջուր չի ստանում, իսկ ջրի մի մասն ապարդյուն հոսում է միջնակներով ու դաշտամիջյան ճանապարհներով, մինչդեռ որոշ հողատարածություններում բույսերն անհրաժեշտ չափով չեն ջրվում. այս ամենն ազդում է բերքատվության վրա։

Ցանքատարածությունների և այգիների ոռոգման գործը պատշաճ վարելու համար վճռական դեր ունեն ջրվորները։ Սակայն շատ տնտեսություններում նրանք ինչպես հարկն է չեն գնահատվում, անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում նրանց ընտրությանը, վարձատրմանը, խրախուսմանը։ Ջրվորի գործը գյուղատնտեսության դժվարին աշխատանքներից մեկն է։ Հաշվի չառնելով այդ, երբեմն ջրելու գործը հանձնարարվում է ծեր, հաշմանդամ մարդկանց, կանանց։ Պետք է ունենալ ջրվորների մշտական կադրեր, բարձրացնել նրանց որակավորումն ու նյութական շահագրգռվածությունը։

Ագրոնոմների պատրաստման գործում մեծ նշանակություն ունի գյուղատնտեսական մելիորացիա առարկայի դասավանդումը։ Մինչդեռ այդ առարկայի դասավանդմանը հայկական գյուղատնտեսական ինստիտուտի ագրոնոմիական ֆակուլտետներում հատկացվող ժամերը խիստ պակասել են։

ՀԿԿ Կենտկոմի այս տարվա հունիսյան պլենումը նշեց, որ արտադրական վարչությունները, տնտեսությունները պետք է մասնագետներ ունենան նաև հիդրոմելիորացիայի ասպարեզում։ Այդպիսի մասնագետների պատրաստման մեծ փորձ ունի հայկական գյուղատնտեսական ինստիտուտը, որի շրջանավարտները՝ ինժեներ-հիդրոմելիորատորները, հաջողությամբ աշխատում են գյուղում։ Սակայն շրջանավարտների մի մասը, տարբեր պատճառներով գյուղատնտեսության բնագավառում չի աշխատում։ Հանրապետության գյուղատնտեսության, մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրություններն արդեն շտկում են այդ սխալը. նրանք շրջանավարտներին նշանակում են միայն իրենց օրգաններում աշխատելու։

Նախատեսվում է այս հնգամյակում Հայաստանում ոռոգելի հողատարածություններն ավելացնել 65 հազար հեկտարով, իսկ հաջորդ հնգամյակում՝ 70—90, առաջիկա տասնամյակում՝ 150 հազար հեկտարով։ Հնգամյակի խոշոր կառույցներից են Արզնի-Շամիրամի ոռոգիչ սիստեմի երկրորդ հերթը, Ախուրյանի աջափնյա ջրանցքը, Ապարանի, Կառնուտի, Հոռոմի, Գետիկի ջրամբարներն ու Նոյեմբերյանի, Արևշատի, Մխչյանի, Ծաղկաշենի պոմպակայանները։ Հետագայում կկառուցվեն Թալինի ջրանցքի 2-րդ հերթը, Ախուրյանի ձախափնյա ոռոգիչ սիստեմը, Ախուրյանի, Սեպասարի ջրամբարները և

*այն։ Շահագործման կհանձնվի 50 պոմպակայան, որոնք կոռոգեն 40 հազար հեկտար։ Մեծ գործ կկատարվի ճահճային և աղակալած հողերը յուրացնելու, 130 հազար հեկտար արոտավայրեր ջրարբիացնելու ուղղությամբ։*

*Հողերի մելիորացման նախատեսված աշխատանքները կատարելու համար պետությունը տրամադրում է ֆինանսական միջոցներ և տեխնիկա։ Եթե անցած հինգ տարիներին հանրապետությունում ջրաշինարարական աշխատանքների համար ծախսվել է 56,1 միլիոն ռուբլի, ապա ընթացիկ հնգամյակում նախատեսված է մոտ 180 միլիոն ռուբլի, այսինքն՝ երեք անգամ ավելի։*

*Անցյալում, քիչ տնտեսությունների համար է նախագծվել ոռոգման ներքին ցանց. այն կառուցվել է առանց նախագծի, ոչ համապատասխան մասնագետների կողմից, տեխնիկական մեծ թերություններով։ Այդ հարցը խիստ կարևոր է հատկապես Հայաստանի նախալեռնային և լեռնային շրջանների համար, որտեղ օգտագործվում են և հետագայում կօգտագործվեն մեծ թեքություն ունեցող հողեր։ Ջրելու ուղղությունը սխալ լինելու դեպքում ակոսները, մարգերը կարող են վերածվել խոր առվակների, որի հետևանքով կվնասվի հողածածկույթը։ Այդպիսի վիճակ է ստեղծվել Նոյեմբերյանի, Աշտարակի, Հրազդանի և մյուս շրջաններում։ Այստեղ չնայած ջուրն անցնում է դաշտով, բայց ջրել չեն կարողանում կամ հանդիպում են դժվարությունների։ Նոյեմբերյանի շրջանում կառուցված բարդ կառույցները, սարքավորումները ջուրը տալիս են տնտեսություններին, որոնք կարող են ոռոգել մոտ 4000 հեկտար, մինչդեռ ոռոգում են ընդամենը 500 հեկտար։ Այս վիճակը կարելի է կանխել միայն այն դեպքում, երբ մասնագիտական կազմակերպությունները յուրաքանչյուր տնտեսության համար կազմեն ոռոգման-չորացման ներքին ցանցի տեխնիկապես ճիշտ նախագիծ։*

*Կոլտնտեսությունների, սովխոզների հողերի ոռոգման-չորացման նախագծային հետախուզական և շինարարական, ինչպես նաև ներտնտեսային ցանցի նորոգման-մաքրման աշխատանքները պետք է կատարվեն մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության օրգանների կողմից՝ պայմանագրային կարգով, որը պետք է արագ կիրառվի կյանքում։*

*Մինչև այժմ նախագծային ինստիտուտները նախագծել են միայն միջտնտեսային ջրանցքներ, ներտնտեսային ցանց՝ բացառիկ դեպքերում։ Իսկ մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրության տեղական օրգանները՝ ոռոգման սիստեմների վարչությունները, զբաղվել են գլխային հանգույցների, հիմնական ջրանցքների շահագործման հարցերով։ Ջուրը տալիս են տնտեսություններին, իսկ տնտեսությունում ցանցի վիճակով, ջրօգտագործման հարցով չեն զբաղվում։ Այդ կարևոր գործը թողնված է տնտեսությունների քմահաճույքին։ Անփույթ մարդիկ երբեմն խափանում են ջրարգելակներն ու մյուս կառույցները, որպեսզի ավելացնեն տնտեսություններին տրվող ջուրը. այդ մեծ վնաս է հասցնում ջրային տնտեսությանը։ Այս ամենը ոռոգման վարչությունների, շրջանային օրգանների ու տնտեսությունների անպատասխանատվության ու հսկողության բացակայության հետևանք է։*

*Գյուղատնտեսության առաջընթացի կարևոր նախապայմաններից մեկը հանդիսանում է ոռոգումը։ Այդ հարցի հաջող լուծման, ոռոգելի տարածությունների ընդարձակման վրա կոմունիստական կուսակցությունը մեծ ուշադրություն է դարձնում։ Հարկավոր է բոլոր միջոցները գործադրել մելիորացիայի ծրագիրը հաջողությամբ իրագործելու համար։*

---

# *Եղբայրական* ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

## ՊԱՅՔԱՐՈՎ ՁԵՌՔ ԲԵՐՎԱԾ ՀԱՂԹԱՆԱԿ



*Պ. Մ. ՄԱՇԵՐՈՎ*
*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ԲԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար*

ԲԵԼՈՌՈՒՍԻԱՆ գեղեցիկ է կուսական անտառներով, կապույտ լճակներով, ջրառատ գետերով, բերքառատ դաշտերով, թավշյա մարգագետիններով: Այն հարուստ է իր բնական հանածոներով, երջանիկ՝ իր ստեղծագործ ժողովրդով: Անցյալում, կեղեքիչների տիրապետության ժամանակաշրջանում, երկրի հարստության հիմնական աղբյուրը՝ հողը, պատկանել է մի բուռ ֆեոդալների, որոնք լափել են կոր ու գիշեր աշխատող ընչազուրկ գյուղացու քրտինքով ստեղծված բարիքները: Իշխանուհի Հոգենլոն, կոմս Պոտոցկին ունեցել են մոտ մեկ միլիոն դեսյատին հող: Բյուրավոր ընչազուրկներ թողել են պապենական օջախները, հարազատ ընտանիքը, չվել ռուսական կայսրության կանայան նահանգներ՝ ապրուստի միջոցներ վաստակելու համար: Ժամանակակից պատմաբանները Բելոռուսիայի մասին այսպես են արտահայտվել՝ Ռուսաստանում քիչ չեն ցուրտ ու սովյալ վայրերը, բայց այդ ընդարձակ երկրում հազիվ թե հանդիպես այնպիսի աղքատ, վշտալի մարդկանց, ինչպիսիք կան Բելոռուսիայում: Բելոռուս ժողովրդի անցյալի ծանր վիճակի վկայությունն են նաև նրա բազմաթիվ գյուղերի տարօրինակ անունները. Безхлебницы (հացազուրկներ), Мохоеды (մամռակերներ), Короеды (կեղևակերներ):

Ինքնուրույն պետականությունից զուրկ, ընդամենը մի քանի տասնյակ մետաղամշակման, դարբնոցային, կաշեգործական կիսաֆաբրիկային արդյունա-

բերական ձեռնարկություններ, բնակչության ութսուն տոկոսն անգրագետ, միայն հարյուր երեսուն բուժարան, վեց հարյուր բժիշկ, հազար միջին բուժաշխատող, ոչ մի բարձրագույն դպրոց: Ահա Բելոռուսիան նախահոկտեմբերյան ժամանակաշրջանում:

Մեծ հոկտեմբերը փրկություն բերեց նաև բելոռուս ժողովրդին: Եվ ահա մոտ հիսուն տարի է Բելոռուսիայի վրա ծածանվում է ազատության դրոշը: Պատմական այդ կարճ ժամանակաշրջանում բելոռուս ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ վերափոխեց իր երկիրը, մեծ քայլ կատարեց կոմունիզմի կառուցման ճանապարհին:

Սովետական Միության բազմազգ ընտանիքում ԲՍՍՀ-ը բնակչությամբ՝ երրորդ, իսկ տերիտորիայով՝ չորրորդ տեղն է գրավում: Նախապատերազմյան հնգամյակներում հանրապետությունում կառուցվեցին հարյուրավոր ինդուստրիալ օջախներ, որոնք հագեցվեցին ժամանակակից, առաջնակարգ տեխնիկայով: 1940 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ԲՍՍՀ-ի արդյունաբերության համախառն արտադրանքը աճեց ավելի քան ութ անգամ: Գյուղում հաղթանակեց տնտեսության սոցիալիստական սիստեմը. չութին, գութանին, մանգաղին, գերանդուն, կամին փոխարինեցին տրակտորը, հնձող մեքենան, կոմբայնն ու կալսիչը: Գրեթե լիովին մեքենայացվեց հասկավոր կուլտուրաների վարը, ցանքը, բերքահավաքը:

Ժողովրդական տնտեսության բուռն վերելքի հետ ծաղկեցին գիտությունն ու կուլտուրան: Սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին ըստեղծվեց անդրանիկ բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ Վ. Ի. Լենինի անվան պետական համալսարանը, կազմակերպվեց ԲՍՍՀ-ի գիտությունների ակադեմիան: 1940 թվականին հանրապետությունում գործում էին 12 հազար հանրակրթական դպրոց, մոտ հարյուր տեխնիկում ու մասնագիտական միջնակարգ դպրոց: Առողջապահության բնագավառում աշխատում էին ավելի քան հինգ հազար բժիշկ, մոտ 18 հազար միջին բուժաշխատող:

Սոցիալիզմի կառուցման գործում ձեռք բերած նվաճումների համար ԲՍՍՀ-ն 1935 թվականին պարգևատրըվեց Լենինի շքանշանով:

***

1941 թվական, հունիս... Բելոռուսիայում խափանվեց ժողովրդի խաղաղ ըստեղծագործ աշխատանքը: Արևմուտքից մեր երկիրը ներխուժած ֆաշիստական իժերը իրենց առաջխաղացման ճանապարհին ավերում, հրկիզում էին այն ամենը, ինչ ստեղծված էր Բելոռուսիայի աշխատավորության ջանքերով: Սովետական Բելոռուսիան ժամանակավորապես օկուպացրին հիտլերականները. նրանք ոչնչացրին երկու հարյուր քաղաք. ինը հազար գյուղ, տասնյակ հազարավոր արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկություններ, հողին հավասարեցրին գիտության ու կուլտուրայի բազմաթիվ օջախներ: Հիտլերյան մարդակերները գնդակահարեցին ավելի քան երկու միլիոն անմեղ մարդ՝ ծերեր, կանայք ու երեխաներ: XX դարի խաչակիրները գրեթե հիմնահատակ արեցին Մինսկը, մոխրակույտերի վերածելով բնակելի տարածությունները, արդյունաբերական ձեռնարկությունները, ուսումնական հաստատությունները: Նրանք ավերեցին այն փայտե տնակը, ուր տեղի էր ունեցել Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության առաջին համագումարը: Ամենուր կրակ ու բոց... ամենուր լաց ու վիշտ...

Սակայն սովետական զինված ուժերը սրընթաց գրոհներով 1944 թվականին մեր սրբազան հողից դուրս վռնդեցին հիտլերյան բորենիներին և Բելոռուսիայի վրա նորից արշալույս բացվեց: Մեր երկրի բոլոր ժողովուրդների աջակցությամբ, Միութենական կառավարության օգնությամբ, փլատակների, մոխրակույտերի միջից նորից հառնեց, վերելքի ուղին բռնեց Բելոռուսիան:

***

ԸՆԴԱՄԵՆԸ 20 տարի է անցել այդ դաժան օրերից... Հանրապետությունում կառուցվել և շահագործման են հանձնըվել ավելի քան 650 արդյունաբերական խոշոր ձեռնարկություն: 1963 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է 5,6 անգամ: Ստեղծվել են տրակտորների, ավտոմեքենաների, հոսքային գծերի, ճշգրիտ մեխանիզմների, ռադիոընդունիչների, նավթի հանույթի և վերամշակման, հանքային պարարտանյութերի, արհեստական թելի և այլ արտադրական ձեռնարկություններ:

Այժմ Բելոռուսիայում գործում են ավտոմոբիլային երեք գործարան, որոնցից մեկը՝ «МАЗ»-ը Մինսկումն է: Գործարանի կուսակցական կոմիտեի քարտուղար Ի. Խիլչենկոն պատմեց, որ իրենց կոլեկտիվը առաջին ավտոմեքենան արտադրել է 1947 թվականի նոյեմբերի 7-ին: Դրանից հետո անցել են տարիներ, կյանքի հետ առաջ է ընթացել նաև «МАЗ»-ը: Այն ընդարձակվել, միաժամանակ հագեցվել է նորագույն տեխնիկայով, ժամանակակից հոսքային գծերով, ավտոմատ հաստոցներով, սկսել է արտադրել ավելի արագընթաց և մեծ բեռնատարողությամբ ինքնաթափ ու թափքավոր մեքենաներ: Հավաքման արտադրամասի գլխավոր կոնվեյերի երկարությունը 224 մետր է: Նրա սկզբի մասում ամրացվում է շրջանակ-թափքը (рама-кузов) մերկ վիճակում: Կոնվեյերը հետզհետե առաջ է ընթանում, յուրաքանչյուր բանվոր համապատասխան մաս է ավելացնում: Վերջում էլեկտրական հոսանքով գործում է շարժիչը, ղեկի մոտ նստած փորձարկող վարորդը յոթ և կես տոննա բեռնատար մեքենան տեղամասից դուրս է բերում գործարանի բակը: Գործարանը մի քանի րոպեում թողարկում է մեկ մեքենա, այս է «МАЗ»-ի կարողությունը: Հետզհետե այդ ժամանակը կրճատվելու է:

Իր զրույցն ավարտելուց հետո ընկ. Խիլչենկոն հարցրեց.

— Ցանկություն ունե՞ք տեսնել արտադրամասերը:

— Սիրով:

— Մեր գործարանը շատ ընդարձակ է, որպեսզի բոլոր տեղամասերում լինեք, ձեզ օրեր են հարկավոր:

— Ժամանակի սղության պատճառով ես կլինեմ մի քանի արտադրամասում: Իսկ մինչ այդ, խնդրում եմ ասեք, քանի՞ կոմունիստ կա ձեր գործարանում:

— Մեզ մոտ կա 47 արտադրամասային սկզբնական կազմակերպություն, 186 տեղամասային կուսակցական խումբ: Կոմունիստների ընդհանուր թիվը երկու հազար հինգ հարյուրից անցնում է:

«МАЗ»-ում կոմունիստներն ապահովում են իրենց առաջավոր դերը, ստեղծագործական նախաձեռնություն են հանդես բերում կուսակցության առաջադրած խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Գիտության, տեխնիկայի առաջընթացին համապատասխան նրանք ձգտում են տիրապետել նորին, առաջավորին, կատարելագործել իրենց գիտելիքները, առանց որի հնարավոր չէ վարել ժամանակակից հաստոցներն ու մեխանիզմները: Ահա շատերից մեկը՝ Սոցիալիստական աշխատանքի հերոս Նադեժդա Յակուբովիչը: Ես նրան տեսա բանվորական հագուստով, կաղապարման արտադրամասում իր պարտականությունները կատարելիս: Յակուբովիչը արտադրամաս է եկել նրա գործարկման առաջին օրից: Հետագայում մասնակցելով նորագույն տեխնիկայի տի-



Վ. Ի. ԿՈԶԼՈՎ
ԲՍՍՀ Գերագույն սովետի
նախագահության նախագահ

րապետման խմբակի պարապմունքներին, հանգամանորեն ուսումնասիրել է մասնագիտական-տեխնիկական գրականությունը, բանվորուհուց դարձել կաղապարման արտադրամասի բրիգադավար: Նա աչքի է ընկնում նաև ընդհանուր կարգացմամբ, գեղարվեստական գրականության հանդեպ տածած սիրով: Երբ հետաքրքրվեցի Նադեժդա Պավլովնայի կյանքով, նա կատակով պատասխանեց.

— Այստեղ էլ կյանքի հետ համընթաց եմ գնում: Ունեմ դպրոցական երկու երեխա: Ամուսինս աշխատում է տրակտորի գործարանում, հարգում ենք միմյանց, սիրում, մեկս մյուսի նկատմամբ հարգանքով ենք վերաբերում:

Արտադրության մեջ գերազանցիկ, կոլեկտիվում համեստ, ընտանիքում հոգատար մայր, սիրող ամուսին: Այսպիսին էր Յակուբովիչը:

Ավտոմոբիլային արդյունաբերության մյուս հսկան «БелАЗ»-ն է, որը թողարկում է քանյոթ տոննա բեռնատարողությամբ ինքնաթափ: Այստեղ կոնստրուկտորները ծրագրել են կազմել ավելի հզոր՝ 65, 110, 160, նույնիսկ 200 տոննա բեռնատարողությամբ մեքենաների նախագծեր:

Բելոռուսիայի արդյունաբերական խոշոր ձեռնարկություններից մեկը Մինսկի տրակտորի գործարանն է: Ընդամենը քսան տարվա պատմություն ունի այն: Այս տարի նրա գլխավոր կոնվեյերից դուրս է եկել հինգ հարյուր հազարերորդ տրակտորը:

Հինգ հարյուր հազար տրակտոր... Լենինը երազում էր ամբողջ երկրում հարյուր հազար տրակտոր ունենալ... Այսպես է իրականացնում կոմունիստական կուսակցությունն իր առաջնորդի երազանքները:

— Քանի՞ հոգուց է բաղկացած գործարանի կոլեկտիվը,— իմ հարցին կուսկոմի բաժնի վարիչ ընկ. Վ. Գարբունովան պատասխանեց.

— Մի քանի տասնյակ հազար:

— Հայեր կա՞ն:

— Շա՛տ. և ո՛չ միայն հայեր, այլ քըսանչորս ազգությունների ներկայացուցիչներ, որոնք աշխատում են համերաշխ:

Արտադրության բարձր ցուցանիշների հասնելու համար գործարանը պարգևատըրվել է Լենինի շքանշանով, կոլեկտիվի երկու ընկերների՝ դարբին Վ. Սամուսևին և փականագործ Ե. Կլիմչենկոյին շնորհվել է Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:

Ներկայումս գործարանը օրական թողարկում է հարյուրավոր տրակտորներ: Առաջիկայում ավելի է ընդարձակվելու այս հսկայի արտադրական կարողությունը, հնգամյակի վերջում այն թողարկելու է տարեկան տասնյակ հազարավոր տրակտոր և քսան հազար հանգույց (շարժիչներ և այլն) ուրիշ ձեռնարկություններին մատակարարելու



համար: Ուշագրավ է, որ աշխարհի 52 երկրներ իրենց պահանջարկն են ներկայացնում «МТЗ»-ին:

Սովետական Բելոռուսիայի արդյունաբերությունն անցած յոթնամյակում բուռն վերելք ապրեց: Այդ տարիներին գործարկվեցին երեք հարյուր արդյունաբերական խոշոր ձեռնարկություն և արտադրամաս: Էլեկտրակայանների հզորությունը 700 հազարից հասավ 2 միլիոն 140 հազար կիլովատի: Միայն անցյալ տարի Բերյոզովի ջերմաէլեկտրակայանը հինգ անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրել, քան 1940 թվականին՝ հանրապետության բոլոր էլեկտրակայանները միասին վերցրած:

Անցյալում աղքատիկ է պատկերվել Բելոռուսիայի հողը, ընդերքը. ճահիճներ, ճահճուտային հանքատեսակներ՝ տորֆ, կավ, կավիճ: Ահա այն ամենը, որ հայտնի է եղել բելոռուսներին: Երկրի ընդհանուր տնտեսական վերելքի, գիտության ու տեխնիկայի զարգացման շնորհիվ հնարավորություն ընձեռվեց ընդերքի հետախույզներին իջնելու երկրի խորքերը, հայտնաբերելու նրա գանձերը՝ բազմաթիվ հանքավայրեր, հարուստ պաշարներով: 40—500 մետր խորությամբ կա քարածուխ, որի պաշարները երեք ու կես միլիարդ տոննա են, այրվող թերթաքար՝ ավելի քան երեք միլիարդ տոննա պաշարով. հայտնաբերվել են կալիական աղերով ու քարաղով հարուստ հանքավայրեր:

Հիանալի արդյունքի են հասել նավթ և բնական գազ որոնող ավագ երկրաբան Պ. Խարչիկովի հետախույզները: 1964 թվականին Բելոռուսիայում խփեց առաջին նավթային շատրվանը, որին հաջորդեցին մյուսները: Նոր հնգամյակի վերջին տարում հանրապետությունում նավթի տարեկան հանույթը հասնելու է 3 միլիոն տոննայի, իսկ հետագայում է՛լ ավելի լայն թափով է զարգանալու նավթարդյունաբերությունը, այն հաշվով, որպեսզի նավթի ու բնական գազի սեփական արտադրությամբ հանրապետությունը



Տ. ՅԱ. ԿԻՍԵԼՅՈՎ
ԲՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ

կարողանա լիովին բավարարել իր կարիքները:

***

ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ տարիներին ոչ միայն վերաշինվել է հանրապետության մայրաքաղաքը, այլև ընդարձակվել ու կգալիորեն աճել է նրա բնակչությունը:

Գեղեցիկ է Մինսկը. լայն ու կանաչապատ պողոտաներ, փողոցներ, ստվերախիտ պուրակներ ու այգիներ, ազգային ճարտարապետական ոճով կառուցված բազմահարկ շենքեր, հուշարձաններ, հուշասյուներ:

1965 թվականին Մինսկի արդյունաբերական ձեռնարկությունները թողարկել են 1,7 միլիարդ ռուբլու արտադրանք կամ 20 անգամ ավելի, քան 1940 թվականին: Կառուցվել են 4,4 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, հարյուրավոր դպրոց և այլ ուսումնական

հաստատություն, կուլտուրական և առողջապահական օբյեկտներ: Վերականգնվել է ՌՍԴԲԿ-ի առաջին համագումարի նիստերի վայրը՝ փայտե տնակը:

Կուսակցության առաջին համագումարից անցել է մոտ 70 տարի: Կոմունիստական կուսակցությունը հավատարիմ մնալով մարքս-լենինյան սկզբունքներին, պաշտպանելով աշխատավորության շահերը անցել է պայքարի ու հաղթանակի փառահեղ ուղի: 1898 թվականին ՌՍԴԲԿ I համագումարին ընդամենը ինը պատգամավոր են ներկա եղել: 1966 թվականի ՍՄԿԿ XXIII համագումարին մասնակցել են մոտ հինգ հազար պատգամավոր:

***

ԽՈՇՈՐ փոփոխություն է կատարվել բելոռուսական գյուղերում: Ամենամեծը՝ սոցիալականն է: Մոտ 10 միլիոն հեկտար վարելահող, մարգագետին, խոտհարք պատկանում է իսկական տիրոջը, աշխատավոր գյուղացուն, որը հանրային ձևով վարելով տնտեսությունը, ունևոր, կուլտուրական կյանք է ստեղծել իր համար: Կոլտնտեսություններն ու սովխոզները մշակում են հացահատիկ, վուշ, կարտոֆիլ, ցանովի խոտ: Հետպատերազմյան տարիներին լայնորեն ընդարձակվել է շաքարի ճակնդեղի ցանքատարածությունը՝ 1945 թվականին երկու հազար հեկտարից, 1963 թվականին հասել է մոտ հիսուն հազարի: Գյուղատնտեսության եկամտաբեր ճյուղերից է անասնապահությունը: 1964 թվականին, 1946 թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 2 միլիոն 500 հազարով, խոզերինը՝ երկու միլիոնով: Միայն յոթնամյակում անասնաբուծական մթերքների արտադրանքը և պետությանը հացի վաճառքը ավելացել է 2 անգամ:

Բելոռուսիայի գյուղատնտեսության առաջընթացի համար վճռական նշանակություն ունի գերխոնավ հողերի չորացումը: Այդ նպատակին հանրապետության կուսակցական կազմակերպությունները և սովետական օրգանները խոշոր միջոցներ են հատկացնում: Միայն վերջին քսանամյակում չորացվել է ավելի քան մեկ միլիոն հեկտար ճահիճ, որից ստացվում է բարձր բերք:

Տասնմեկ գյուղ է միավորում Գաստելոյի անվան գյուղատնտեսական արտելը, որի տնտեսությունները յոթ հարյուրից անցնում են, իսկ օգտակար հողատարածությունը՝ մոտ վեց հազար հեկտար է: Կոլտնտեսությունը հիմնականում զբաղվում է կաթի և մսի արտադրությամբ: Նրա ֆերմաներում կան մոտ երեք հազար ավնվացեղ խոշոր եղջերավոր անասուն, հիսուն հազար բադ:

Նախագահի, Հայրենական պատերազմի հաշմանդամ Վ. Շիմանսկու հետ եղանք կաթնապրանքային ֆերմայում: Նոր, մաքուր ու լուսավոր գոմերում աշխատանքային բոլոր պրոցեսները մեքենայացված են: Էլեկտրակիթերի միջոցով կովի կրծքից կաթը ծծվում է ռետինե խողովակների մեջ, ապա անցնում օդային ապակյա խողովակներով ու հոսում պահեստ-սառնարանը, այնտեղից էլ չորս-հինգ հարյուր լիտր տարողությամբ էմալապատ ցիստեռններով փոխադրվում գործարան: Պահեստում տեղադրված են այնպիսի հարմարանքներ, որոնք պահպանում են կաթը թթվելուց:

— Մեծ կապիտա՞լ եք ներդրել,— հարցիս Վասիլ Պավլովիչը պատասխանեց.

— Այդ ծախսերը հատուցված են, կաթի ինքնարժեքը (մեկ լիտրի) մեկ մոտ 10—12 կոպեկից չի անցնում:

Այստեղ բարձր է կովերի կաթնատվությունը՝ միջինը երք հազար հինգ հարյուր լիտր է: Անցյալ տարի արտելը 100 հեկտար հողատարածության հաշվով ստացել է 1100 ցենտներ կաթ, 110 ցենտներ միս: Այստեղ լիովին մեքենայացված է հասկավոր կուլտուրաների և կարտոֆիլի ցանքատարածությունների վարը, ցանքը, մշակումն ու բերքահավաքը, որի շնորհիվ հիանալի բերք է ստացվում, հեկտարից միջինը՝ 25—28 ցենտներ հացահատիկ: Կոլտնտեսությունն ունի իր էլևատորը, կոլտնտեսականների ավնիվ, ջանասեր աշխատանքը լավ է վարձատրվում: Դաշտավարությամբ զբաղվող կոլտնտեսականի միջին վաստակը ամսական 92 ռուբլի է, կթվորինը՝ 150, մեխանիզատորինը՝ 170 ռ.:

Վասիլի Պավլովիչը եզրափակելով ըզրույցն ասաց.

— Մեր գյուղի կուլտուրական առաջընթացի մասին դատեցեք ինքներդ, նրա արտաքին տեսքից: Վերջերս մեկ մոտ եկել էին բուրժուական թերթերի մի խումբ լրագրողներ: Նրանք ինձ հարցրին. «Ո՞ւր են ձեր ծղոտածածկ տնակները և լապտավոր ճարդիկ»: Ես նրանց պատասխանեցի՝ «Փակեցեք հին պատմական գրքերը, դիտեցեք ձեր աչքերով, եթե այդպիսիք կտեսնեք, գրեք ձեր ծոցատետրերում»: Կոլտնտեսականները հրաժարվել են ծղոտից, լապտայից, փայտե տնակներին շուտով կփոխարինեն աղյուսից կառուցված շինությունները:

— Այսպես են վերափոխվում բելոռուսական գյուղերը, լրացրեց նախագահին ԲԿԿ Կենտկոմի քաղաքական ու տեսական «Коммунист Белоруссии» ամսագրի բաժնի վարիչ ընկ. Ա. Յաբլոնսկին:

Սովետական Բելոռուսիայի ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման, նրա գիտության ու կուլտուրայի մասին են վկայում այն, որ այժմ ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են 390 հազար մասնագետ: Այդ,— ասում է ԲՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Տ. Յա. Կիսելյովը, երկու անգամ ավելի է, քան ամբողջ ցարական Ռուսաստանում: 1964 թվականին հանրապետության առողջապահական հիմնարկներում աշխատում էին 16 հազար բժիշկ, 51 հազար միջին բուժաշխատող. հանրակրթական դպրոցներում սովորում էին մեկ միլիոն վեց հարյուր հազար երեխա: Միայն յոթնամյակի տարիներին հանրապետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դպրոցներն ավարտել են մոտ 190 հազար մարդ: Այդ ժամանակաշրջանում արդյունաբերության մեջ բանվորների թիվը աճել է 64 տոկոսով, իսկ ինժեներա-տեխնիկական աշխատողներինը՝ մոտ 100 տոկոսով:

Իրենց հանրապետության առաջընթացն են երգում գրողն ու կոմպոզիտորը: Ահա ինչպիսի գորովագութ խոսքեր է նվիրել հանրապետության բանաստեղծ Կ. Կիրեենկոն.

Не называйте мою республику
страною темных лесов!
Посмотрите —
Над нею светятся
Огни заводских корпусов.
Не называйте мою республику
Страною топких болот!
И садам ее вольно дышится
И хлеба над нею колышутся.

***

Իմ կոլեգաները, «Коммунист Белоруссии»-ի խմբագրության աշխատակիցները, նկատելով, որ ես հետաքրքրվում եմ քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմի հետ կապված դեպքերով ու մարդկանցով, խորհուրդ տվեցին ինձ լինել ԲԿԿ պատմության կենտրոնական արխիվում, Մինսկի և Բրեստի Հայրենական մեծ պատերազմի թանգարաններում:

Բելոռուսիայում սովետական կարգեր հաստատելու և ամրապնդելու համար մղված պայքարին ակտիվ մասնակցել են մեր երկրի բոլոր ժողովուրդների անձնուրաց զավակները, այդ թվում նաև հայ ականավոր հեղափոխականներ, կուսակցական, պետական և ռազմական գործիչներ: Հանրապետությունում այժմ

էլ մեծ ժողովրդականություն է վայելում Ա. Ֆ. Մյասնիկովը (Մյասնիկյան): Նա Մ. Ֆրունզեի, Ի. Ալիբեգովի, Վ. Կնորինի, Ա. Կրինիցկու, Ս. Մագիլևսկու, Մ. Կովմանովիչի հետ 1917 թվականին արևմտյան ռազմաճակատում և մարզերում զինվորների ու աշխատավորների շրջանում պրոպագանդիստական, կազմակերպական աշխատանք է տարել՝ հօգուտ կուսակցության լենինյան գծի: Օգոստոսին Մյասնիկյանը, որպես ՌՍԴԲ (բ) Կ VI համագումարի պատգամավոր, զեկուցումով հանդես է եկել Մինսկի կուսակցական քաղաքային ընդհանուր ժողովում, ուր շարադրել է կուսակցության դիրքորոշումը՝ ամբողջ իշխանությունը սովետներին հանձնելու մասին: Նոյեմբերին արևմտյան ռազմաճակատի բանակների ներկայացուցիչների երկրորդ համագումարը նրան ռազմաճակատի գլխավոր հրամանատար է ընտրում: 1918 թվականի դեկտեմբերին Բելոռուսիայի կոմկուսի I համագումարը Մյասնիկյանին ընտրում է ԲԿԿ-ի Կենտրոնական բյուրոյի նախագահ: Բելոռուս ժողովուրդն իր սրտում վառ է պահում Ա. Ֆ. Մյասնիկյանի հիշատակը: Բելոռուսիայի կոմկուսի պատմության (ուրվագծերում), Բելոռուսիայի ընդհանուր պատմության մեջ փայլուն էջեր են նվիրված Ա. Մյասնիկյանի 1917—1918 թվականների գործունեությանը: Բելոռուսիայի մի շարք քաղաքներում կան նրա անունը կրող փողոցներ ու գործարաններ:

Հանրապետության կենտրոնական կուսակցական արխիվում պահպանվում են մի գրքույկի տպարանային շարվածքի էջերի օտիսկները: Գրքույկի վերնագիրն է՝ «Սովետական Բելոռուսիայի համար մղված մարտերում», հեղինակն է լեգենդար կորավար Գայա Գայը (Հայկ Բժշկյանը): Հեղինակը ավյունով է շարադրում Սովետական իշխանության ամրապնդման համար մղված պայքարի մի կարևոր դրվագ: Գայի հեծյալ կորպուսը հերոսաբար մասնակցել է Բելոռուսիայում սովետական կարգեր հաստատելու համար մղված մարտերին:

Ֆաշիստական առաջին արկերը թափվեցին Բրեստի վրա: Արևմտյան բուքն անցած նրանց տանկերը փողերն ուղղեցին Բրեստի ամրոցի պարիսպներին: Հանկարծակիի եկած սովետական ռազմիկները չշփոթվեցին, ծնկի չեկան թշնամու առջև, այլ վենքը վերցրած գոտեմարտի ելան հակառակորդի գերազանցող ուժերի դեմ:

Բրեստի ամրոցը պաշտպանել են մեր երկրի բոլոր ժողովուրդների ծոցից դուրս եկած խիզախ ռազմիկները: Հայրենական մեծ պատերազմի տուն-թանգարանում կապիտաններ Ի. Յուբաչևի, Ս. Պոլդնյակովի, գնդի կոմիսար Ե. Ֆոմինի, բուժքույր Վ. Ռաևսկայայի դիմանկարների կողքին փակցված են Ավետիք Արարատի Սահակյանի, Սուրեն Ալեքսանի Թանանովի, Սամվել Մինասի Մաթևոսյանի, Վահան Գևորգի Գրիգորյանի պորտրեները, որոնք արյունալի և անհավասար կռվում ցուցաբերել են քաջագործություններ:

Հիտլերյան բանակները ժամանակավորապես զավթում են ամբողջ Բելոռուսիան, հաստատում ստրկացուցիչ կարգեր: Բելոռուսիայի կոմունիստական կուսակցության կոչով երկրում բռնկվում են պարտիզանական կռիվներ: Ընդհատակ են անցնում կուսակցական մարզկոմներ և շրջկոմներ, որոնք ղեկավարում են պարտիզանական բրիգադաների գործողությունները: Պարտիզանական շարժումը ղեկավարում են կուսակցական, սովետական, կոմերիտական գործիչներ, նրանց թվում Մինսկի կուսակցական մարզկոմի քարտուղար Վ. Ի. Կոզլովը, կոմերիտմիության Կենտկոմի քարտուղար Կ. Տ. Մազուրովը (ներկայումս ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահի առաջին տեղակալ): Ժողովրդական վրիժառուները խորտակում են զորք ու ռազմապաշար փոխադրող գնացքները, հարձակվում թշնամու ստորաբաժանումների վրա, ոչնչացնում նրանց: Պարտիզանական շարժման ակտիվ գործիչներից Վ. Ի. Կոզլովին (ներկայումս ԲՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ) և Պ. Մ. Մաշերովին (ներկայումս ԲԿԿ ԿԿ առաջին քարտուղար) ու շատերին շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում:

***

ԻՆՁ վիճակվեց Բելոռուսիայի արևմտյան սահմանից (Բրեստից) արևելյան սահմանը (Գոմելի մարզ) անցնել այն ճանապարհով, որով Բեռլինից հաղթականորեն հայրենիք է վերադարձել փառաբանված Թամանյան ութսունիններորդը: Ես գիտակցաբար ընտրեցի այդ ուղին: Չկան մոխրակույտերի վերածված քաղաքներն ու գյուղերը, ավերված գործարաններն ու ֆաբրիկաները: Ամենուրեք վերաշինված ու նորակառույց բնակավայրեր, երկինք սլացող գործարանային ծխնելույզներ, հասունացած ցանքատարածություններ: Կառուցումներով է զբաղված բելոռուս ժողովուրդը: Անցած հիսուն տարիների նվաճումները աշխատանքային նոր սխրանքների են մղում Բելոռուսիայի աշխատավորությանը, նրանք հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, պայքարում են նոր բարձունքների հասնելու, ընթացիկ հնգամյակի վեհ խնդիրները լուծելու համար: Հանրապետությունում արդյունաբերության արտադրանքն ընդհանուր առմամբ աճելու է 1,7 անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 2, նավթի հանույթի և նավթամշակման ձեռնարկություններինը՝ մոտ 7 անգամ: 1970 թվականին արտադրվելու է 7 միլիոն տոննա հանքային պարարտանյութ (1958 թվականին ամբողջ ՍՍՀՄ-ում արտադրվել է 12 միլիոն տոննա):

Հնգամյակում հանրապետության գյուղատնտեսության զարգացմանը հատկացվելու է 1 միլիարդ 275 միլիոն ռուբլի, որը ավելի է, քան վերջին 20 տարում այդ նպատակին հատկացված կապիտալ ներդրումները: 3,3 միլիոն հեկտար թթու հողեր կկրայնացվեն, գերխոնավացված հողերից չորացվելու է մեկ և կես միլիոն հեկտար տարածություն, գյուղին մատակարարվելու է 87 հազար տրակտոր, 47 հազար բեռնատար ավտոմեքենա, 4500 էքսկավատոր, կառուցվելու են ուսումնական, առողջապահական և գիտական հաստատությունների նոր շենքեր:

Արդեն հնգամյակը գործողության մեջ է: Բելոռուսիայի աշխատավորները պայքարում են այն իրագործելու համար:



# Արվեստասերի ԱՄԲԻՈՆ

## ՀԱԿՈԲ ՊԱՐՈՆՅԱՆԻ ԵՐԳԻԾԱԿԱՆ ԴԻՄԱՆԿԱՐՆԵՐԸ*

Մ. ՀՅՈՒՍՅԱՆ

Հայաստանի գիտությունների ակադեմիայի Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտը շնորհակալ ու խրախուսելի գործ է կատարում՝ լույս ընծայելով Հ. Պարոնյանի երկերի տասնհատորյակը, որն ամենակատարյալն ու ամբողջականն է ցարդ հրատարակվածներից: Երկերի քնարը (տեքստը) պատրաստողները՝ Ալիս Մանուկյանը (որ հրատարակված հինգ հատորից չորսի բնարն է պատրաստել և հրմտությամբ ծանոթագրել) և Գառնիկ Ստեփանյանը, ամեն ինչ արել են գործը կատարյալ դարձնելու համար: Խմբագիրներն են Պարոնյանի ստեղծագործությանը լավատեղյակ մարդիկ և փաստակ ունեցող պարոնյանագետներ: Վերջիններից հատկապես պետք է նշել մեր իրականության լավագույն պարոնյանագետ Գառնիկ Ստեփանյանին. նրա երկարատև ու համառ ջանքերով սփյուռքահայ կենտրոններից (Փարիզից, Հալեպից և այլ վայրերից) ստացվել են լուսանկարներ և այլ նյութեր, որոնց շնորհիվ գրեթե կրկնապատկվում է Պարոնյանի մինչև այժմ հայտնի գրական ժառանգությունը, հետևապես ավելի է մեծանում նրա դերը մեր գրականության մեջ և, ընդհանրապես, իբրև աշխարհի խոշորագույն երգիծաբաններից մեկի:

Այս հրատարակության երկրորդ հատորում Գ. Ստեփանյանը տվել է Ազգային ջոջերի ստեղծման և հրատարակման ողջ պատմությունը, բոլոր դիմանկարների պատմական և բանասիրական անհրաժեշտ ու հմուտ մեկնաբանությունները, ծանոթագրություններ, որոնք օգնում են հասկանալու արդեն անցյալ դարձած այդ գործիչների դերն ու նշանակությունը, զգալի չափով նպաստում այդ երկի ուսումնասիրությանը:

Հատորը խմբագրել է անվանի գրականագետ Արամ Ինճիկյանը:

Ազգային ջոջերը մեր գրականության կոթողներից և շատ գնահատված երկերից մեկն է: Իբրև դրա լավագույն ապացույց բավական է նշել, որ այն հրատարակվել է տասն անգամ. վերջինը՝ տասներորդը, լրացվել է երեք դիմանկարով և ուր տարբերակով: Թե՛ ակադեմիական հրատարակությունը պատրաստողները, թե՛ ինստիտուտի ղեկավարությունն ու հրատարակությունը պատրաստող բաժինը խորապես գիտակցել են մեծ երգիծաբանի նշանակությունը և սիրով ու բարեխղճությամբ են կատարել իրենց գործը *:

Հիրավի, վիթխարի է Պարոնյանի դերը մեր գրականության մեջ՝ իբրև իր հիմքն ու ազդեցությունը հետզհետե աճող ուժով պահպանող գրողի, իբրև ժողովրդի ճակատագրով շահագրգռված և մեր կյանքի հանրախտերի դեմ պայքարող մեծ երգիծաբանի:

Պարոնյանն է երգիծաբանության հիմնադիրը մեր նոր գրականության մեջ և ուսուցիչը բոլոր հետագա հայ երգիծաբանների:

Շատ նշանակալից է Պարոնյանի դերը նաև հայ ռեալիստական գրականության զարգացման ասպարեզում: Իր ստեղծագործությամբ, ինչպես և գեղագիտական հայացքներով նա նպաստեց մեր գրականության արևմտյան հատվածի աննախընթաց վերելքին, քննադատական ռեալիզմի արմատավորմանն ու զարգացմանը՝ գաղափարական ու գեղագիտական նախադրյալներ ստեղծելով ուրույնական թվականների արևմտահայ իրապաշտական շարժման համար:

Երգիծաբանությունը հանրային մտածողության հասունության արգասիք է: Երբ մի հասարակություն կարողանում է ծաղրով բուժել իր վերքերը, զվարթախոհությամբ ու երգիծանքով նայել երևույթներին և վերաբերմունք ցույց տալ, նշանակում է նա հասել է բավարար իմաստության: Այդ բանը լավ էր գիտակցում Պարոնյանը: Նա առաջինն էր մեր նոր գրականության մեջ, որ ամբողջ խորությամբ ցույց տվեց երգիծաբանության հասարակական վիթխարի նշանակությունը, այն դարձնելով հանրային կյանքը առողջացնելու հզոր ազդակ:

Պարոնյանն իր նախորդներից ավելի մեծ ուժով ու հմտությամբ և առավել վճռականությամբ գրականությունը կապեց կյանքի հետ, լայնորեն արտացոլեց հայ իրականությունը՝ ընդգրկելով բոլոր դասակարգերն ու խավերը:

Պարոնյանի մերկացնող, դատապարտող ծաղրը տարածվել է հայ իրականության խոցերի ու արատների, ինչպես և դրամի իշխանությամբ գործվող չարիքների վրա: Նույնպիսի համարձակությամբ ու խստությամբ նա երգիծել է քաղաքական բռնակալությունը, կամայականությունը, ավատական բորբոսնած մտայնությունը, օրենքի գրեթե բացակայությունը աշխատավորության և, մանավանդ, հպատակ ազգերի համար, ծաղրել է աշխարհակալ պետությունների ոտնձգությունները, ավիների վրա հենվող դիվանագիտության դահճությունը:

Գ. Զոհրապը, 1892 թվականին գրած մի հոդվածում Պարոնյանին համարել է «միակ բարոյագետը, որով պոլսահայերը կրնան պարծենալ»: Այս բնորոշումը խիստ իմաստալից է: Հիրավի, անմահ երգիծաբանի առաջին մտահոգություններից մեկն է եղել՝ դաստիարակել մարդկանց, ազնվացնել բարքերը, հայրենասիրության, շիտակության և նվիրվածության դասեր տալ մեր հանրային ասպարեզի գործիչներին, մեր ժողովրդին ընդհանրապես: Սակայն, Պարոնյանի բարոյագիտությունը չի սահմանափակվել միայն կենցաղի, բարքերի և հանրային գործունեության ասպարեզներով: Պարոնյանի բարոյագիտությունը, միանալով հանրային-քաղաքական մտահոգություններով ապրող գրողի պահանջներին, ստացել է նաև քաղաքական գունավորում, մարդասիրության և արդարության պահանջի բովանդակություն և ուղղվել աշխարհակալ նկրտումներով ու բռնակալ մոլուցքով կարծրացած հոգիների դեմ, բարբարոսությամբ, դաժանությամբ, կամայականությամբ և մոլեռանդությամբ կեղտոտված մարդկանց դեմ: Եվ այս իմաստով, Պարոնյանը ո՛չ միայն բարոյագետ երգիծաբան է, այլև քաղաքական երգիծաբանության ներկայացուցիչ:

Ամենքին սիրո պատգամներ բաժանող անդեմ քարոզիչ չէ Պարոնյանը: Նա բարեկամ է և թշնամի: Բոլոր հալածվածների, ճնշվածների, իրավազուրկների, ընկերային և քաղաքական պայմանների զոհերի մեծասիրտ բարեկամն է նա, բայց անողոք թշնամին՝ աշխարհակալ պետությունների, նրանց քաղաքական պոռնկությամբ շաղախված դիվանագիտության, ուժի միջոցով սարկացնելու, ճնշելու, տիրելու քաղաքականության, գայլի ախորժակ ունեցողների, բոլոր նրանց, ովքեր մահակով են մտնում աշխարհ, ովքեր զատորոշվում են գիշատչի վարքագծով և կիրառում՝ ճնշիր, բաժանիր, դիմազրկիր, որ տիրես նշանաբանը:

Իբրև մարդ Պարոնյանն օժտված էր վսեմ առաքինություններով, որոնք նրա էությունն էին և մեծապես ազդում էին նրա գրական գործունեության վրա: Ինչպես չի կարելի մեծ գրող լինել առանց մեծ մտածող լինելու, այդպես էլ չի կարելի մեծ գրող լինել առանց կատարյալ մարդ, մարդու և մարդկության ազնիվ բարեկամ լինելու: Այս տեսակետից Պարոնյան-մարդու և Պարոնյան-արվեստագետի միջև հակասություն չկա, քանզի Պարոնյանը ո՛չ միայն մեծ արվեստագետ է և քաղաքացի, այլև նույնքան վսեմ մարդ ու բարեկամ. որպես այդպիսին էլ նա բացառիկ է:

Ամեն մի մեծ գրող իր ստեղծագործությամբ արվեստագետ և հանրային գործիչ լինելով հանդերձ, նաև մանկավարժ է, լայն լսարանի, դարերի տողանցք ունեցող լսարանի ուսուցիչ: Խորունկ հերկելով մեր մոտավոր անցյալի իրականությունը, Պարոնյանը մոտեցել է նրան նաև իբրև մանկավարժ, ցանել է նորի, լավագույնի, առաջադիմության սերմեր, արթնացրել ժամանակակիցներին հանրային կյանքի համար, սրել մարդկանց հայացքը՝ լավ տեսնելու իրականությունը, ձգտել է բուժել հանրային վերքերը, նպաստել մարդու երջանկությանը: Հանճարեղ երգիծաբանի բոլոր երկերը՝ գլուխգոր-

---

* Հ. Պարոնյան, Երկեր, II հ., ԳԱ. հրատ., 1964:

* Գրքերի ու թերթերի անունները Պարոնյանը չակերտների մեջ չի առել, այլ, ինչպես արվում է շատ երկերում, տվել է շղատառով: Բնարը պատրաստողները այդ բանը պահպանել են և լավ են արել, քանզի՝ գերազանցապես կցական լեզուներում (ինչպիսին է նաև մերը) այդ ձևը հարմարագույնն է թյուրիմացություններից խուսափելու համար և խնայողական: Սակայն արդեն տպագրված հատորներում անունների հոլովական վերջավորությունները նույնպես շղատառով են տրված, որը չպետք է արվեր: Իմ կարծիքով, չի կարելի ինծի, դարձնել ինձի: Չէ՛ որ արևմտահայը ինձի կկարդա ինչի, հետևապես ոչ կիրառվող արտասանությամբ: Մենք այդօրինակ փոփոխություններ կատարելու իրավունք չունենք, քանզի հրատարակում ենք նաև սփյուռքահայության համար:

ծոցներից սկսած մինչև վերջին բերբոնը, դրա վկայությունն է:

Իբրև գրող և հրապարակագիր Պարոնյանը աչքի է ընկնում նաև դեմոկրատական հայացքների հետևողականությամբ: Նա երբեք տուրք չի տվել ընկերային ու քաղաքական հետադեմ մտայնությունների, բյուր ըմբռնումների, ազգային մոլության:

Պարոնյանն ունի նաև մի այլ առանձնահատկություն, որն իր անկապտելի արժանիքն է և նրան դարձնում է բացառիկ դեմքերից մեկը համաշխարհային երգիծաբանության մեջ: Դա խոսքի երգիծանքն է, որի մեջ Պարոնյանը հանճարեղ է և մնացել է ցարդ անկրկնելի: Նրա ստեղծագործության մեջ երգիծական աֆորիստիկ ոճի, թևավոր խոսքի մարգարիտներ կան, որոնք հիացնում են ո՛չ միայն երգիծանքի խըտացված ուժով, այլև մտքի զարմանալի խորությամբ, սրությամբ, ամենատարբեր երևույթներ ընդգրկելու և ապշեցուցիչ ճակիրճությամբ բացահայտելու ուժով:

Երգիծական խոսքի այդ մարգարիտներում առկա է ծիծաղի տարբեր գույներով փայլող պարոնյանական ժպիտը՝ լուսավոր, բարի, վեհ, մարդկային, զերծ մեծամտությունից, լի եղբայրական զորովով, որ սրտի վերքեր է բուժում՝ անզգալիորեն, պայքարում «ազգերու բոքախտի», տխրության սպանիչ ժանգի դեմ: Հայ ժողովուրդը, որ եղերական տխրության այնքան պատճառներ է ունեցել անցյալում, իրավունք ուներ ժպիտի, ուրախության պահանջներ ներկայացնելու մեր գրականությանը, և Պարոնյանն առաջինը կատարելապես գոհացրեց այդ պահանջը՝ իր գեղարվեստական լուսաշող ծիծաղով:

Պարոնյանի ծիծաղը միաժամանակ ահեղ զենք էր, որով և հայ գրականության մեջ նա առաջինը զինեց մեր ժողովրդին: «Դժբախտության վրա պետք է ոչ թե լալ, այլ ծիծաղիլ»: Սա հոգու կայտառության, նկարագրի խիզախության ապացույց է, և մեծ երգիծաբանը աչքի ընկավ հոգու անասելի կայտառությամբ և արտասովոր խիզախությամբ:

Պարոնյանը դավանել է այն միտքը, որ «խեղճության վրա արտասուք թափելն ապացուցանել է, թե արյուն չունինք թափելու»: Եվ նա պայքարել է վհատության ու հոռետեսության դեմ, կոփել է մարդկանց կամքը և պայքարի ուղին մատնանշել, ներշնչել է ինքնավստահություն, սեփական արժանապատվության գիտակցում, արդարության հաղթանակի հավատ: Պարոնյանի ստեղծագործության մեծագույն առավելություններից մեկն է սա, որը երբեք չպետք է անտեսել մեծ երգիծաբանի երկերը վերլուծելիս:

Պարոնյանի բազմասեռ ստեղծագործության մեջ Ազգային ջոջեր խորագրով երգիծական դիմանկարների կամ երգիծական դիմագիծների շարքը գրավում է շատ կարևոր տեղ: Պարոնյանագիտության մեջ Ազգային ջոջերը համարվել և համարվում է հեղինակի գլուխգործոցը, և դա իրավացի է թե՛ արվեստի կատարելության, թե՛ հանրային-քաղաքական դավանանքների ամփոփման, թե մարդու և նրա պարտականությունների հանդեպ ներկայացվող պահանջների հըստակության իմաստով: Այս երկով Պարոնյանը ներկայանում է ընթերցողին գրեթե ամբողջովին, իր բոլոր հասարակական համակրանքներով ու հակակրանքներով, իր գաղափարներով, մարդկային նկարագրի բոլոր կողմերով:

Իբրև երգիծաբան այս դիմանկարներում Պարոնյանը նույնպես իր տարերքի մեջ է. այս երկում կիրառված են երգիծանքի բոլոր տեսակները՝ իրենց դասական արտահայտությամբ: Այն մարդկանց ու երևույթների դեմ, որոնք խպտա մերժելի են, որոնց վնասակարության շառավիղը ավելի լայն է, նա կիրառում է ծաղրի ամենասուր, ամենախիստ տեսակները՝ սարկազմը, իսկ այն դեպքերում, երբ թերությունը մարդկային թուլությունից է ծագում և պակաս վնասակար է, կամ որի համար ինքը՝ ջոջը, այնքան էլ մեղավոր չէ, որքան արտաքին պայմանները, նա կիրառում է զվարթախոհություն, երբեմն հեգնանք՝ հաճախ բարեկամական ատտառով:

Գրական դիմանկարը, ըստ երևույթին, դյուրին գրասեռերից չէ և քչերին է հաջողվել, մանավանդ երգիծականը (և ո՛չ միայն մեր գրականության մեջ): Երգիծական դիմանկարի համար, երգիծաբանի տաղանդից բացի, գրողը պետք է ունենա նաև հակիրճ ոճ և նկարչական ունակություն, այսինքն՝ մարդու անհատականությունը, նրա գործունեության էությունը, նրա հոգեբանական և այլ առանձնահատկությունները նաև արտաքին նկարագրությամբ խոսեցնելու վարպետություն:

Ազգային ջոջերը իբրև ուրույն գրասեռ, նորություն էր մեր գրականության մեջ. այդ երկով, ինչպես առհասարակ իր ամբողջ ստեղծագործությամբ, Պարոնյանը զգալի ազդեցություն թողեց հետագա գրողների վրա: Գ. Զոհրապը ևս մեր գրականության մեջ սկզբնավորեց գրական դիմանկարի սեռը՝ Ծանոթ դեմքեր խորագրով: Գ. Զոհրապը, Ե. Օտյանը, Հովհ. Ասպետը, Սիպիլը, Հ. Ասատուրը, Տ. Արփիարյանը, Հ. Ալփիարը, Ա. Հարությունյանը, Հ. Մառքը, Ա. Անտոնյանը և ուրիշներ գրական դիմանկարի կերտման իրենց ունակությամբ այս կամ այն չափով պարտական են, անշուշտ, Պարոնյանին, թեև կարող էին ազդված լինել մասամբ նաև եվրոպական, մասնավորապես, ֆրանսա-



կան գրականությունից, ուր գրական դիմանկարի սեռը գոյություն ուներ XVII դարից:

Ազգային ջոջերը պարունակում է ընդամենը երեսունհինգ դիմագիծ, այն գրված է վեց տարում՝ 1874—1880 թթ.: 1879 թվականին առանձին գրքով հրատարակելով իր առաջին տասը դիմանկարները՝ հեղինակը կցում է դրանց մի փոքրիկ առաջաբան, որը կարևոր նշանակություն ունի երկի էությունը և նպատակը հասկանալու համար: Առաջաբանում ասված է. «Մենք այս հրատարակությամբ աշխատած ենք մեր ազգին մեջ գտնված երևելի անձերուն կենսագրություններն ընելով՝ անոնց թերություններն ցույց տալ այն անաչառությամբ, որ կենսագրե մը կը պահանջվի՝ առանց սակայն դուրս ելնելու հեգնաբանության սահմանեն:

Կը համարձակինք ըսելու, որ ոչ զոք վիրավորել ուզած ենք և ներկայացուցած ենք անձերն այնպես, ինչպես որ են և ոչ թե ինչպես որ կ'ուզեն իրենք և եթե ընթերցողն տեղ տեղ ծանր կետերու հանդիպի՝ անոնց պատասխանատուն մենք չենք. ո՞ր նայելին զանանն Աֆիլես կ'անդրադարձնե, ո՞ր լեռն սուրբը սատանա կը կրկնե»:

Այս տողերը, ինչպես տեսնում ենք, ունեն ծրագրային նշանակություն. պարզում են հեղինակի նպատակը, մոտեցումը և մեթոդը: Նպատակը որոշակի է՝ թերությունները ցույց տալ: Մոտեցումը հեգնաբանական է, այսինքն՝ երգիծական, իսկ մեթոդը ռեալիզմն է՝ իր հիմնական պահանջով — «այնպես, ինչպես որ է»: Այս սկզբունքին, պատմական փաստերի նըշմարտացիությանը զարմանալիորեն հավատարիմ է մնացել Պարոնյանը՝ բյուրեղյա մարդու անաչառությամբ, որի մեջ նրա օրինակելի բարությունը իր որոշակի բաժինն ունի: Քանզի հանճարեղ երգիծաբանը լավ է հասկացել, որ մարդկանց, մանավանդ, հանրային գործիչների թերությունները և՛ իրենցն են, և՛ ժամանակինը, ավելի լայն ըմբռնումով՝ հանրակարգինը:

Պարոնյանի այս դիմաշարն ունի բավական լայն ընդգրկում և, ըստ էության, մի ժամանակահատվածի հայ կյանքի, մասնավորապես պոլսահայ իրականության յուրօրինակ ուրվագիծն է, ամփոփված երգիծական դիմանկարներում: Այս դիմանկարների բնորդները գրողներ են, մանկավարժներ, հանրային գործիչներ, հրապարակագիրներ, դերասաններ, հատուտապետներ, բեմադրիչներ, խմբագիրներ, հոգևորականներ, առհասարակ հայ իրականության մեջ այս կամ այն չափով դեր կատարած անձնավորություններ, ոմանք էլ հանրային կյանքին ուղղություն տվողներ: Ներկայացնելով այդ մարդկանց գործունեությունը իրենց դրական ու բացասական կողմերով, Պարոնյանը ցանկացել է իր՝ սրտացավ մարդու, խոսքն ասել հայ կյանքի գրեթե բոլոր բնագավառների վերաբերյալ, և դրա լավագույն միջոցը համարել է այդ մարզերի գործիչների մասին գրելը: Երգիծաբանին անհատներից ավելի հաճախ հետաքրքրել է բուն գործը, նրա կատարման էությունը: Հիրավի, իր դիմագիծներում Պարոնյանը հաճախ այնքան հարցեր է շոշափում, երևույթներ բացահայտում, որ դրանք անցնում են բնորդի դիմագծման սահմաններից և վերաբերում շատ այլ խնդիրների, նայած տվյալ պահին ի՞նչն է հուզել նրան:

Իրենց մարդկային արժանիքներով և կատարած գործի նշանակությամբ ազգային ջոջերին կարելի է բաժանել երեք հիմնական մասի՝ խիստ բացասականներ, ամբողջովին դրականներ և այնպիսիներ, որոնց գործունեության և մարդկային վարքագծի մեջ կան քննադատելի, մերժելի կողմեր: Դրականի և բացասականի չափանիշը պայմանավորված է Պարոնյանի հանրային-բարոյական օրենսգրքի այն կետով, ըստ որի ամեն անհատ պարտականություններ ունի իր ժողովրդի նկատմամբ, և նրա արժանիքները չափվում են այդ պարտականությունների հանդեպ տածած նվիրվածությամբ:

Ջոջերի մեծ մասը, բոլոր թերություններով հանդերձ, մտահոգված են իրենց կատարածի արդյունքով և այս կամ այն չափով ջանք են գործադրում արդյունքի հասնելու համար: Սա նրանց դրական և ընդհանրացնող գիծն է, որ հստակ երևում է հեղինակի երգիծանքի և զվարթախոհության մեջ, որքան էլ հաճախ խտացված լինեն երգիծանքի գույները: Սակայն քիչ չեն և այնպիսիք, որոնք «ավելի մեծ անուն վաստկելու մոլությունն ունին, քան թե մեծ մարդ ըլլալու առաքինությունն» (171) *:

Ազգային ջոջերի դիմանկարներում ծաղրըված, երբեմն շատ խիստ երգիծված թերությունները մասամբ պայմանավորված են բնորդների անձնական պակասություններով, մասամբ՝ միապետական իրականության ճանճացումով և բռնեցված իրադրությամբ. այդ պատճառով հաճախ ստացվում էր ձևի և բովանդակության, մեծադղորդ հռչակումների և լղրճուկ արդյունքի սարսափելի աններդաշնակություն: Ահա սրա դեմ է, հաճախ, ըմբոստանում երգիծաբանը և այդ ըմբոստացումն արտահայտում օրինակելի համարձակությամբ, առանց մտածելու բնորդների դժգոհության, հետևանքների մասին: Իրավունք ուներ նա ասելու. «Պարոն փաստաբաններ, մի պարծենաք կենսագրություններուս մեջ

* *Բոլոր էջերի նշումները վերաբերում են Պարոնյանի երկերի նոր հրատարակության Բ. հատորին (ՀՍՍՀ ԳԱ հրատարակչություն, Երևան, 1964):*

գիս դատի հրավիրելու բնություն ունեցող կետեր գտնելուդ վրա, որովհետև կենսագրություններս կազմող բոլոր կետերն նույն բնությունն ունին» (21):

Ջոջերի համար վերը նշված ընդհանուր բնորոշումից դուրս են մի քանի դիմանկարների բնորդները, որոնք բացասական են մարդկային բանականության մատչելի բոլոր չափանիշներով. դրանք են՝ Ա. Հասունյանը, Ս. Քազանճյանը, Կ. Երեմյանը և Հ. Տերոյենցը:

Ամենաբացասականը այդ դիմագիրներից Ա. Հասունյանն է, մի մարդակերպ իժ, որի կենսագրության մեջ Պարոնյանը չի տեսնում ոչ մի լուսավոր գիծ: Հասունյանը հայ ժողովրդին պառակտող և նրա մի մասի գերեզմանը փորող դահիճն է, այն սադիստների ոհմակից, որոնց չարիքը որակելու համար աղքատ է մարդկային բառարանը, որոնք մարդ կոչվելու իրավունքից զրկել են իրենց և դավաճան կամ դահիճ կոչվելու իրավունքն են նվաճել:

Հասունյանը, որի նմանները բավական շատ է ծնել Վատիկան կոչվող հրեշաբնի հովանավորության տակ ծլող ու ծաղկող ճիզվիտությունը, հակառակ հայ կաթոլիկ համայնքի մեծամասնության կամքի, Հռոմի պապի կողմից նշանակվում է պատրիարք և, վայելելով սուլթանական կառավարության, մանավանդ պապի և աշխարհակալ պետությունների աջակցությունը, դառնում է ժողովրդի երդվյալ թշնամի, լրտեսում, մատնում, թուլացնում ժողովրդի ինքնապահպանման ջանքերը:

Դառնալով հայ իրականության մեջ պապականության՝ աշխարհակալ պետությունների պատվերը կատարող, նենգագույն քաղաքականության կիրառող, Հասունյանն իր ողջ ուժը վատնում էր, ինչպես Պարոնյանն է ասում հայ ազգը սպանելու համար: Պարոնյանը բողոքում է Հասունյանին (որը հայ ժողովրդին ներսից վնասելու համար հայ էր ձևանում) «ազգատյաց» կոչելու դեմ, որովհետև, ինչպես երգիծաբանն է ասում, «...այս կրոնավորն զավակ է Յաղուպ Իպն Յուսեփ Հասո անուն բերիացի ասորիի մը և ոչ թե հայու զավակ, ինչպես կ’ավանդեն անհավատարիմ պատմագիրներեն ոմանք: Յուր գործերն բավական են ապացուցանել, թե հայու զավակ չէ, եթե ըլլար՝ անկարելի էր, որ իր ազգն սպաննելու աշխատեր...» (107):

Հասունյանի կողքին կարելի է դնել մի այլ կաթոլիկ պատրիարքի՝ Սուքիաս Քազանճյանին, որը տարբերվում է առաջինից միայն նրանով, որ գիտե քամելեոնի շապիկ հագնել, թաքցնել իր օձի հոգին, նույնիսկ հակահասունյան ձևանալ. բայց նա ևս մի ժամանակ Վատիկանի աջ ձեռքն էր, պատկանում էր այն տարրերի ոհմակին, որոնք ապրում են միայն մի նպատակով՝ որքան կարելի է շատ վնասել իրենց ծնած ժողովրդին:

Խիստ բացասական մարդկանցից է նաև Հովհ. Տերոյենցը, խավարամոլության, ստրկամտության երդվյալ քուրմը, նույնպես քամելեոնների ցեղից: Առաջավոր ուժերի (Միքայել Նալբանդյանի և նրա շուրջ համախմբվածների) դեմ մղած նրա համառ պայքարը, ազատամտությունից խուսափելը, «ազգին... ծունկ չոքող աշակերտներ» (43) հասցնելու միտումը չեն միայն Տերոյենցի ողջ դժբախտությունն ու խայտառակությունը: Այս քամելեոնը, պաշտոնապես ձևանալով պատրիարքարանի գաղափարախոս, ըստ էության պապի «հողաթափը» համբուրողներից էր: Տերոյենցը «Հասունի պես ափ մը հայ չէր ուզեր արքայություն տանիլ, այլ կը փափաքեր, որ բոլոր հայերն մեկեն տանի արքայություն Հռովմի ճամփով» (45):

Հպատակ ժողովրդի դժբախտություններից մեկն էլ կացնի կոթի հայթայթումն է: Իրենց ջարդողներին կացնի կոթ են դառնում չարչիական հոգու տերերը, ժողովրդից կտրվածները, հաճախ նույնիսկ գաղափարական աստառ գտնելով իրենց դահճության համար, ինչպես անում էր Տերոյենցը:

Ճիզվիտության դեմ ուղղված դիմանկարներից է **Հովսեփ Շիշմանյանը**: Անդրադառնալով պապի գործակալների ժողովրդադավ գործին, Պարոնյանը բարձր է գնահատում ականավոր վիպասան Շիշմանյանի (Ծերենց) կարևոր դերը պապականության դեմ մղած պայքարում, իբրև «հակահասունյաններու հրամանատարի», որ լավ էր հասկանում ճիզվիտների էությունը և ձգտում էր «...յուր եղբայրներն ազատել Վատիկանու... Փարավոնեն» (75):

Մեծ կրքով Պարոնյանը մերկացրել է նաև անգլիական իմպերիալիզմի կրոնական գործակալներին՝ բողոքական միսիոնարներին, որոնք նույնպես կատարում էին մեր ժողովրդին պառակտելու և նրան ճերմակ ջարդի երախը մղելու սև գործը, հաճախ նույնիսկ այս ասպարեզում մրցելով ճիզվիտների հետ: Խոսքը ուղղելով միսիոնարներին, երգիծաբանը գրում է. «Միսիոնար եղբայրներ, հերիք զմեզ մեր մեջը բաժնեցիք, պառակտեցիք, հերիք ազգային հառաջադիմության առջև ամբարտակներ բարձրացուցիք, հերիք հանուն Քրիստոսի՝ եղբայր եղբորմեն, հայրն իր զավակեն բաժնեցիք, հերիք ազգին հիմերն քանդել կործանել աշխատեցաք... Հեռու կացեք մեզմե, քիչ մ’ալ ուրիշները համոզեք և արքայություն տարեք...» (Թատրոն, Կ. Պոլիս, 1876 թիվ, 228):

Պարոնյանի ամենահաջողված դիմանկարներից է **Մկրտիչ Տիգրանյանը**, երգիծանքի մի գոհար, որ համեմված է սրամիտ հեգնանքով և զվարթախոհությամբ: Իր բուժական խաբեությունների պատճառով «հրաշագործ» անվանված, եպիսկոպոսության աստիճան ստացած այս մակաբույծին Պարոնյանը կոչում է «պատիժներու նախագահ» և «յոթն փորձանք», նա պատուհաս էր ժողովրդի գլխին, «անարժան հովիվ», որ փոխանակ «հոտը գայլերից» պաշտպանելու, ինքն էր նրան հոշոտում: Այս խաբեբայի կյանքի «մեկ քառորդն անցած է ճամփորդության մեջ, մեկ քառորդը բանտերու մեջ, մեկ քառորդը մոխիր խառնելու մեջ և մյուս քառորդն ալ ստակ հավաքելու մեջ» (72):

Երգիծաբանը խիստ դժգոհ է, «որ մեր կրած տառապանքներեն չխրատվելով անարժաններն վարդապետ, քահանա կը ձեռնադրենք և ազգին իրավունքներն անոնց ձեռքը կը հանձնենք...» (63): Այսօրինակ «պատիժները» իշխողները պահում էին հատուկ նպատակով. ահա թե որն էր դրանց տևականության պատճառներից մեկը: Երբ Պատրիարքարանը փորձում է Տիգրանյանից ազատվել, վերջինս դիմում է սուլթանին և դատի է կանչում պատրիարքին: Միայն ամիրաների միջամտությամբ է պատրիարքը ազատվում անպատվությունից:

Ընդհանրացնելով իր կարծիքը կղերի մասին, Պարոնյանը մի դիմանկարում ասում է. «Կղերն, քիչ բացառությամբ, ազգն արդեն բարիք չսպասեր, և եթե երբեմն կրոնական մը կը հարգե՝ պատճառն այն է, որ նվազ չարություն տեսած է անկե» (186):

Հայ ժողովրդի մարմնի վրա առաջացած մի խոց է նաև Կարապետ պեյ Երամյանը, որի դիմագիրը տրված է երկու տողով: Սա, հավանաբար, աշխարհի ամենահակիրճ դիմանկարն է. մեծագույն վարպետությամբ հեղինակը ցույց է տվել, որ երկու բառով էլ կարելի է մարդ սպանել: «Մզկիթ մը շինել տված է»: Ահա այս ամիրայի գործունեության, ավելին՝ նրա էության հանրագումարը: Շահագործող, ճնշող, դիմազրկող հանրությունը ծնում է բռնակալներ, ճնշողներ, քամելեոններ, գավառական ապուշներ, դավաճաններ, հարբեցողներ, ամեն երանգի ու չափի ստահակներ, մարդասպաններ, որոնք տարբեր քանակի թույնով են օժտված և իրենց հոռի հակումների զարգացման համար նպաստավոր պայմաններ գտնելով, ավելի են կատարելագործում իրենց բացասական էությունը:

Թե՛ բացասական, թե՛ դրական մարդկանց պատկերելիս, Պարոնյանը միշտ մնացել է երգիծաբանական արվեստի սահմաններում: Բացառություն է միայն Սարգիս պեյ Պալյան դիմանկարը, ուր երգիծանքը փոխարինված է հրճվալից տարփողանքով:

Հիանալի է նրա մուտքը. համոզվում ենք, որ հանճարեղ երգիծաբանը կարող էր ո՛չ միայն քարկոծել, ծաղրել, քննադատել, այլև դրվատել, արժանին հատուցել, մեծարել հանճարը հանճարաբար: «Ներելի՞ է արդյոք,— գրում է նա,— հեգնական գրիչի մը հանդգնիլ այսպիսի հանճարավոր և հռչակավոր անձի մը փառքը գրելու...» (225):

Արվեստագետ-մանկավարժը գտել է բարձր արժանիքների և վսեմ նկարագրի տեր մի մեծ մարդու, որին ուզում է ցույց տալ իբրև կենդանի օրինակ, դրանով իսկ կատարել գրողի դաստիարակիչ դերը, ազդել հանրության վրա, ներկայացնել նրան մանավանդ հանրային գործիչներին: «Թվով խիստ քիչ են մեր ազգին մեջ այսպիսի մարդեր,— գրում է հեղինակը,—որոնք իրավամբ իրենց ազգին փառքն ու պարծանքն են» (229):

Իզուր չէ, որ Պարոնյանը այսքան սքանչանում ու ակնածանքով է խոսում Պալյանի մասին: Պալյանը ո՛չ միայն հռչակ ստացած ճարտարապետ էր, այլև մեքենագետ, գյուտարար, բնագետ, քիմիագետ, երաժշտահան, դաշնակահար: Պարոնյանը հիացմունքով է նշում Պալյանի ճարտարապետական առավել նշանակալից 27 կոթողները, որոնք, ըստ ֆրանսական հանդեսի, զարդարում են քաղաքը:

Պալյանի բազմակողմանի հանճարից ավելի Պարոնյանին գրավում է նրա մարդկային էությունը, ազնվությունը, «հպարտության նշույլ անգամ» չունենալը, «ամենուն հետ քաղցրությամբ» վարվելը, մանավանդ նրա բարձր և գործուն հայրենասիրությունը, որից զուրկ էին փառքի սանդուղներով բարձրացող և պետության հովանավորությունը վայելող շատ «երեվելիներ»: Պալյանի քսակը միշտ բաց էր ժողովրդի կարիքների համար: «Եթե յուր տված դրամներուն ցանկն հրատարակվի,— ասում է Պարոնյանը,— ակներև պիտի տեսնվի, որ այս անձը կարծվածեն ավելի առատաձեռն է»: «Շատ տարիներե ի վեր Վասպուրականի Մարմեթ գյուղի մեջ դպրոց մը հիմնած է, և որուն ծախքն ինքը կը հոգա մինչև այսօր» (232):

Բայց կա ավելին, կա մի բան, որ ուրախությամբ, բայց և մռմռքով է նշում հանճարեղ երգիծաբանը: «Հակառակ այն պատվանշաններուն,— ասում է նա,— զորս յուր կուրծքեն կախած են Անգղիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի, Իտալիայի, Թուրքիայի, Ռուսիայի և այլ կառավարություններն՝ այսօր հայերեն կը խոսի և ազգին բնավ չարիք մը հասուցած չէ: Այսչափ պատվանշաններով զարդարված մեկն յուր մայրենի լեզուն սիրե՞... Աս քիչ մը անհավատալի պիտի թվի ամեն անոնց, որ դժբախտություն ունեցած են տեսնվելու այնպիսի էֆենտիներու կամ պեյերու, որոնք եթե աս-

տիճանի մը բարձրանան՝ հայերեն չխոսելու ուխտ կ'ընեն. երբ պատվանշան մ'ալ առնեն՝ հայերեն խոսողն ականջնեն պատի մը վրա գամելու չափ հառաչ կերթան, և երբ քիչ մ'ալ բարձրանան, ազգային իրավունքներն անուրդի կը հանեն, կարծելով, թե այս ընթացքով ավելի բարձր աստիճաններու կը հասնին» (232):

Ազգային ջոջերի ամենադրական ներկայացուցիչներից մեկն է նաև Հովհաննես Մյուհենտիսյանը, ստեղծագործական կրքով և մարդկային ամենագնահատելի արժանիքներով օժտված մարդ, մեկը նրանցից, ովքեր կյանքի իմաստը գտնում են հանրությանը ծառայելու մեջ, գրեթե մոռացած իրենց անձնականը: Պարոնյանը նրան ներկայացնում է իբրև «ձուլիչ, փորագրիչ, ոսկերիչ, թղթադրամներու արարիչ, տպարանապետ, երեսփոխան», դաշնակահար: «Երբ չենք սխալիր, ինք առաջինն եղավ ազգին մեջ դաշնակ զարնող» (207): Բացի այդ, նա հմտացել է հայ եկեղեցական երաժշտության մեջ, «ձայնագրության կանոնները պարունակող» աշխատություն է գրել, «պզտիկ երգեհոն» է պատրաստել: Մյուհենտիսյանի «ձեռները հանճար ունին» ասում է Պարոնյանը: Մի խոսքով, նա «այն մարդերեն է, զորս նախախնամությունը ստեղծած ժամանակը՝ ստեղծող ոգիով մը կ'օժտե և վերջը թող կուտա, որ ուրիշներեն միշտ խաբվին» (206): «Ջինքը խաբելու համար, ոչ օձի կերպարանք մտնել հարկ է, ոչ ալ աղավնիի, հանուն մարդկության կարող ես երկու տարի աշխատցունել զինքը և չվճարել...» (214):

Անմեղ, միամիտ, մարդկային պարտականություններին նվիրված մարդ: Եվ ի՜նչ մեծ սիրով է գրում Պարոնյանը այս դիմանկարը: Խոսքը հոսում է առանց ճիգի: Նմանը նմանի մասին է գրում, ինքը Պարոնյանն էլ աշխարհ էր եկել հանուն իր ժողովրդի ամեն ինչ զոհաբերելու պատրաստ և զոհաբերեց. աշխարհ էր եկել, ինչպես Գ. Զոհրապը կասեր, միայն ցանելու համար, իր ցանածը ուրիշները պիտի հնձեին, իսկ ինքը միայն պիտի տուժեր:

Մյուհենտիսյանը «Որչափ մեր ազգին՝ նույնչափ և թերևս ավելի ծառայություն մատուցած է թուրք ազգին»,— գրում է Պարոնյանը (211): Հայերեն և թուրքերեն մայրատառեր է պատրաստել և անընդհատ կատարելագործել, որով, ինչպես գրում է Գ. Ստեփանյանը, «հեղաշրջիչ դեր» է կատարել «Թուրքիայի տպագրական արդյունաբերության մեջ», արժանացել է Թուրքիայի եպարքոսի (վարչապետի) շնորհակալությանը: Թուրք «ազգին երախտագիտությանը արժանի է» (211), ասել է վարչապետը: Առաջին անգամ ինքն է թուրքական թղթադրամի կաղապարներ շինել և անընդհատ կատարելագործել: Իր տպարանում տպագրել է բազմաթիվ հայերեն գրքեր, չնայած «...ինչպես բոլոր հայ տպարանները, չէր կարող յուր ծախքը գոցել հայերեն հրատարակություններ ի լույս ածելով... կեցցե՜ն ազգային գրականություն և անորություն» (213), ստիպված է ասել Պարոնյանը:

Դրական գույներով են ներկայացված նաև Պողոս Պոյնուեյրիյանը և Համբարձում Իփեքչյանը: Առաջինն այնքան դրական է, որ նրա «կյանքը գրելու համար գովելու արհեստը գիտցող գրիչ մը պետք է» (187): Նա «ծնունդ» է տվել «Հակահասունյան դատին», պայքարել է ժողովրդին պառակտելու դեմ, հոգացել ժողովրդի աղքատությունը վերացնելու մասին, համառ աշխատությամբ հրահրել է «երկրագործական վարժարաններ բանալ Հայաստանի մեջ» (191): Իսկ Իփեքչյանը եղել է կրթական գործին նվիրված մանկավարժ և անբասիր հանրային գործիչ:

Դրական կամ հիմնականում դրական, գծերով են ներկայացված հրապարակախոս Կարապետ Ութուճյանը, վիպասան Հովսեփ Շիշմանյանը (Ծերենց), հրապարակախոս Կարապետ Փանոսյանը, հանրային գործիչ Հարություն Մերեյեմ-Գույլին, ուսուցիչ և հանրային գործիչ Ստեփան Փափազյանը, Ներսես Վարժապետյանը, հանրային գործիչ Մկրտիչ Եսայանը, թատերական գործիչ Հակոբ Վարդովյանը, ծաղրանկարիչ, մանկավարժ Սիմոն Յազըճյանը, դերասան, թատերական գործիչ Թովմաս Ֆասուլաճյանը և դերասանուհի Երանուհի Գարագաշյանը: Գնահատելով նրանց հանրային և մշակութային գործունեությունը, երգիծաբանը չի թաքցնում նրանց մի մասի թերությունները:

Շատ խիստ է ծաղրված Խ. Միսաքյանը թե՛ իբրև գրող, թե՛ իբրև մարդ: Երգիծանքը, թերևս, պահանջվածից ավելի սուր է այս դիմագրում:

Նույնպիսի հետևողականությամբ ծաղրված է նաև Խորեն Գալֆայանը (Նար-Պեյ) և, մանավանդ, նրա քերթողական ժառանգությունը: Նար-Պեյը անծանոթ անուն չէր մեր անցյալի իրականության մեջ. նա ազգային գործիչ էր, 1878-ին Բեռլին ուղարկված պատվիրակության անդամ, նշանավոր հռետոր, զբաղվել է նաև գրականությամբ: Նա ո՛չ միայն հրաժարվել էր կաթոլիկությունից, մի բան, որին Պարոնյանը մեծ նշանակություն էր տալիս, համարում էր՝ «գերութենե ազատություն» դառնալ, այլև պայքարել է պապականության դեմ, իսկ դիմանկարը գրվելուց հետո, պայքարել է նաև սուլթանական կարգերի դեմ, ֆրանսական մամուլում տարբեր ծածկանուններով հանդես գալով մի շարք հոդվածներով հետագայում նա հայտնի է դառնում և հետապնդվում: Սրանք փոքր ծառայություններ չեն, երբ համեմատենք, վերնախավերի՝ սառնություն, մժեղային վարքագիծ ունեցող այն ներկայացուցիչների հետ, որոնք քար անտարբերությամբ են նայել իրենց ժողովրդի տառապանքին:

Խորեն Գալֆայան դիմագիրը լավագույններից մեկն է այս դիմաշարի, գրված մեծ մասամբ գեղեցիկ, զվարթ ծիծաղ պարունակող հեգնանքով, ուր դրսևորվում է Պարոնյանի սքանչելի ոճը, որով սիրելի է նա իր ընթերցողներին:

Գրիգոր Արծրունին երկրից դուրս գործող միակ ջոջն է: Պարոնյանը գնահատում է նրա գործունեության դրական կողմերը, բայց մերժում նրա արկածախնդրական քաղաքականությունը ազգային հարցում. ինչպես Առանձարն է ասում, մի ժանգոտ երկաթի կտոր շտված ժողովրդի ձեռքը, նրան ապստամբության անհեռատես և վնասաբեր կոչեր է անում: Պարոնյանը ծաղրում է նաև Արծրունու լեզուն «այլանդակ լեզվով», «այլանդակ կարծիքներ» հայտնելը, իր հոդվածները ժողովրդին անհասկանալի եվրոպական բառամթերքով խճողելը:

Խիստ, ոչնչացնող ծաղրի է ենթարկված նաև Օգսեն Խոճասարյանի անսկզբունք հրապարակախոսությունը, առհասարակ անկայուն նրա կարագիրը. «Անոթի ըլլար նե՝ ժողովրդական էր, պատառ մը հաց ուտելուն պես՝ միապետական կը դառնար, վրան սուրճ մը խմեր նե՝ ապակենդրոնացականությունը կը պաշտպաներ. Այվատյանին դեմ բարկանար նե՝ կեդրոնացումը կը պաշտպաներ. օր մը Հասունյան կ'ըլլար, օր մը Հակահասունյան, օր մ'ալ. երկուքը մեկեն կ'ըլլար» (250):

Ծաղրված են նաև Նահապետ Ռուսինյանի լեզվական անիմաստ նորմուծությունները, «բանաստեղծ» Սիմոն Ցելեկյանը, Ազգային ժողովի երեսփոխանների (Ստեփան Ասլանյան, Տիգրան Յուսուֆյան, Հարություն Մերեյեմ-Գույլի, Ստեփան Փափազյան, Քրիստոստուր Ղազարոսյան, Մկրտիչ Էսայան, Թադեոս Պեկյան) գործունեությունը, նրանց պատեհապաշտ և հաճախ հետադեմ հայացքները, անգործնական ճամարտակությունները, տեղում դոփելը: Պարոնյանը լավ գիտեր, որ 1878 թվականից հետո Ազգային ժողովի գործունեությունը դժվարացել է, սակայն, այդուհանդերձ, խելացի գործունեությամբ կարելի էր որոշ արդյունքի հասնել:



Արդյոք Պարոնյանը իր բոլոր դիմանկարներում բնավ տուրք չի՞ տվել ենթակայական թերումներին: Իմանալով Պարոնյան-մարդու և Պարոնյան-գրողի նկարագիրն ու վարքագիծը, «սուտ խոսելե» վախենալը (129), ճշմարտությանը ծառայելու վսեմ սկզբունքը, կարելի է վստահ ասել, որ նա չի դավաճանել իրեն: Միայն մի դեպքում, թերևս, կարելի էր որոշ առարկություն անել: Հայտնի է, որ Պարոնյանը խիստ քննադատել է Բեռլինի վեհաժողովի 61-րդ հոդվածը և առհասարակ աշխարհակալ պետությունների դիվանագիտական ցանցի մեջ ներքաշվելու հայերի միամիտ, անհեռատես քաղաքականությունը, գտնելով, որ հայության վիճակն ավելի վատացավ այդ վեհաժողովից հետո. սակայն, չգիտես ինչու, այդ բանը ասում է վեհաժողովի հայ պատվիրակության անդամ Գալֆայանին նվիրված դիմանկարում և ոչ բուն մեղավորի՝ Ներսես Վարժապետյանի: Գուցե երախտագիտության տո՞ւրքը թույլ չի տվել մեղադրելու իր երբեմնի ուսուցչին: Այդուհանդերձ, նա հեգնել է Վարժապետյանի դիվանագիտական մարզանքները, նրա՝ դիվանագիտական թղթերով մխիթարվելը (223):

Անշուշտ, չի կարելի հենվելով միայն Պարոնյանի երգիծական դիմագիրների վրա տալ այդ բոլոր ջոջերի գործունեության լրիվ գնահատականը: Պարոնյանը երբեմն իր բնորդների գործունեության լրիվ պատկերն է տվել, բայց ավելի հաճախ ընդգրկել է նրանց գործունեության որոշ ժամանակահատվածը: Ազգային ջոջերը երգիծական դիմանկարներ են և ոչ կենսագրականներ: Երգիծանքը մեծ մասամբ չափազանցումների արվեստ է. սակայն Պարոնյանը այնքան ուղղամիտ և ճշմարտությանը որդեգրված գրող էր, որ նրա երգիծական չափազանցումների հիմքը գրեթե միշտ ճշմարտությունն է. դրանով իսկ այս դիմանկարները ձեռք են բերում ճանաչողական բացառիկ մեծ նշանակություն, որն ավելի է մեծանում նրա շնորհիվ, որ հեղինակը ժողովրդին հուզող բազմաթիվ հարցեր է արծարծում և, մանավանդ որ գրեթե բոլոր ջոջերը, փոքրիկ բացառությամբ, պատկերված են ժամանակի հասարակական-քաղաքական իրականության ֆոնի վրա, որով հետևողական դեմոկրատ գրողը դրսևորել է իր վերաբերմունքն այդ իրականության հանդեպ, ասել իր քննադատական խոսքը:

Ազգային ջոջերում արտահայտված մտքերի, հայացքների, տեսակետների մի մասը միայն կարողացանք ընդգծել այս հոդվածում, սակայն այդ էլ բավական է ցույց տալու, թե որքան հարուստ է Պարոնյանի մտավոր ու հոգեկան ներաշխարհը, թե ինչպես է ալեկոծել նրա հոգին ժողովրդի վիճակը: Մեծ գրողները գրեթե միշտ իրենց ժողովրդի հետ են, մարդկության հետ: Հակոբ Պարոնյանը այդպիսի գրողներից է:



## ՍՓՅՈՒՌՔԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՕՋԱԽՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ*

Միջազգային կոմունիստական շարժումը աշխարհի բոլոր մասերում իր ուրույն առավ բազմամիլիոն ժողովուրդների, այդ թվում նաև սփյուռքահայ աշխատավորական լայն զանգվածներին, որոնց նշանակալից դերը և հիշարժան գործերը, անշուշտ, պետք է իմանալ և լրջորեն ուսումնասիրել:

Այս ուղղությամբ արդեն կատարված են առաջին խրախուսելի քայլերը:

Սրանից մի քանի տարի առաջ (1960 թ.) լույս տեսավ պատմական գիտությունների թեկնածու Ռ. Խաչատրյանի Արտասահմանի հայ կոմունիստական մամուլի պատմությունից ուշագրավ աշխատությունը, որտեղ հեղինակը տալիս է բուլղարահայ կոմունիստական մամուլի համառոտ ուրվագիծը և հայերի մասնակցությունը կոմունիստական շարժմանը՝ Բուլղարիայում:

1965 թվականին լույս տեսավ պատմական գիտությունների թեկնածու Պ. Կոկինոսի Հունահայ գաղութի պատմությունից գիրքը, որն ընդգրկում է 1918—1927 թվականների ժամանակաշրջանը: Հեղինակը շարունակում է ուսումնասիրել հետագա տարիների պատմությունը:

Այս գրքում նա նկարագրում է Հունաստանում ապաստանած հայ աշխատավորության հասարակական-քաղաքական կյանքը, նրա մասնակցությունը հեղափոխական կոմունիստական շարժմանը:

Գրքի ներածական մասում հեղինակը համառոտակի անդրադառնում է հայկական գաղութի ծագման պատմությանը, ցույց տալով, որ Հունաստանը եղել է հայերի հնագույն գաղթավայրերից մեկը:

Աշխատության առաջին գլխում խոսելով գաղութի կազմավորման հարցի շուրջ, Պ. Կոկինոսը նկարագրում է առաջին իմպերիալիստական պատերազմից հետո հայերի մասսայական գաղթը Հունաստան, հունահայ աշխատավորության մասսայական տեղահանումները, հայերի պայքարը ազգային հալածանքների դեմ, լուսաբանում նրանց արտագաղթի հանգամանքները և բազմաթիվ այլ հարցեր: Զանազան աղբյուրների միջոցով նա փորձել է ճշտել Հունաստանի հայ գաղթականության ընդհանուր թիվը: Վկայակոչելով մի քանի աղբյուրներ, հեղինակը կանգ է առնում Հունաստանի արտաքին գործերի մինիստրության տվյալների վրա, որի սկզբնաղբյուրները Նանսենի տեղեկագրերն են (1922 թվականի նոյեմբերի սկզբներին): Այդ տեղեկագրերի համաձայն «հայ գաղթականների թիվը Հունաստանում հասնում է 120 հազարի» (էջ 27) [1], որից, ըստ հեղինակի, մոտ 50 հազարը 1922 թվականի վերջերին ապրում էր Հին Հունաստանում և կղզիներում, մնացածը՝ Նոր Հունաստանի շրջաններում՝ Մակեդոնիայում և Արևմտյան Թրակիայում:

Հայերը օտար երկրներում մեծ մասամբ կարողացել են ստեղծել ազգային ամփոփ օջախներ, իրար հետ կապվելով տնտեսական, կուլտուր-քաղաքական, կրոնական ու կենցաղային թելերով:

Հայ գաղթականներն իրենց նոր բնակավայրերում չէին կարող կղզիացած ապրել: Ժամանակի ընթացքում նրանք հարմարվել են նոր միջավայրին ու պայմաններին, հարազատացել իրենց հյուրընկալող ժողովուրդներին, յուրացրել նրանց վարք ու բարքը, կուլտուրան, սովորել ու սիրել նրանց լեզուն: Պատահական չէ, որ սփյուռքից հայրենիք վերադարձած հայերը խոսում են (կամ տիրապետում) մի քանի լեզուներով (հուներեն, անգլերեն, ֆրանսերեն, ռումիներեն, բուլղարերեն, արաբերեն և այլն):

Ինչպես երևում է Պ. Կոկինոսի գրքից, հունահայերը սկսել են ապրել տվյալ երկրի սոցիալ-քաղաքական կյանքով, ակտիվ մասնակցել հույների սոցիալական ու ազգային իդեալների համար մղվող պայքարին: Այդ հարցերին է նա անդրադարձել գրքի երկրորդ գլխում:

Կարճառոտ նկարագրելով սոցիալիստական գաղափարների մուտքը Հունաստան, նա հանգամանորեն խոսում է հունահայ գաղութում քաղաքական հոսանքների կազմավորման մասին:

Առաջին սոցիալիստական խմբերը կազմակերպվել են 1878 թվականին Հունաստանի մի շարք քաղաքներում ու կղզիներում: Ազատագրական գաղափարների ազդեցության տակ գտնվող հայկական գաղութի աշխատավորների առաջավոր ներկայացուցիչները մասնակցում էին Հունաստանի բանվորական շարժմանը: 1890-ական թվականների սկզբներին Աթենքում հրատարակվել են մարքսիզմի կլասիկների առանձին երկերի հայերեն առաջին թարգմանությունները: Այսպես. Աթենքում 1893 թ. առանձին բրոշյուրով հայերեն լույս է տեսել Մարքսի Վարձու աշխատանք և կապիտալ աշխատության մի գլուխը, իսկ 1894 թվականին Աթենքում հրատարակվող Գաղափար եռամսյա հնչակյան հանդեսում տպագրվել են Կոմունիստական մանիֆեստի առաջին և երկրորդ գլուխները, Պոլ Լաֆարգի Կոմունիզմը և տնտեսական էվոլյուցիան հոդվածը և այլն:

Խոսելով Հունաստանում սոցիալիստական, ապա կոմունիստական կուսակցության կազմավորման հարցի շուրջ, հեղինակը նշում է, որ կոմունիստական ինտերնացիոնալի հիմնադրումից անմիջապես հետո (1919, մարտ) Հունաստանի սոցիալիստական բանվորական կուսակցությունը դատապարտեց II ինտերնացիոնալի օպորտունիզմը և մայիս ամսին կոմինտերնի շարքերը մտնելու որոշում ընդունեց: 1920 թվականի ապրիլին Աթենքում գումարված ՀՍԲ կուսակցության II համագումարը հայտարարեց կոմունիստական ինտերնացիոնալի մեջ մտնելու մասին և իր հետագա հեղափոխական գործունեության համար որպես ուղենիշ ընդունեց նրա սկզբունքներն ու որոշումները: Համագումարը լրացրեց կուսակցության անունը՝ այն անվանելով Հունաստանի սոցիալիստական (կոմունիստական) բանվորական կուսակցություն:

Հունաստանի կոմունիստական կուսակցությունը լայն գործունեություն է ծավալում ինչպես հույն աշխատավորների, այնպես էլ ազգային փոքրամասնությունների՝ մակեդոնացիների, հրեաների, թուրքերի և հայերի շրջանում:

Գրքում բացահայտված է նաև Բալկանյան կոմունիստական ֆեդերացիայի խոշոր դերը Բուլղարիայում և Հունաստանում հայկական կոմունիստական խմբերի կազմակերպման բնագավառում: Կարևոր նշանակություն է տրված բուլղարահայ կոմունիստների՝ 1919 թվականի հուլիսին Պլովդիվում հրապարակած կոչին, որն ուղղված էր ո՛չ միայն Բուլղարիայի, այլև ողջ արտասահմանի հայ աշխատավորությանը: Այդ կոչն արտասահմանի կոմունիստական կուսակցությունների հայկական սեկցիաների պայքարի պատմությանը վերաբերող առաջին տպագիր փաստաթուղթն է:

Հունաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի ցուցումով հունահայ կոմունիստներն ու կոմերիտականները կազմում են հայկական խմբեր՝ Հունաստանի տարբեր շրջաններում ցրված հայ աշխատավորների շրջանում, իրենց աշխատանքները կազմակերպված վարելու նպատակով:

Հեղինակի վկայությամբ «Հայկական առաջին կոմունիստական խումբ» ստեղծվեց հեղափոխական տրադիցիաներով հարուստ Սալոնիկ քաղաքում, 1923 թվականի վերջերին, Իզմիրից գաղթած ձախ հնչակյանների, կոմունիստորեն տրամադրված հայ բանվորների Հունաստան հասնելուց հետո: Սկզբնական շրջանում սակավաթիվ կոմունիստների այդ խումբը հետագայում բազմապատկեց իր անդամների թիվը (էջ 82):

Սալոնիկի կուսակցական կազմակերպության հայկական խումբը շատ բան է արել Մակեդոնիայի և Թրակիայի հայ աշխատավորության շրջանում կոմունիզմի գաղափարների տարածման ուղղությամբ: Սալոնիկի խմբի անդամներից շատերը հետագայում ներգաղթեցին Հայաստան և ներգրավվեցին հասարակական ու պետական պատասխանատու աշխատանքներում: Եթե մինչև 1925 թվականը հունահայ կոմունիստների շարքերն էին մտնում գլխավորապես ձախ հնչակյանները, ապա 1925 թ. հետո մեծ մասամբ բանվորական խավի ներկայացուցիչները:

Հունահայ գաղութի ազգային մարմինների ու

---

* Պ. Կոկինոս. Հունահայ գաղութի պատմությունից, Հայկական ՍՍՀ գիտ. ակադեմիայի պատմության ինստիտուտի հրատ., 1965, 265 էջ:

[1] Ցավոք, մինչև այժմ վերջնականապես ճշտված չէ սփյուռքահայության թե՛ ընդհանուր թիվը և թե նրանց թիվը ըստ երկրների: Հրապարակի վրա եղած աղբյուրներում հանդիպում ենք հակասական տվյալների: Օրինակ, Ս. Գասպարյանի՝ Սփյուռքահայ գաղօջախները այսօր, գրքում ասված է, որ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին և ավելի ուշ՝ 1919—1922 թթ. հույն-թուրքական պատերազմի շրջանում ավելի քան 70 հազար հայեր ապաստան գտան Հունաստանում (էջ 198): Ինչպես տեսնում ենք, երկու նոր հեղինակների բերած տվյալները խիստ տարբեր են:

հասարակական կազմակերպությունների գործունեության մասին խոսելիս Պ. Կոկինոսը ցույց է տվել այն սուր բախումներն ու պայքարը, որ եղել են գաղութահայ կուսակցությունների միջև, մի կողմից Սովետական Հայաստանի համակիրների ճակատի, որի ղեկավարն են կոմունիստներն ու ձախ հնչակյան բանվորական տարրերը (սրանց հարում են նաև ռամկավար-ազատական կուսակցության առաջավոր ներկայացուցիչները), մյուս կողմից՝ դաշնակցություն կուսակցության ներկայացուցիչների միջև, որոնք տվյալ երկրի ռեակցիոն կառավարության ոստիկանական գործակալության օգնությամբ ամեն կերպ աշխատում են ճախողել առաջադեմ ուժերի, հայրենասիրական կազմակերպությունների ազգօգուտ բոլոր գործերը:

1922—1924 թվականներին Հունաստանում հիմնականում ավարտվում է հունահայ գաղութի կազմավորման ու ձևավորման պրոցեսը: Գաղութի ազգային մարմինների կազմավորման հետ միասին առաջանում է նաև հայկական պարբերական մամուլ ստեղծելու պահանջը:

Գրքում ըստ արժանվույն վեր են հանված պարբերական մամուլի դերն ու նշանակությունը հայ գաղութի քաղաքական, հասարակական հոսանքների ու կազմակերպությունների պայքարն ու կուլտուր-լուսավորական ընթացիկ կյանքը լուսաբանելու գործում («Երկունք», «Ալիք», «Նոր ալիք», «Հորիզոն»):

Պ. Կոկինոսն իր գրքում բավական տեղ է հատկացրել նաև ՀՕՄ-ի (Հայաստանի օգնության մարմին) և ՀՕԿ-ի (Հայաստանի օգնության կոմիտե) Հունաստանում ծավալված գործունեությանը:

Գրքի երրորդ գլուխը նվիրված է հայ ազգայնական մյուս կուսակցություններին՝ հնչակյաններին և ռամկավար-ազատականներին: Այստեղ հեղինակը տվել է նրանց գործունեության քաղաքական գնահատականը՝ դրա չափանիշը համարելով նրանց դիրքորոշումը Սովետական Հայաստանի նկատմամբ: Հունահայ գաղութում ներքաղաքական պայքարը մղվել է հանուն ազգային կազմակերպությունների և մարմինների նվաճման, որը տարբեր իրադրություններում տարբեր համագործակցություններ է առաջացրել: Ներգաղթի մասին եղած սովետական կառավարության որոշումը արմատական փոփոխություն մտցրեց գաղութի քաղաքական կուսակցությունների փոխհարաբերություններում: Դաշնակներն սկզբից ևեթ դեմ էին սփյուռքի հայության՝ Սովետական Հայաստան վերադառնալուն:

Ներգաղթի քաղաքականությունն ավելի հզորացրեց գաղութի հակադաշնակ դեմոկրատական ուժերին, հատկապես կոմունիստներին, որոնք դարձան Սովետական Հայաստանը համակրող մեծամասնության ղեկավար ուժը, մերկացնելով դաշնակցության ազգադավ գործունեությունը: Հնչակյան պարագլուխները ևս հարկադրված էին սահմանազատվել դաշնակներից և միանալ Սովետական Հայաստանի բարեկամների ժողովրդական շարժմանը: «Դաշնակների քաղաքական մեկուսացումը հունահայ գաղութի ղեկավար օրգաններից՝ աշխատավորական մասսաների նշանակալից հաղթանակն էր, որ նպաստեց դեմոկրատական ուժերի միասնության հետագա ամրապնդմանը» (էջ 148):

Ազգայնական կուսակցություններից ամենից քիչ բան է ասված ռամկավար-ազատականների գործունեության մասին: Շատ սուղ տողերով, սակայն ճշմարտացի տրված է ռամկավար կուսակցության քաղաքական դիրքորոշումը: Ռամկավարները «Սովետական Հայաստանի նկատմամբ լոյալ ու բարյացակամ դիրք էին բռնում, թեև նրանց բարյացակամությունը լի էր վերապահումներով» (էջ 102),—գրում է հեղինակը:

Արտասահմանի բազմաթիվ գաղթօջախներում, ինչպես նաև Հունաստանում, կոմունիստների գաղափարական ակտիվ գործունեության շնորհիվ ինչպես հնչակյաններից, այնպես էլ ռամկավարներից շատերը, հաղթահարելով իրենց ազգայնական սահմանափակությունն ու տատանումները, աստիճանաբար ընդգրկվեցին տեղական ազգային-ազատագրական պայքարի ոլորտը և անցան կոմունիստական կուսակցության շարքերը: Սփյուռքի հայ աշխատավորությունը այս մի քանի տասնամյակների ընթացքում ավելի քաջատեղյակ դառնալով Սովետական Հայաստանի տնտեսական շինարարությանը և մայր ժողովրդի կուլտուր-կրթական վերելքին (հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո), երես դարձրեց հայ ազգայնական կուսակցությունների սահմանափակ, ազգայնամոլ գաղափարախոսությունից, գնաց դեպի կոմունիստական ինտերնացիոնալիզմի դիրքերը:

Պ. Կոկինոսի գրքի առանցքը կազմում է Հունաստանի հայերի մասնակցությունը բանվորական կոմունիստական շարժմանը և նրանց ակտիվ պայքարը մի կողմից՝ դաշնակցության բուրժուա-նացիոնալիստական ռեակցիոն քաղաքականության և գաղափարախոսության դեմ, մյուս կողմից՝ հանուն հնչակյան ու ռամկավար կուսակցությունների ազգային սահմանափակության հաղթահարման և վերջիններիս ազդեցությունից հայ աշխատավոր զանգվածների ազատագրման: Հեղինակը ցույց է տվել նաև հունահայ աշխատավորության ընտրական պայքարի դրվագները, կոմունիստների նվաճումները:

Կոմունիստներին և մյուս առաջադեմ ուժերին հաջողվում է 1926 թվականի սկզբներին Աթենքում հրատարակել «Հաղթանակ» դեմոկրատական օրաթերթը, որը, չնայած իր կարճատև գոյությանը (մինչև 1927 թվականի վերջերը), մեծ դեր խաղաց հունահայերին Սովետական Հայաստանի շուրջը համախմբելու ուղղությամբ: Հանդիսանալով գաղութի բոլոր հակադաշնակ ուժերի պայքարի ընդհանուր օրգան՝ թերթի գաղափարական գիծը դարձավ Սովետական Միության և Սովետական Հայաստանի անվերապահ պաշտպանությունը:

Գրքում առանձին գլուխ է նվիրված Հունաստանի կոմերիտմիության և հունահայ երիտասարդության գործունեությանը: Նկարագրված է, թե ինչպես հունահայ կոմունիստների նախաձեռնությամբ Աթենքի, Պիրեայի, Սալոնիկի և այլ քաղաքների հայաշատ գաղթակայաններում կազմվում են չափահաս որբերի երկսեռ միությունները, որոնք դառնում են հունահայ երիտասարդության անդրանիկ դեմոկրատական կազմակերպությունները. դրանցից էլ գոյանում է հակադաշնակ աշխատավորական երիտասարդական միությունը: Այդ միությունների գործունեությունը գլխավորում էին հայ կոմունիստները և հակադաշնակ ակտիվիստները: Հենց այս չափահաս որբերից շատ շատերը հետագայում դարձան կոմերիտականներ ու կոմունիստներ, որոնք իրենց անձնվեր գործերով և կոմունիստական գաղափարայնությամբ, Հունաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կազմեցին Սովետական Միության համակիրների դեմոկրատական ճակատի ղեկավար կորիզը, իսկ գերմանական օկուպացիայի տարիներին էլասի և էամի շարքերում մարտնչեցին Հունաստանի ազատագրության համար:

Գրքում բացահայտված է այն թերթերի ու թռուցիկների նշանակությունը, որ հրատարակել են հայ կոմունիստները ինչպես լեգալ, այնպես էլ անլեգալ պայմաններում:

Վերջին՝ Հունահայ կոմունիստների գործունեությունը Պանկալոսյան դիկտատուրայի անկումից հետո գլխում հեղինակը նկարագրում է հայ կոմունիստների քաղաքական պրոպագանդիստական աշխատանքի ակտիվացումը այն բանից հետո, երբ 1926 թվականի օգոստոսի 22-ին Սալոնիկում լույս է տեսնում առաջին կոմունիստական Աշխատանք թերթը: Հունահայ կոմունիստներին այն հնարավորություն ընձեռեց լայնորեն պրոպագանդելու կոմունիզմի գաղափարները, համախմբելու նրանց պրոլետարիատի դասակարգային ընդհանուր պայքարի դրոշի տակ, ամրապնդելու հայ և հույն աշխատավորների ինտերնացիոնալ կապերը, նրանց միացնելու կոմունիզմի միջազգային բանակին:

Հունահայ գաղութի պատմությունից գիրքը գրված է հունահայ կոմունիստների, կոմերիտականների առաջադեմ պայքարի ակտիվ մասնակցի սրտի ողջ ավյունով:

Իհարկե, գիրքը զերծ չէ լեզվական, ոճական և այլ կարգի թերություններից: Պետք է այն լրացվի բազմաթիվ ակտիվիստների անուններով, ճշգրտվեն և հարստացվեն փաստերը: Չնայած այս ամենին, որպես առաջին փորձ, մեծ է գրքի պատմագիտական և գաղափարական նշանակությունը:

Վ. ՂԱԶԱՆՉՅԱՆ

# ԹՈԹԱՓՎԵՑ ՄՈՌԱՑՈՒՄԻ ՓՈՇԻՆ *

Այս տարի Հայաստանի գիտությունների ակադեմիայի հրատարակչությունը լույս է ընծայել Սերիկ Դավթյանի Հայկական ժանյակ ուսումնասիրությունը, որին կցված է ժանյակների ալբոմ: Ժողովրդական ստեղծագործության անանուն ու անվանի վարպետների՝ հիացմունքի արժանի ինչպիսի՜ գործեր է մոռացության փոշուց հանել և ընթերցողին ներկայացրել արվեստաբանության շնորհալի թեկնածուն:

Եթե արվեստի մեր մյուս ճյուղերին՝ գրականությանը, նկարչությանը, երաժշտությանը, պարարվեստին, մինչև օրս հատուցվել է արժանին, ապա անարժան կերպով անտեսվել է ժանյակի արվեստը, որը հայ ժողովուրդը «...իր երգերի ու պարերի հետ անց է կացրել կրակի ու ավերմունքի, արյան միջով», սիրել ու պահպանել է այն: Ինչպես ճշմարտացի նկատում է վարպետ Մարտիրոս Սարյանը այս գրքի իր Երկու խոսքում, «Եթե մենք ուզում ենք խորանալ մեր արվեստի ժողովրդական ավանդների մեջ, ճանաչել և հասկանալ այդ արվեստի ազգային բովանդակությունը, ապա պետք է լավ իմանանք, թե մեր անանուն վարպետներն ինչ են արել նաև կիրառական արվեստի ասպարեզներում»: Այդ արվեստի ասպարեզներից մեկն էլ ժանյակն է՝ ասեղնագործությունը:

Ինչպես ցույց են տալիս տողատակի ծանոթությունները, այլ ազգեր, որոնց մոտ ավելի ուշ

* Սերիկ Դավթյան. «Հայկական ժանյակ», ՀՍՍՀ ԳԱ հրատ., Ե., 1966, 99 էջ:

# ՊԱՐՏԻԶԱՆԱԿԱՆ ՋՈԿԱՏԻ ՍԽՐԱՆՔՆԵՐԸ

*Սովետական Միության Հայրենական պատերազմի հերոսական տարեգրությունը տարեցտարի ավելի է հարստանում. գրվում են նոր գրքեր, տարբեր ծավալի ու խորության ուսումնասիրություններ, որոնք լուսաբանում են այդ աշխարհացունց էպոպեայի զանազան հարցեր, ընթերցողին ներկայացնում ֆաշիզմի դեմ սովետական մարդկանց անձնուրաց պայքարի դրվագները։*

*Հայաստան հրատարակչությունը լույս է ընծայել (1965 թ.) ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ավագ գիտաշխատող, պատմական գիտությունների թեկնածու Վ. Ղազախեցյանի գիրքը՝* Միկոյանի անվան պարտիզանական ջոկատը *վերտառությամբ, ուր վերհանված են հայ պարտիզանների մի հատվածի սխրագործությունները Հայրենական պատերազմում։*

*Հեղինակի նպատակն է արտացոլել հայ ազգային պարտիզանական խոշոր ստորաբաժանումներից մեկի մարտական ուղին։ Հիմնականում արխիվային նյութերի, ինչպես նաև Միկոյանի անվան պարտիզանական ջոկատի հրամանատարի, մարտիկների գրավոր և բանավոր հուշերի հիման վրա նա տվել է ջոկատի կազմավորման և Ուկրաինայում ու Լեհաստանում գեներալ-մայոր Մ. Ի. Նաումովի հրամանատարությամբ գործող սովետական պարտիզանների շարքերում ֆաշիստական զավթիչների դեմ նրա մղած համառեղ պայքարի պատմությունը։*

*Հայ պարտիզանական այդ ջոկատն ստեղծվել է դժվարին պայմաններում։ Ֆաշիստական գերության մեջ ընկած սովետական զորայինները, չնայած ճամբարային ծանր պայմաններին, հավատարիմ մնալով հայրենիքին, հաղթանակի հավատը սրտներում, շարունակեցին պայքարն ատելի թշնամու դեմ։*

*1942 թվական... Լեհաստանի հիտլերյան ճամբարներում կենտրոնացվել են հսկայական թվով տարբեր ազգությունների սովետական ռազմագերիներ։ Հիտլերականները նրանց բաժանում են ըստ ազգային պատկանելության և տեղափոխում տարբեր վայրեր, ստեղծում ազգային լեգեոններ։ Հայ ռազմագերիների լեգեոնը տեղավորված էր Պուլավիում (Վարշավայից հարավ-արևելք), ուր գերմանական հրամանատարությունը նախապատրաստում էր նրանց՝ սովետական բանակի դեմ կռվի հանելու։ Բայց թշնամու պլանները չիրականացան։ Լեգեոնականները գաղտնի նախապատրաստվում էին ապստամբության, փախուստի, որը գլխավորում էր հայ ռազմագերիների մեջ ստեղծված հակաֆաշիստական հայրենասիրական ընդհատակյա կազմակերպությունը (ՀՀԸԿ)։ Խիստ դաժան պայմաններում ընդհատակայինները ռազմագերիների շրջանում քաղաքական ու կազմակերպական գաղտնի աշխատանք էին ծավալել. նրանց պարզաբանում էին թշնամու նենգ պլանները, կոչ անում չդավաճանել, հավատարիմ մնալ սովետական հայրենիքին, ձախողել հիտլերյան հրամանատարության մտադրությունները։ Ընդհատակյա պայքարի հիմնական նպատակը ռազմագերիների ազատագրումն էր և պարտիզաններին միանալը, որը պետք է իրագործվեր ամբողջ ճամբարի զինված ապստամբության միջոցով։*

*Հեղինակը գրքում նշում է բազմաթիվ ընդհատակայինների անուններ, որոնք ակտիվ գործել են լեգեոնական հայ ռազմագերիների շրջանում։ Գերմանացիներն ամեն քայլափոխում հետևում էին նրանց։ Շատերին ձերբակալում էին, անասելի տանջանքների ենթարկում։ Նրանցից Ավետիս Կարապետյանին դատապարտում են գնդակահարության, որը հետո փոխարինվում է ցմահ բանտարկությամբ։ Հայ ռազմագերիների անկոտրում ոգին է արտացոլված խոշտանգված Ավետիս Կարապետյանի՝ իր արյունով գրված (պատի վրա) խոսքերում. «Հայեր, Հայաստանը ազատ ռեսպուբլիկա կմնա միայն սովետական իշխանության ժամանակ։ Պայքարեցեք հանուն սովետական իշխանության» (էջ 10)։*

*Գրքում ընդհատակայիններից մեկը վկայում է, որ Պուլավիում իր ձեռքն է ընկել մի թռուցիկ, ուր լեգեոնականներին կոչ էր արվում չարատավորել հայ ժողովրդի, նրա երիտասարդության և սովետական հայրենիքի պատիվը, լինել քաջ, համարձակ և վրեժխնդիր (էջ 10)։*

*Հիացումի, զարմանքի զգացումով ես տողորվում, կարդալով ընդհատակի ակտիվ գործիչ, Կարմիր բանակի փոխգնդապետ Մուշեղ Մալխասյանի մասին։ Լեգեոնում գերմանացիները նրան տվել էին ավագ լեյտենանտի աստիճան։ Նա էր վարում տակտիկական պարապմունքները հայ կրտսեր հրամանատարների հետ։ 1943 թվականի հունիսին, մի պարապմունքի ժամանակ, ցույց տալով, որ զբաղված է գրատախտակի վրա, նա ունկնդիրներին համարձակ ասում է. «Հայրենիքի զավակներ, զգո՞ւմ եք արդյոք, որ մենք իրավունք չենք ունենա և չենք կարող մեր հողի վրա ոտք դնել, եթե գերմանացիների դեմ չուղղենք այն զենքը, որը նրանք մեզ են տվել իրենց՝ ֆաշիստական շահերը պաշտպանելու համար։ Հայրենիքին տված սուրբ երդումը մեզ պայքարի է կոչում ընդդեմ ֆաշիստներիս։ Իհարկե, մատնիչներ կային, և հաջորդ օրը էսէսականները ձերբակալում են Մալխասյանին։*

*Հեղինակը կոնկրետ փաստերով վեր է հանում 814-րդ ֆելդգումարտակի 2-րդ վաշտի գործունեությունը։ Վաշտի գերմանացի հրամանատարի տեղակալը ընդհատակի ակտիվ գործիչներից Արամայիս Հովսեփյանն էր։ Նա մտահոգված էր վաշտի փախուստը կազմակերպելու և պարտիզաններին միանալու հարցով։ Այս խնդիրը բխում էր ընդհատակյա կազմակերպության ծրագրից։ Մինչ այդ գերմանացիներն զգացել էին ճամբարում տեղի ունեցող խմորումները և ուժեղացրել հսկողությունն ու խստությունը։ Ավելին, նրանք այլևս հայկական լեգեոնի գումարտակներ չէին ուղարկում ռազմաճակատ. նրանց առաջին փորձն արդեն ձախողվել էր։ 1942 թվականի հոկտեմբերին, երբ սովետական զորքերի դեմ կռվելու համար հայկական լեգեոնի առաջին գումարտակը ուղարկել էին ռազմաճակատ (Մայկոպի մոտ), կապիտան Ենոք Խաչատրյանի և այլ ընդհատակայինների ղեկավարությամբ գումարտակը նախապատրաստվել էր ապստամբել, անցնել մեր բանակի կողմը, և զենքն ուղղել ֆաշիստների դեմ։ Սակայն, ապստամբության նախօրյակին, մատնությամբ, գերմանացիներն իմացել էին այդ մասին, ձերբակալել ընդհատակի ղեկավարներին, նրանցից չորսին կախաղան հանել, զինաթափել գումարտակի անձնակազմը և ուղարկել տուգանային ճամբարներ։ Ռազմագերիների մի մասը, այնուամենայնիվ, անցել էր ռազմաճակատի գիծը և միացել մեր զորքերին։*

*Այս ամենից հետո հիտլերականները ցրեցին հայկական լեգեոնի գումարտակները, ուղարկեցին թիկունքային ծառայություններ կատարելու։ Մի գումարտակ ուղարկվեց Հոլանդիա, մյուսը՝ Ֆրանսիա, երրորդը՝ Ուկրաինա։ Ուկրաինա ուղարկված 814-րդ ֆելդգումարտակի 2-րդ վաշտն էր, որ Արամայիս Հովսեփյանի ղեկավարությամբ ջանում էր իրականացնել Պուլավիում ծրագրված, բայց չիրականացած ապստամբության պլանը նոր պայմաններում, որը պսակվեց փայլուն հաջողությամբ։*

*Ուկրաինայի Ժիտոմիրի մարզում այդ գումարտակի 2-րդ վաշտը (248 հոգի, բոլորը հայեր) 1943 թվականի սեպտեմբերի 15-ի գիշերը փախչում և միանում է Սովետական Միության հերոս, գեներալ-մայոր Մ. Ի. Նաումովի հրամանատարությամբ գործող ուկրաինական հեծյալ պարտիզանական ջոկատների միավորմանը։*

*Հուզիչ է նրանց հանդիպումը։*

*Հայկական պարտիզանական ջոկատը հետագայում համալրվեց հիմնականում համակենտրոնացման ճամբարներից փախածների, ինչպես նաև այդ պարտիզանական միավորման մյուս ջոկատների հայ պարտիզանների հաշվին։ Ջոկատի մարտիկների թիվը շուտով հասավ 325-ի, որոնց մեծ մասը հայեր էին։*

*Այն Հայրենական պատերազմի ընթացքում հայ ազգային խոշոր պարտիզանական ջոկատներից էր։*

*Միկոյանի անվան ջոկատի հրամանատար նշանակվեց քաջարի մարտիկ, լեյտենանտ Արամայիս Հովսեփյանը։ Պարտիզանների կողմն անցնելու հենց առաջին օրը՝ 1943 թվականի սեպտեմբերի 16-ին, հայկական ջոկատն առաջին մարտական առաջադրանքն ստացավ՝ ոչնչացնել գերմանական կայազորը Պոտիևկայում և գրավել կարևոր նշանակություն ունեցող այդ հենակետը։ Լեգեոնականից պարտիզան դարձած մարդկանց պատասխանատու քննությունն էր այդ, որը նրանք փայլուն հանձնեցին։ Այս հաղթանակը ջոկատի պարտիզանական առաջին մկրտությունն էր, որով սկսվեց նրանց պարտիզանական կյանքը։ Այդ մասին նշում է գեներալ-մայոր Մ. Ի. Նաումովը իր օրագրում։*

*Արդեն քննություն բռնած, վստահություն ձեռք բերած հայ պարտիզանական նորածին ջոկատը գեներալ-մայոր Նաումովի գլխավորած ինտերնացիոնալ պարտիզանական միավորման կազմում պայքարում է թշնամու դեմ, բարձր պահելով իր ժողովրդի պատիվը, ցուցադրելով իր նվիրվածությունը, հավատարմությունը հայրենիքին։ Դա արդեն ընդգրկում է գրքի երկրորդ գլուխը։*

*1943 թվականի սեպտեմբերի 18-ին ուկրաինական հեծյալ պարտիզանների միավորումը պարտիզանական շարժման ուկրաինական շտաբից մարտական հրաման ստացավ՝ մի խումբ պարտիզանական միավորումների հետ պատրաստ լինել՝ Կիևի ազատագրման ժամանակ օժանդակելու Կարմիր բանակի զորամասերին։ Միավորումը ձեռնարկեց մարտական նոր առաջադրանքի կատարմանը, մեծ օգնություն ցույց տալով Կարմիր բանակին՝ Կիևի ազատագրման գործում։*

*Ինչպես նշված է միավորման մարտական գործողությունների ամփոփագրում, պարտիզանների շնորհիվ Ժիտոմիրի և Կիևի մարզերի շատ շրջաններում գյուղերը չավերվեցին։ «Գյուղացիների մոտ մնաց հացը, անասունները և գույքը, իսկ գլխավորը՝ մնացին մարդիկ, որոնց Գերմանիա քշել չհաջողվեց ֆաշիստական օկուպանտներին...» (էջ 65)։*

* Վ. Ղազախեցյան.— *Միկոյանի անվան պարտիզանական ջոկատը, Հայաստան, հրատ., 1965, 102 էջ։*

Գրքի վերջին երկու գլուխներում նկարագրված են հայկական պարտիզանական ջոկատի հետագա մարտական գործողությունները Արևմտյան Ուկրաինայում, Կարպատներում, Լեհաստանում (1944 թվականի հունվարից մինչև 1944 թվականի մարտի կեսը): Գերմանական պատժիչ արշավախմբերը կրնկակոխ հետապնդում էին միավորմանը, ինչպես և Միկոյանի անվան ջոկատի պարտիզաններին՝ ձգտելով ոչնչացնել նրանց: Ուկրաինական հեծյալ պարտիզանների միավորումը 1944 թվականի մարտի 22-ի գիշերը Արևմտյան Ուկրաինայի Չերվոնոարմեյսկ (Ռաձիվիլով) քաղաքի մոտ հանդիպում է սովետական բանակին: Այդ գեներալ-մայոր Նաումովի ղեկավարած պարտիզանական միավորման, ինչպես և Միկոյանի անվան ջոկատի վերջին ռեյդն է. դրանով ավարտվում է նրա պարտիզանական պայքարը Հայրենական պատերազմում: 1944 թվականի մարտի 29-ին, այսինքն՝ մեր զորքերի թիկունքն անցնելուց մեկ շաբաթ անց, միավորման հրամանատարին և կոմիսարին Կիևում ընդունում են Ուկրաինայի կոմունիստական կուսակցության Կենտկոմում: Նկատի ունենալով պարտիզանների գերհոգնածությունը, ՈՒԿԿ Կենտկոմը ցուցում է տալիս ցրել պարտիզանական միավորումը: Ռովնոյի մարզի Վոլկովիե գյուղում կայացավ ամբողջ անձնակազմի միտինգը, ուր ընթերցվեց ՈՒՍՍՀ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը, որով բարձր էին գնահատվում ողջ միավորման, ինչպես և հայ պարտիզանական ջոկատի ծառայությունները և պարգևատրվում էին ՈՒՍՍՀ Գերագույն սովետի նախագահության, ՈՒՍՍՀ Մինիստրների սովետի և ՈՒ(բ)Կ ԿԿ-ի Պատվավոր կարմիր դրոշով:

Այստեղ էլ, Ռովնոյի մարզում, միավորման պարտիզանները բաժանվեցին իրարից: Նրանցից ոմանք Կարմիր բանակի զորամասերում շարունակեցին պայքարը հանուն հիտլերյան զավթիչներից սովետական հողի ազատագրման և ֆաշիզմի վերջնական ջախջախման, մյուսները՝ ուղարկվեցին թիկունքային աշխատանքի:

Այսպիսով, հայկական պարտիզանական ջոկատը գոյություն ունեցավ ավելի քան 6 ամիս (1943 թվականի սեպտեմբերի 16-ից 1944 թվականի մարտի 22-ը): Այդ ժամանակաշրջանում նա ակտիվ մարտական գործողություններ ծավալեց Ուկրաինայում և Լեհաստանում, անցավ ավելի քան 1500 կիլոմետր տարածություն, մի քանի տասնյակ դժվարին մարտեր մղեց թշնամու դեմ, մարդկային ու նյութական վիթխարի կորուստներ պատճառեց նրան, և հաղթանակով դուրս եկավ: Պարտիզանական ջոկատի առաջատար ուժը կուսակցականներ ու կոմերիտականներ էին: Միկոյանի անվան պարտիզանական ջոկատի մարտիկները բարձր պահեցին սովետական մարդու, հայ ժողովրդի պատիվը: Նրանք իրենց անձնազոհ պայքարով սովետական հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության փայլուն օրինակ ցույց տվին:

Վ. Ղազախեցյանը այս գրքով ստեղծել է հայ պարտիզանների մի խոշոր ստորաբաժանման մարտական գործողությունների հուզիչ պատմությունը, որը մեր ժողովրդի պատմության հերոսական էջերից է և մեծ դեր կխաղա երիտասարդության ռազմա-հայրենասիրական ոգով, վեհ գաղափարներով դաստիարակելու գործում:

Պ. ՂԱԶԱՐՅԱՆ

## ՀԵՐՈՍԱԿԱՆ ԿՅԱՆՔ*

«Նշանավոր մարդկանց կյանքը» սերիայով Հայպետհրատը լույս է ընծայել ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու Սաքո Սարգսյանի գիրքը՝ նվիրված ականավոր հեղափոխական բոլշևիկ Սուրեն Սպանդարյանի կյանքին ու գործունեությանը: Հավատարիմ լենինյանի կյանքի այս պատմությունը գրված է ոգեշունչ ու խոր սիրով, որով համակվում է և ընթերցողը:

Սուրեն Սպանդարյանը ապրեց ընդամենը 34 տարի, հերոսական դրվագներով ու սխրանքներով լի մի կյանք: Կարդում ես այդ վառվռուն ու խանդավառ բոլշևիկի կյանքի պատմությունը, խորապես վշտանում նրա վաղաժամ մահվան առթիվ և հիշում բանաստեղծի խոսքերը.

Какой светильник разума погас,
Какое сердце биться перестало.

Հեղինակն սկզբում նկարագրում է Սուրեն Սպանդարյանի մանկության ու պատանեկության տարիները, նրա ընտանեկան միջավայրը: Նա ծնվել է Թիֆլիսում, 1882 թվականի դեկտեմբերի 15-ին, հայտնի հրապարակախոս «Նոր-Դար» ազգային-պահպանողական թերթի խմբագիր Սպանդար Սպանդարյանի ընտանիքում: Ուսումը ստանում է Թիֆլիսի արական գիմնազիայում. այստեղ էլ սովորելու տարիներին նա

* Ս. Սարգսյան.— Սուրեն Սպանդարյան, Հայպետհրատ, 1964 թ., 191 էջ:



հրապուրվում է մարքսիզմով և գիմնազիայի վերջին դասարանում՝ 1902 թվականին, ընդունվում սոցիալ-դեմոկրատական կուսակցության շարքերը, հետագայում հարում բոլշևիկյան թևին, որին հավատարիմ է մնում իր ամբողջ կյանքում: Գրքում հանգամանորեն նկարագրված է Սուրենի հետագա տարիների կուսակցական ու հեղափոխական գործունեությունը: Ահա նա Մոսկվայի համալսարանի ուսանող է, կատարում է կուսակցական հանձնարարություններ, մասնակցում ուսանողության փողոցային ցույցերին, 1905 թվականի դեկտեմբերյան ապստամբության ժամանակ բարիկադների վրա՝ զենքը ձեռքին կռվում: Սպանդարյանը նորից Թիֆլիսում է. կատարում է կուսակցական լուրջ հանձնարարություններ, Ստ. Շահումյանի հետ միասին խմբագրում «Կայծ» բոլշևիկյան թերթը, հանդես գալիս կարևոր հոդվածներով: Այնուհետև տեղափոխվում է Բաքու՝ սև քաղաքի բանվորների շրջանում հեղափոխական աշխատանք ծավալելու: Բաքվի կուսակցական կոմիտեի եռանդուն անդամներից է նա, «Бакинский пролетарий», «Бакинский рабочий», «Гудок» շաբաթաթերթերի ակտիվ ղեկավար գործիչներից: Այս օրգաններում են տպագրվել նրա հրապարակախոսական շատ հոդվածները:

Վեր հանելով Սպանդարյանի կյանքի էական կողմերը, Ս. Սարգսյանն իրավացիորեն ընդգծել է նրա բացառիկ կարևոր աշխատանքը կուսակցության VI (Պրագայի) կոնֆերանսի նախապատրաստման ժամանակ և կոնֆերանսի ընթացքում: Այնուհետև նա ամեն ինչ անում է Պրագայի կոնֆերանսի որոշումների և Լենինի ցուցումների մասսայականացման համար, ապա ձերբակալվում, դատվում և շղթայակապ աքսորվում (Հեռավոր Սիբիր):

Վերջին գլուխներում Ս. Սարգսյանը նկարագրում է աքսորական Սպանդարյանի ծանր, զրկանքներով լի կյանքը, նամակագրությունը Լենինի հետ, աշխատանքը սիբիրյան քաղաքական աքսորյալների շրջանում, հիվանդությունը և մահը (1916 թվականի սեպտեմբերի 11(24)-ին): Հուզիչ են գրքի այն էջերը, ուր հեղինակը պատմում է մեծ հեղափոխականի կյանքի վերջին օրերի մասին: Ծանր հիվանդ Սպանդարյանը ապրում էր կուսակցության կյանքով, միշտ կապված էր Լենինի հետ: «Համախմբվեցեք Լենինի դրոշի տակ» — մահամերձի այս վերջին խոսքերը հնչում են որպես պատգամ, որպես երդում:

Գիրքը ընդհանրապես լավ տպավորություն է թողնում: Հեղինակին հաջողվել է ցույց տալ Ս. Սպանդարյանի կյանքի կարևոր կապերը և հեղափոխական ու գրական գործունեությունը, վեր հանել նրա պայքարի իմաստն ու նշանակությունը:

Ս. Սարգսյանը համառոտակի բնութագրել է Ս. Սպանդարյանին՝ որպես կրակոտ հեղափոխական, ինտերնացիոնալիստ և հայրենասեր: Նա ցույց է տվել այն վճռական ու անզիջում պայքարը, որ աննկուն լենինյանը մղել է բուրժուական գաղափարախոսության, մենշևիզմի ու օպորտունիզմի դեմ, հատկապես նացիոնալիզմի ու նացիոնալիստական կուսակցությունների դեմ, որոնք իրենց քայքայիչ գործունեությամբ ջլատում էին ժողովուրդների համատեղ պայքարը ընդդեմ ցարիզմի ու բուրժուազիայի, իրենց ավանտյուրիզմով ջուր լցնում հայ ժողովրդի երդվյալ թշնամիների՝ թուրք ջարդարարների ջրաղացին:

Ս. Սպանդարյանը հաստատ համոզված էր, որ աշխատավոր մարդիկ,- ինչ ազգի էլ պատկանելիս լինեն նրանք, մասնավորապես Անդրկովկասի բոլոր ազգությունների ժողովրդական մասսաները, ունեն շահերի ընդհանրություն, փոխադարձաբար հարգում, համակրում են միմյանց: Ազգայնական կրքերի հրահրումը շահագործող դասակարգերի և նրանց ծառա մտավորականության ուղեղի, նրանց մտքի ու ձեռքի գործն է: «Այս և այն ժողովուրդների ստորին խավերը փոխադարձաբար բացառող շահեր չունեն, ընդհակառակը, ընդհանուր ամուր հող ունեն փոխադարձ միացման և իրենց շահերը միատեղ պաշտպանելու համար»,— գրում է Սպանդարյանը և ավելացնում. «Ժողովրդական մասսաները հեռու են շովինիզմից և նեղ ազգայնական աշխարհայացքից: Ամեն մի օրը հազարավոր փաստերով նրանց սովորեցնում են փոխադարձ միության» (հատ. 2, էջ 34):

Այս բոլորը շատ լավ բացահայտված են գրքում. Սպանդարյանը ներկայացված է որպես ժողովուրդների բարեկամության, հատկապես, հայ և ռուս, հայ և անդրկովկասյան մյուս ժողովուրդների բարեկամության ջերմ պաշտպան, այդ գաղափարի ջատագով, կրակոտ պրոպագանդիստ:

Ցանկալի էր, որ գրքում ավելի հանգամանորեն ու բազմակողմանի բացահայտվեր և քննության առնվեր Ս. Սպանդարյանի քաղաքական-հրապարակախոսական ժառանգությունը: Մինչդեռ հեղինակը, հանդես բերելով գրականագետի իր նախասիրությունը, համեմատաբար ավելի է տեղ հատկացրել մեծ հեղափոխականի գրական-էսթետիկական հայացքների բնութագրմանը:

Միաժամանակ պետք է նշել, որ գրքում կան թերություններ, փաստական առանձին անճշտություններ: Այսպես, օրինակ, «Սոցիալ-դեմոկրատ» թերթում (1916 թ.) տպագրված մահախոսականը Ս. Սպանդարյանի մասին՝ հեղինակը սխալմամբ վերագրել է Լենինին (էջ 188): Ճիշտ է, մահախոսականը տպագրվել է Լենինի խմբագրած թերթում (դա կարևոր է ընդգծել),

ֆաշիստները նախատեսել էին միայն մեր երկրում ֆիզիկապես ոչնչացնել 30 միլիոն քաղաքացի, իսկ հրեաներին գլխովին բնաջնջել։

Եվ նրանք մեթոդիկ կերպով ու պլանաչափորեն իրագործում էին այդ հրեշավոր ծրագիրը։ Մայդանեկի, Օսվենցիմի, Բուխենվալդի, Դախաուի, Տրեբլինկի, Մաութհաուզենի մահվան ճամբարներում, ինչպես նաև մարդկանց մասսայական ոչնչացման այլ վայրերում հիտլերականները տանջամահ արեցին 12 միլիոն մարդ։

Նացիստական մարդակերները ո՛չ միայն գազանաբար սպանում էին իրենց զոհերին, այլև առանց խղճի խայթի նրանց դիակներն օգտագործում իբրև արդյունաբերական հումք։ Մարդկային ճարպից նրանք օճառ էին արտադրում, կաշվից՝ լուսամփոփներ, մազերից՝ հատուկ գուլպաներ՝ սուզանավերի անձնակազմի համար, ոսկորներից՝ քիմիական պարարտանյութ։

Հիտլերյան դահիճների այս բոլոր սրբապղծությունների մասին Միջազգային զինվորական տրիբունալին պատմեցին փաստաթղթերի լեռնակույտերը, դատավարության դահլիճում ցուցադրված իրեղեն ապացույցները, վավերագրական կինոֆիլմերն ու լուսանկարները (որոնք նկարահանվել էին դեռևս նացիստների տիրապետության օրոք) ու մահվան ճամբարներից հրաշքով փրկված կենդանի վկաները։

Արյունը սառչում է երակներումդ, երբ կարդում ես Մարի Կլոդ Վայան Կուտյուրեի ցուցմունքները։ Նա տարիներ շարունակ անձնուրացաբար պայքարել է ֆաշիզմի դեմ Ֆրանսիայում, իսկ Ֆրանսիան հիտլերականների կողմից օկուպացվելուց հետո բանտարկվել ու նետվել է Օսվենցիմի մահվան ճամբարը, ականատես եղել նացիստների անլուր չարագործություններին։

Հիտլերականները ձգտում էին համաշխարհային տիրապետության։ Բայց նրանց խելացնոր պլանները չիրականացան։ Երկրորդ համաշխարհային պատերազմն ավարտվեց հիտլերյան ռազմական ու պետական մեքենայի լիակատար ջախջախմամբ։ Վճռական դեր խաղացին այդ գործում սովետական զինված ուժերը, սովետական ժողովրդի անօրինակ սխրագործությունը։

1945 թվականի մայիսի 8-ին «երրորդ կայսրությունը» անվերապահորեն ու լրիվին կապիտուլացվեց։ Հասավ մարդկության նկատմամբ կատարված հրեշավոր հանցագործությունների հատուցման ժամը։ Նացիստական ռեժիմի կենդանի մնացած պարագլուխները կանգնեցին Միջազգային զինվորական տրիբունալի առջև, որը կազմված էր հատկապես ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի ու Ֆրանսիայի ներկայացուցիչներից։ Ամբաստանյալներն իրենց գազանային չարագործությունների համար պատասխան էին տալիս միլիոնավոր այրի կանանց ու որբերի, այն անմեղ մարդկանց հարազատների ու բարեկամների առջև, որոնք սպանվել ու տանջամահ էին արվել մահվան ճամբարներում։ Նրանք պատասխան էին տալիս ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկության առջև։

Ճիշտ է, ֆաշիստական գլխավոր ռազմական հանցագործներից մի քանիսին հաջողվեց խուսափել ժողովուրդների դատաստանից։ Արդարացի հատուցումից ահաբեկված Հիտլերը, Հիմլերը, Գեբելսը ինքնասպանություն գործեցին։ Նույն անփառունակ եղանակով, բայց արդեն Նյուրնբերգի բանտում, պատասխան տալուց խույս տվեց նաև գերմանական արհմիությունների խեղդիչ Լեյը։ Սակայն Հիտլերի ամենամերձավոր համախոհները դատվեցին ու կրեցին արժանի պատիժը։ Մարդկության պատմության մեջ այդ առաջին դեպքն էր, երբ ժողովուրդների դատաստանին ենթարկվեցին այնպիսի հանցագործներ, որոնք պետության գլուխ կանգնելով՝ բուն պետությունը դարձրել են իրենց հրեշավոր հանցագործությունների գործիք։

Իհարկե, նացիստական գլխավոր ռազմական հանցագործներին դատելու և պատժելու վերաբերյալ համաձայնությունը դաշնակիցների միջև ծնվեց մեծ դժվարությամբ և ոչ առանց խոչընդոտների։

Ռեակցիոն մամուլը պնդում էր, որ երկրորդ համաշխարհային պատերազմը սանձազերծող հիտլերյան բոլոր համախոհները գնդակահարվեն առանց դատի ու հետաքննության։ Նման պնդումների նպատակն էր թույլ չտալ, որ հրապարակով մերկացվի իմպերիալիզմը։ Մոլի ռեակցիոներները չէին ցանկանում, որ դատավորները խորամուխ լինեն իմպերիալիստական ագրեսիվ քաղաքականության սրբության սրբոցը, բացահայտեն պատերազմի պատճառները։ Սակայն իմպերիալիզմի ջատագովների բոլոր փորձերը՝ վիժեցնելու ռազմական գլխավոր հանցագործների դատավարությունը, ձախողվեցին։ Ժողովուրդների դատաստանը կայացավ։ Այն դիմակազերծ արեց ո՛չ միայն արյունարբու ֆաշիզմի ողջ նողկալիությունը և հակամարդկայինությունը, այլև պայծառ լույս սփռեց իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության վրա, մի քաղաքականություն, որի վերջնական նպատակը միշտ եղել ու մնում է զավթողական պատերազմը։

Կարդալով Ա. Պոլտորակի մեմուարային գրառումները, լրիվին պատկերացնում ես նողկալիությունը, երեսպաշտությունը և ներքին սնոտիությունը «երրորդ կայսրության» այն պարագլուխների, որոնք ցանկանում էին դառնալ ամբողջ երկրագնդի տիրակալը։ Ակնառու համոզվում ես այն բանում, որ քսան ամբաստանյալ-



ներից յուրաքանչյուրը անթիվ անհամար աղետներ է բերել միլիոնավոր մարդկանց։ Բայց, նշում է հեղինակը, գրքի ծավալը հնարավորություն չի տվել հանգամանորեն խոսելու բոլոր ամբաստանյալների մասին, և նա անդրադարձել է միայն այն հանցագործներին, որոնք եղել են հիտլերյան կառավարության և, համապատասխանորեն, Նյուրնբերգյան դատավարության գլխավոր դեմքերը։

250 օր տևեց Նյուրնբերգյան դատավարությունը։ Այդ ժամանակամիջոցում Միջազգային տրիբունալն ունեցավ 407 նիստ։ Իրավաբանության պատմության մեջ նմանը չունեցող այդ դատավարությունը կլանեց 200 տոննա թուղթ։ Դատավարության ընթացքում հարցաքննվեցին 240 վկա, ուսումնասիրվեցին 300 հազար գրավոր ցուցմունքներ, որոնք տրվել էին երդմամբ։

Նյուրնբերգի Իրավաբանության պալատում տեղի ունեցավ մարդկության պատմության մեջ ամենախրավացի դատավարությունը։ Տասներկու ամբաստանյալներ՝ Գյորինգը, Ռիբենտրոպը, Կեյտելը, Ռոզենբերգը, Կալտենբրունները, Ֆրիկը, Ֆրանկը, Շտրեյխերը, Զաուկելը, Իոդլը, Զեյս-Ինկվարտը և հեռակայորեն Մարտին Բորմանը դատապարտվեցին մահապատժի՝ կախաղանի միջոցով. իսկ երեքը՝ Հեսը, Ֆունկը և Ռեդերը, ցմահ, երկուսը՝ Շիրախը և Շպեերը, քսան, Նեյրատը՝ տասնհինգ, Դենիցը՝ տասը տարվա բանտարկության։ Շախտի, Պապենի ու Ֆրիչեի նկատմամբ, չնայած սովետական կողմի բողոքարկմանը, միջազգային տրիբունալը արդարացնող դատավճիռ ընդունեց։

Միջազգային զինվորական տրիբունալի արդարացի դատավճիռը ի կատար ածվեց 1946 թվականի հոկտեմբերի 16-ին։ Այդ օրվանից անցել է ավելի քան քսան տարի։ Սակայն որոշ ագրեսիվ շրջաններ մինչև օրս էլ չեն կարողանում հաշտվել Միջազգային զինվորական տրիբունալի միանգամայն օբյեկտիվ դատավճռի հետ։ Այդ են վկայում իմպերիալիզմի գաղափարախոսների՝ կեղծիքով լեցուն գրքույկները, որոնք վաճառվում են Բոննի, Վաշինգտոնի և Լոնդոնի գրախանութներում։ Միլիտարիզմի ու նեոնացիզմի ջատագովները ձգտում են հետին թվով արդարացնել ֆաշիստական արյունարբուներին, ստվերել Նյուրնբերգյան միջազգային տրիբունալի արդարացի դատավճիռը։ Ահա, օրինակ, Գեբելսի մերձավորագույն համախոհ Հանս Ֆրիչեի Քսաներկու խցիկներ գիրքը, ուր այդ պարոնը հավատացնում է իր հայրենակիցներին, թե նրա կարծիքով, Գյորինգը «մեծ գաղափարների ու վիթխարի նախասահմանումների տեր մարդ էր»։

Կայսերական մինիստր Ալֆրեդ Ռոզենբերգը Նյուրնբերգի բանտում գրեց իր մեմուարները, որոնք այժմ հրատարակվել են մի առաջաբանով, ուր ընդգծվում է, որ նա եղել է «մեծ իդեալիստ» և «մահացել է, անկեղծորեն հավատալով նացիոնալ-սոցիալիզմին»։ Նույնպիսի «մեծ իդեալիստ» են համարում Բոննի ռեանշիստները Ռուդոլֆ Հեսին։ Նրանք ճգնում են ապացուցել, որ Հեսը ոչ մի բանի համար այնքան չի հոգացել, որքան աշխարհում խաղաղություն հաստատելու։ Բանն այնտեղ հասավ, որ շվեդական ռեակցիոներներն այդ երդվյալ ֆաշիստի թեկնածությունն առաջադրեցին խաղաղության Նոբելյան մրցանակի։ Իսկ անգլիական «Սենդի էքսպրես» թերթը չղաձգորեն աղաղակեց՝ «Ազատեցե՛ք նրան»։ Նախկին գրոսադմիրալ Կառլ Դենիցը, Նյուրնբերգյան տրիբունալով հաստատված պատիժը կրելուց հետո, այժմ շրջագայում է Արևմտյան Գերմանիայի երկայնությամբ ու լայնությամբ և դասախոսություններ կարդում այն մասին, թե նացիստական Գերմանիայում ինչպես էր ստեղծել սուզանավորդների դաժան գայլահմակը, որը ծովային տարածություններում իրեն խիստ սանձարձակ էր պահում։

Ինչպես երևում է, իմպերիալիստական ագրեսորներն անցած պատերազմից համապատասխան եզրակացություններ չեն արել։ Նրանք շատ վաղ են մոռացության մատնել ավելի քան 67 միլիոն մարդկային զոհերը և մոտ չորս տրիլիոն դոլարի հասնող նյութական վնասները, որ կրեց մարդկությունը հիտլերականների սանձազերծած երկրորդ համաշխարհային պատերազմում։

Մարդիկ պետք է իմանան ամբողջ ճշմարտությունը նացիստական բռնապետության արյունահեղ ռեժիմի մասին։ Այդ պետք է արվի ո՛չ միայն զոհվածների հիշատակը հարգելու, այլև արդի սերնդի խաղաղ կյանքն ապահովելու նպատակով։

Ժամանակակիցների հիշողության մեջ վերականգնելով Նյուրնբերգյան դատավարության նյութերը՝ հեղինակը նշում է, որ Գերմանիայում, իսկ հետագայում նրա կողմից նվաճված մի քանի այլ երկրներում ֆաշիզմի տիրապետությունը մի մռայլ շրջան էր համաշխարհային պատմության մեջ, որը հեշտ չէ ուղղակի վանել հիշողությունից։ Երիտասարդ սերունդը, որն արդեն աճել է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, պետք է իմանա, թե որքան է տառապել մարդկությունը ֆաշիզմի պատճառով, դրանից պատմական դաս առնի և թույլ չտա, որ խաղաղության նոր թշնամիները կրկնեն հիտլերյան արյունարբու արարքը։ Նա պետք է քաջ գիտենա, թե ինչպիսի ահավոր ողբերգությունից են փրկել մարդկությանը իրենց հայրերն ու մայրերը, ավագ եղբայրներն ու քույրերը։

«Նյուրնբերգյան դատավճիռը,— կարդում ենք գրքում,— դամոկլյան սուր է, որը միշտ կախված

ներով: Այստեղ ավելորդ են ճոռոմաբանությունն ու վերամբարձ գրելաձևը: Դաստիարակչական մեծ նշանակություն կունենա, եթե համոզիչ օրինակներով ցույց տրվի, թե տեղի կուսկազմակերպություններն ինչպես են հետևում կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի կենսագործմանը: Ցավոք, կուսակցական կյանքին վերաբերող բազմաթիվ նյութերում հազվադեպ են արծարծվում նման հարցեր:

Շրջանի կուլտուրական օջախների, աշխատավորների գեղարվեստական ինքնագործ խմբերի աշխատանքը նույնպես լուսաբանված է թերթի էջերում. ակումբ-գրադարանների, ինքնագործ խմբերի գործունեության մասին զետեղված են հակիրճ հաղորդումներ, հոդվածներ. ֆոտոինֆորմացիաներում խոսվում է գյուղերի ու ավանների վերակառուցման, բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մասին: Միաժամանակ քննադատական խոսք է ասվում կուսակցական, հասարակական այն կազմակերպությունների հասցեին, որոնք ինչպես հարկն է չեն զբաղվում բնակչության կուլտուրական հանգիստը կազմակերպելու գործով: Այսպես, Ես էլ եմ այս գյուղում ապրում հոդվածի հեղինակը պատմում է, որ չնայած Վահագնի սովխոզը շրջանում հայտնի է իր արտադրական ցուցանիշներով, սկզբնական կուսկազմակերպությունը և նրա քարտուղարը չեն հետաքրքրվում ակումբով, գրադարանով, որը զուրկ է տարրական հարմարություններից և այդ պատճառով մատնվել է անգործության: Թերթի ահազանգը տվեց իր դրական արդյունքը. թերթի հաջորդ համարներից մեկում (№ 85) ցույց է տրված, որ տեղի կուսկազմակերպությունը, ընդունելով իր հասցեին արված քննադատական դիտողությունները, միջոցների է դիմել ակումբն ու գրադարանը համապատասխան հարմարություններով (խաղասենյակով, ընթերցասրահով, գրադարակներով) ապահովելու և բնակչության կուլտուրական սպասարկումը օրինակելիորեն կազմակերպելու համար:

Ուրախալի է, որ թերթի խմբագրությունը ուշադիր է շրջանի ստեղծագործող երիտասարդության նկատմամբ, հետևում է շնորհալի սկսնակների գրական քայլերին, խրախուսում, տպագրելով նրանց հաջողված գործերը: Իրենց անմիջականությամբ ու ջերմությամբ աչքի են ընկնում Ս. Անտոնյանի Մանուկներն արբած..., Ա. Ղումաշյանի Մոր քոշակից, Է. Ղումաշյանի Իմ սիրելի «Ս.», Ժ. Նավոյանի Իմ Գուգարքին, Ա. Ստեփանյանի Մոռս և այլ բանաստեղծություններ: Իհարկե, գրական էջերում զետեղված ոչ բոլոր ոտանավորներն ու պատմվածքներն են բավարարում ժամանակակից ընթերցողի պահանջները. կարելի է և պետք է ավելի խիստ ընտրություն կատարել, սակայն կարևորն այն է, որ խոստումնալից երիտասարդներին քաջալերելը կնպաստի նրանց գրական հասունացմանը, գեղարվեստական ճաշակի զարգացմանը:

Նշված գրականի կողքին հարկ ենք համարում ընդգծել մի թերություն: Այսպես, տրվում է վերափոխվող որևէ գյուղի կամ ավանի արտաքին նկարագիրը՝ նորակառույց, հարմարավետ բնակարաններ, նոր կահավորում, ուղղաձիգ փողոցներ, ջրի նոր ծորակներ, ակումբի, դպրոցի նոր շենքեր և... եզրակացնում. «գյուղը դառնում է անճանաչելի», «փոխվում է նոր մարդու կենցաղը»: Անշուշտ, ոչ ոք չի կարող ժխտել, որ նման փոփոխությունները կուլտուրայի ու կենցաղի առաջադիմության ցուցանիշներ են. բայց մի՞թե դրանք են միայն բնորոշում բնակչության կուլտուրական մակարդակը: Անշուշտ, ոչ: Էական է նաև այն հարցը, թե որչափով են այդ վերափոխումները ներգործում մարդու հոգեկանի վրա, հարստացնում նրա հուզաշխարհը: Հետևաբար, պետք է ուշադրություն նվիրել նաև աշխատավորների ներաշխարհի փոփոխությունների բացահայտմանը, հանգամանորեն լուսաբանել ընտանիքի, կոլեկտիվի, հասարակության և անհատի փոխհարաբերությունները, համարձակ վեր հանել աշխատանքում ու կենցաղում նկատվող թերությունները:

«Գուգարքի» ընթացիկ տարվա կոմպլեկտի ուսումնասիրությունը վկայում է, որ ակնհայտ են նրա ստեղծագործական որոնումները նյութի մատուցման, թերթի ձևավորման և կենսական հարցերի լուսաբանման ուղղությամբ: Դա հուսալի երաշխիք է, որ թերթը այսուհետև էլ ավելի բովանդակալից ու հետաքրքրական կլինի, ավելի լավ կլուսաբանի շրջանի բազմաբովանդակ կյանքը և դրանով իսկ ավելի շատ ընթերցողներ կունենա:

Ա. ՑԱՎՐՅԱՆ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1966 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ԴՊՐՈՑ



## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

Ծ Ա Ն Ո Ւ Ց Ո Ւ Մ

Խնդրում ենք մեզ թղթակցող հեղինակներին այսուհետև հոդվածները խմբագրության հանձնել մեքենագրված երկու օրինակ և 18 էջից ոչ ավելի ծավալով: Չտպագրվող հոդվածները հեղինակներին չեն վերադարձվում:

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ




Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 06063 Պատվեր 2808 Տիրաժ 9710 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 26/XI 1966 թ.:

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:


# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԿՈՒԼԻՆՈՎ Ե. Ս.—Վ. Ի. Լենինի «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ» գրքի մասին: Մ., Քաղհրատ, 1966, 80 էջ:

ՍՄԿԿ պատմությունն ուսումնասիրողների համար գրված այս գրքում հեղինակը լուսաբանում է Վլադիմիր Իլյիչի սույն ստեղծագործության մեջ շարադրված հիմնական հարցերը:

ԼԵՈՆՏԵՎ Լ. Ա.—Համառոտ քաղաքատնտեսություն.—Մ., Քաղհրատ, 1966, 416 էջ:

Մարքսիզմ-լենինիզմի դպրոցների համար գրված այս դասագրքում լուսաբանված են կապիտալիզմի և սոցիալիզմի հիմնական տնտեսական օրինաչափությունները և քաղաքատնտեսության կատեգորիաները:

Քաղաքական, տնտեսական և հասարակական միջազգային կազմակերպությունները: Մ., Քաղհրատ, 1966, 272 էջ:

Այս տեղեկատու-բառարանը լուսաբանում է արդի աշխարհում ակնառու դեր խաղացող ավելի քան 100 միջազգային կազմակերպությունների ստեղծման, նպատակի և խնդիրների պատմությունը, կառուցվածքը: Հանգամանորեն բնութագրված են Միավորված ազգերի կազմակերպությունը, տեղեկություններ կան սոցիալիստական երկրների կազմակերպությունների (Տնտեսական փոխօգնության խորհուրդը, Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը, Տնտեսական համագործակցության միջազգային բանկեր և այլն), ռազմական ագրեսիվ բլոկների մասին: Տեղեկատու բառարանում զետեղված են նաև հասարակական խոշոր մասսայական, առավել նշանակալից, հանուն խաղաղության ու դեմոկրատիայի հանդես եկող պրոֆմիութենական, կանանց, երիտասարդական, ուսանողական կազմակերպությունները:

ԿԼՈՉԿՈ Վ. Ֆ.—Մարքսիստական-լենինյան ուսմունքը կուսակցության մասին և նրա զարգացումը ՍՄԿԿ ծրագրերում: Մ., «Мысль» հրատ., 1966, 76 էջ:

Մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանների համար գրված այս գրքում հեղինակը շարադրել է Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքը պրոլետարական կուսակցության ստեղծման, կառուցվածքի մասին, ինչպես նաև ցույց է տվել, թե տարբեր ժամանակներում ինչպես են արտացոլվել այդ հարցերը կուսակցության ծրագրերում:

ՆԱՈՒՄՈՎԱ Ն. Ն.—Նիկոլայ Գավրիլովիչ Չերնիշևսկի: Մ., 1966, 155 էջ:

Դպրոցականների համար գրված այս ձեռնարկում հեղինակը համառոտակի շարադրել է Չերնիշևսկու կենսագրությունը, պատմել նրա հեղափոխական դեմոկրատական պայքարի և գրական-քննադատական աշխատանքների մասին:

Ռեֆորմիզմի դեմ, հանուն բանվորական շարժման միասնության: Մ., «Мысль», Մլ, հրատ. 1966, 503 էջ:

Այս ժողովածուի հեղինակային կոլեկտիվն ուսումնասիրել է կապիտալիստական երկրների բանվորական շարժման միասնության, խաղաղության և պատերազմի նկատմամբ սոցիալիստական ինտերնացիոնալի ղեկավարների վերաբերմունքը, ասիական երկրների, Ֆրանսիայի, Արևմտյան Գերմանիայի, Իտալիայի, Կանադայի, Ինդոնեզիայի և այլ երկրների սոցիալիստական ու սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների քաղաքականությունը, ԱՄՆ-ի բանվորական շարժման մեջ եղած ռեֆորմիզմը և այլ հարցեր:

ԳԻՆԸ 25 կ. 77783

# ԲԱՑՎԱԾ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## 1967 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է ՍՄԿԿ և ՀԿԿ պատմության, հեղափոխական շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ հոդվածներ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է հանրապետությունում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում է նյութեր կուսակցական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում է կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում է ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական հանրապետությունների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, միջազգային կոմունիստական շարժման մասին։*

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ**

Մեկ տարին — 3 ռ.

Վեց ամիսը — 1 ռ. 50 կ.

Երեք ամիսը — 75 կ.

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

*Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*